ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 4
ԱՊՐԻԼ
1959 Թ.

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ XXXVI ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ—ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ—ТЕОРЕТИЧЕСКИЙ И ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ





# ԱՊԱՀՈՎԵԼ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՊԼԱՆՆԵՐԻ ԿԱՏԱՐՈՒՄԸ

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանով նախագծված է երկրի էկոնոմիկայի, գիտության, կուլտուրայի և ժողովրդի բարեկեցության խոշոր աճ։ Այդ նպատակով նախատեսվում է ժողովրդական տնտեսության մեջ ներդնել մոտ 3 տրիլիոն ռուբլի, որից 2 տրիլիոնը պետական ներդրումներ են։ Այսպիսով, յոթ տարում ժողովրդական տնտեսության մեջ կներդրվեն մոտավորապես նույնքան միջոցներ, որքան ներդրվել է Սովետական իշխանության բոլոր տարիներին։

Ղեկավարվելով լենինյան ազգային քաղաքականությամբ, Կոմունիստական պարտիան նախատեսել է միութենական ռեսպուբլիկաների ժողովրդական տնտեսության աճի առավել արագ տեմպեր։ Արդյունաբերական արտադրանքի միջին տարեկան աճը մեր ռեսպուբլիկայում յոթնամյակում կկազմի 12 տոկոս, այն դեպքում, երբ ՍՍՌՄ-ում, ամբողջովին վերցրած, նախատեսված է տարեկան միջին աճը 8, 6 տոկոսի չափով։

Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանում նախատեսված է 12,5 միլիարդ ռուբլու կապիտալ ներդրումներ, այսինքն՝ 2 անգամ ավելի, քան ներդրվել է անցած յոթ տարիների ընթացքում և կգալիորեն ավելի, քան Սովետական իշխանության գոյության բոլոր տարիներին։ Առավելապես մեծ կապիտալ ներդրումներ են նախատեսված ծանր արդյունաբերության և նրա առաջատար ճյուղերում։

1952—1958 թվականների հետ համեմատած, ռեսպուբլիկայում կապիտալ ներդրումները կավելանան՝ գունավոր մետալուրգիայի և էլեկտրատեխնիկական արդյունաբերության մեջ՝ 6 անգամ, հաստոցաշինական արդյունաբերության մեջ՝ 6,5 անգամ և գործիքաշինության մեջ՝ 5,8 անգամ։ Կկառուցվեն և շահագործման կհանձնվեն տասնյակ խոշոր ձեռնարկություններ, այդ թվում՝ քիմիական և կապրոնային կորդի կոմբինատները Ախտայի շրջանում, ացետատային մետաքսի գործարանը Կիրովականում, պղնձամոլիբդենային կոմբինատը Մեղրու շրջանում, բնական գազով գործող ջերմային էլեկտրակայաններ, հաստոցաշինության, էլեկտրատեխնիկայի, գործիքաշինության և արդյունաբերության այլ ճյուղերի մի շարք գործարաններ ու ֆաբրիկաներ։

Միայն պետական միջոցներից յոթնամյակում բնակարանային շինարարության մեջ կներդրվի 3 միլիարդ ռուբլի. ռեսպուբլիկայի աշխատավորները կստանան ավելի քան 2 միլիոն 300 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, կամ 4 անգամ ավելի, քան անցած յոթ տարիներին։ Բացի այդ բնակչությունը անհատական կարգով կկառուցի 135 հազար բնակարան քաղաքներում և 85 հազար բնակարան՝ գյուղական վայրերում։

Զգալիորեն կավելանան կապիտալ ներդրումները նաև գյուղատնտեսության, առողջապահության, լուսավորության, կոմունալ տնտեսության և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերում։

Սովետական Միության բոլոր ժողովուրդների հետ միասին, Հայաստանի աշխատավորները մեծ ոգևորությամբ արդեն պայքարում են յոթնամյա պլանը կենսագործելու համար, ձգտելով կոմունիստական հասարակարգի կառուցման այդ հոյակապ ծրագիրն իրագործել ժամկետից շուտ։

Յոթնամյա պլանի հաջող կատարումն ու գերակատարումը կախված է նաև նրանից, թե ինչպես կընթանա նորակառույց գործարանների, հանքահորերի, ֆաբրիկաների, երկաթուղիների, բնակելի տների և այլ օբյեկտների շինարարությունը։ Չէ՞ որ որքան արագ շարք մտնեն արտադրական և կենցաղային օբյեկտները, այնքան ծավալուն կլինի արտադրանքի թողարկումը, այնքան շատ դպրոցներ, մանկապարտեզներ, բնակելի տներ կունենանք։ Այդ նկատառումով էլ ՀԿՊ Կենտրոնական Կոմիտեն հենց յոթնամյակի սկզբին (մարտի 18—19-ին) իր պլենումում քննության առավ «Ռեսպուբլիկայի շինարարական կազմակերպությունների վիճակը, նրանց աշխատանքների բարելավման և կառուցումների ինդուստրացման հետագա զարգացման հարցը»։

ՀԿՊ Կենտկոմի պլենումն ընդգծեց, որ ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի՝ շինարարության մասին որոշման կենսագործման շնորհիվ ռեսպուբլիկայում որոշակիորեն բարձրացել է մեխանիզացիայի մակարդակը նորակառույցներում, ավելացել է երկաթ-բետոնե շինվածքների և տեղական շինանյութերի արտադրությունը։

Վերջին տարիներին իրականացվել են մի շարք միջոցառումներ ռեսպուբլիկայի շինարարական կազմակերպությունների աշխատանքները բարելավելու ուղղությամբ։ Փոքր, ցրված շինարարական կազմակերպություններն այժմ միավորված են խոշոր տերիտորիալ կառուցող-մոնտաժային տրեստներում, զգալի աշխատանք է տարված շինարարական և նախագծող կազմակերպությունները մասնագիտացնելու բնագավառում։ 1959 թվականից բնակարանային և կուլտուրական օբյեկտների շինարարության պլանավորման նոր կարգ է մտցված։

Այս միջոցառումների կենսագործման, նորակառույցներում պարտիական աշխատանքը բարելավելու հետևանքով 1958 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, ռեսպուբլիկայում կապիտալ շինարարությունը աճել է 1,7 անգամ, որի շնորհիվ շարք են մտել արտադրական բազմաթիվ ձեռնարկություններ։ Այդ նույն ժամանակամիջոցում ռեսպուբլիկայում բնակարանային տարածությունը ընդարձակվել է 2,3 անգամ, հազարավոր ընտանիքներ ստացել են նոր ու հարմարավետ բնակարաններ։

ՀԿՊ Կենտրոնական Կոմիտեի պլենումը միաժամանակ նշեց, որ ռեսպուբլիկայի շինարարական կազմակերպությունների և, գլխավորապես, Շինարարության մինիստրության մեղքով 1958 թվականին ընդհանուր կապիտալ ներդրումների պլանը կատարվեց 98 տոկոսով, ընդ որում, արդյունաբերական շինարարության պլանը՝ 95,7 տոկոսով։ Չի կատարվել նաև շինմոնտաժային աշխատանքների պլանը և մի շարք ճյուղերի գծով թույլ է տրվել խոշոր թերակատարում։ Այսպես, շինմոնտաժային աշխատանքների պլանը կատարվել է՝ քիմիական արդյունաբերության գծով 91,3 տոկոսով, շինանյութերի արդյունաբերության գծով՝ 83,1 տոկոսով։ Շինարարության մինիստրությունը և Հայքիմարդշին տրեստը չապահովեցին Կիրովի անվան, Պոլիվինիլացետատ և Ավտոդողերի գործարաններին հատկացված կապիտալ ներդրումների լրիվ իրացումը և նրանց մի շարք օբյեկտների շահագործման հանձնումը։ Կիրովա-



կանի շինարարական յոթերորդ տրեստը քիմիական կոմբինատի շինմոնտաժային աշխատանքների տարեկան պլանը կատարեց 93,8 տոկոսով, իսկ № 535 գործարանի կառուցման պլանը՝ միայն 79,3 տոկոսով։

Շինարարական երկրորդ տրեստի ղեկավարները երկար ժամանակ զարմանալի անտարբերություն ցուցաբերեցին Երևան քաղաքի երկաթ-բետոնե կառուցվածքների գործարանի կառուցման հանդեպ, մի գործարան, որը կոչված է հենց իրենց՝ շինարարներին ապահովելու շինանյութերով։ Առաջին տարին չէ, որ տրեստը խափանում է այդ գործարանի շինարարությունը. 1958 թվականին գործարանի շինմոնտաժային աշխատանքների պլանը տրեստը կատարեց միայն 37,9 տոկոսով։

Անցյալ տարի շահագործման չհանձնվեցին նաև մի շարք ձեռնարկություններ, այդ թվում՝ Ջաջուռի կրի գործարանը, Լենինականի մսի կոմբինատի սառցարանը, Ձորագես—Ալավերդի էլեկտրահաղորդման գիծը և այլ օբյեկտներ։

Շինարարները վերջին տարիների ընթացքում լրիվ չեն ապահովում բնակելի տարածությունները շահագործման հանձնելու պլանը։ Առանձնապես անբավարար են կատարվել լուսավորության և առողջապահության օբյեկտների կառուցումները։

Անբավարար կոմպլեքսային մեքենայացման և ցածր արտադրական կարգապահության հետևանքով չի ապահովվում շինարարության բարձր որակ։ Շինարարության, գլխավորապես բնակարանային շինարարության մեջ ավարտական աշխատանքների ցածր որակի հետ միասին թույլ են տրվում տեխնիկական պայմանների, քարային, ծածկային և այլ աշխատանքների տեխնոլոգիայի կոպիտ խախտումներ։ Այդ կարգի խախտումների հետևանքով միայն էլեկտրալամպերի գործարանի, մանկավարժական ինստիտուտի, Հայգյուղէներգոյի և մի քանի այլ հիմնարկ-ձեռնարկությունների բնակելի շենքերի պատերի ամրացման համար լրացուցիչ ծախսվել է ավելի քան 100 հազար ռուբլի։

Դեռևս բավարար պայքար չի տարվում շինարարության էժանացման համար։ 1958 թվականին Շինարարության մինիստրության, Ջրային տնտեսության մինիստրության, Ճանապարհային գլխավոր վարչության մի շարք շինարարական կազմակերպություններ չապահովեցին շինարարության ինքնարժեքի իջեցման պլանային ցուցանիշները։ Ավելին, նրանցից մի քանիսը թույլ տվեցին ինքնարժեքի զգալի բարձրացում։ Շինարարության մինիստրության երկրորդ տրեստի ղեկավարությունը, փոխանակ շինարարների մշտական կադրեր հավաքագրելու և նրանց համար համապատասխան պայմաններ ստեղծելու, գյուղական շրջաններից օգտագործել է ժամանակավոր բանվորական ուժ և միայն նրանց տեղափոխումների համար ծախսել է 3 միլիոն ռուբլի։

Շինարարական կազմակերպությունների տեխնիկական ղեկավարները անհրաժեշտ միջոցներ չեն ձեռնարկում նոր տեխնիկայի, ինչպես նաև ռացիոնալիզատորների և գյուտարարների օգտակար առաջարկությունները կառույցներում լայնորեն ներդնելու ուղղությամբ։ Այսպես, օրինակ, ինժեներներ Ա. Բաբաջանյանը և Գ. Գարդիշյանը իրենց նախագծով պատրաստել են քար մշակող մեքենաների նմուշներ, որոնց արտադրողականությունը, գոյություն ունեցող «ET—1» մեքենայի հետ համեմատած, 8 — 10 անգամ ավելի

է։ Այդ արժեքավոր առաջարկությունը Շինարարության մինիստրության ղեկավարների մոտ անհրաժեշտ օժանդակություն չգտավ և մինչև այսօր էլ չի կիրառվում։ Գյուտարարներին անհրաժեշտ օգնություն ցույց չտվեց նաև մինիստրության Շինանյութերի և կառուցվածքների գիտահետազոտական ինստիտուտը։

Շինարարությունում տեղ գտած թերությունների, զգալի պարապուրդների, ինչպես նաև ոչ բավարար մեքենայացման հետևանքով մի շարք կազմակերպություններում դեռևս չի ապահովվում աշխատանքի բարձր արտադրողականություն։

Ռեսպուբլիկայում շինարարական քարերի հարուստ հանքավայրերի առկայության պայմաններում, կառույցներում երբեմն զգացվում է քարի պակաս։ Այդ հետևանք է նրա, որ դանդաղ է աճում քար արդյունահանող ձեռնարկությունների հզորությունը, դեռևս ցածր է քարհանքերի մեքենայացման մակարդակը։ Արթիկ-տուֆում անբավարար են օգտագործվում եղած մեխանիզմները։ Այստեղ 13 քարհանքերից մեքենայացված է միայն մեկը։ Հանքերի վարչությունը երկար ժամանակ է, ինչ չի լուծում այդ ձեռնարկության նորարարներ Վ. Հակոբյանի և Հ. Խաչատրյանի՝ աշխատատար պրոցեսների մեքենայացման նպատակով արած առաջարկների կիրառման հարցը։

ՀԿՊ Կենտրոնական Կոմիտեի պլենումը պարտավորեցրեց Ժողտնտխորհին, Շինարարության, Ջրային տնտեսության, Տեղական տնտեսության մինիստրություններին, Հայհիդրոէլեկտրոշին և կառուցող մյուս կազմակերպություններին՝ ապահովել 1959 թվականի կապիտալ շինարարության պլանի անթերի կատարումը, նյութական և մարդկային ամբողջ միջոցները կենտրոնացնել գործարկվող կարևոր օբյեկտների կառույցներում, այն հաշվով, որպեսզի այս տարի նախատեսված ժամկետներում շահագործման հանձնվեն արտադրական հզորությունները, բնակելի տարածությունները, կուլտուր-կենցաղային օբյեկտները։

Այս առաջադրանքի կատարումը ռեսպուբլիկայի պարտիական և սովետական կազմակերպություններից պահանջում է վճռականորեն բարելավել իրենց աշխատանքը շինարարության և շինանյութերի արտադրության բնագավառում, արագորեն ստեղծել ինդուստրիայի հզոր բազա, լայնորեն կիրառել նոր տեխնիկան, շինարարությունը վարել պրոգրեսիվ ու խնայողական մեթոդներով և նորակառույցներում օգտագործել շինանյութերի նոր տեսակներ։

Պլենումը կառուցող և շինանյութեր արտադրող կազմակերպությունների առջև հրամայական խնդիր դրեց՝ 1961 թվականին հավաքովի երկաթ-բետոնե կոնստրուկցիաների և շինվածքների արտադրությունը հասցնել 250 հազար խորանարդ մետրի, իսկ 1965 թվականին՝ 400 հազար խորանարդ մետրի, այս տարի Երևանում կառուցել և շահագործման հանձնել միջնապատերի պանելների արտադրության գործարանը՝ տարեկան 400 հազար քառակուսի մետր արտադրական կարողությամբ, իսկ 1961 թվականին՝ Արթիկում շահագործման հանձնել արհեստական տուֆաբետոնի գործարան, տարեկան 250 հազար խորանարդ մետր արտադրական կարողությամբ։

Շինարարությունը բոլոր տեսակի շինանյութերով ապահովելու համար անհրաժեշտ է խոշոր չափով ընդարձակել ցեմենտի, տեղական քարերի, ավազի, գաջի, ծածկանյութերի և սանիտարա-տեխնիկական սարքերի ար-



տադրությունը։ Հայկական ՍՍՌ Ժողտնտխորհը, Շինարարության, տեղական տնտեսության մինիստրությունները, տեղական շինանյութերի և շինարարական կառուցվածքների ու իրերի արտադրությունը պետք է ավելացնեն այն հաշվով, որպեսզի լիովին բավարարվեն պետական, կոլտնտեսային և անհատական շինարարության աճող պահանջները։

Յոթնամյակի նորակառույցների շինարարությունն արագացնելու և դրանք ժամանակին շահագործման հանձնելու գործում վճռական նշանակություն ունի միջոցների և ուժերի ճիշտ պլանավորումն ու բաշխումը։ Ելնելով դրանից, Կենտկոմի պլենումը պարտավորեցրեց Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետին առընթեր Պետպլանին, ռեսպուբլիկայի Ժողտնտխորհին, մինիստրություններին ու գերատեսչություններին՝ արմատապես բարելավել կապիտալ շինարարությունների պլանավորումը, վճռականորեն վերջ տալ միջոցների փոշիացմանը բազմաթիվ կառույցների վրա։ Կապիտալ շինարարությունների պլանները պետք է կազմել նորակառույցների նյութա-տեխնիկական մատակարարման պլաններին համապատասխան՝ իր ժամանակին առանձնացնելով շինարարական կազմակերպությունների համար նյութերի և սարքավորումների ֆոնդեր։

Անհրաժեշտ է առավելագույն չափով կոմպլեքսային մեքենայացման ենթարկել շինարարական պրոցեսները, վերացնել նրանց տեխնոլոգիայի ամեն մի խախտում։ Ռացիոնալիզատորների և նորարարների նախաձեռնությանը պետք է ցույց տրվի ամեն տեսակ աջակցություն, նրանց աշխատանքի փորձը պետք է դարձվի շինարարների ողջ կոլեկտիվի սեփականությունը։

Նախագծային կազմակերպությունների առջև այս յոթնամյակում կանգնած են լուրջ խնդիրներ։ Նրանք պետք է արմատապես վերակառուցեն իրենց աշխատանքները և գիտական հիմնարկների ու բարձրագույն ուսումնական հաստատությունների հետ միասին՝ ռեսպուբլիկայի շինարարության մեջ ներդնեն շինարարական ինդուստրիայի նորությունները, նախագծերը կազմեն ժամանակին, որակով, առանց ավելորդությունների։

Շինարարության մինիստրությունը, Հայհիդրոէներգոշինը և այլ շինարարական կազմակերպություններ պարտավոր են կառույցներում ստեղծել անհրաժեշտ կարգ ու կանոն, աշխատանքի հստակ կազմակերպում, շինարարական հրապարակներում վերացնեն անտնտեսվարությունը և բարձրացնեն ղեկավար անձնակազմի պատասխանատվությունը իրենց վստահված գործի նկատմամբ։

Շինարարների մշտական որակավոր կադրերի ստեղծումը պետք է լինի կառուցող կազմակերպությունների տնտեսական ղեկավարության, պարտիական և պրոֆմիութենական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում։ Մշտական բանվորական կադրերի ստեղծման հարցը անքակտելիորեն կապված է աշխատատար պրոցեսների առավելագույն մեքենայացման հետ։ Այդ հարցում մեր միջնակարգ դպրոցներն ավարտող երիտասարդությունն արդարացի պահանջներ է ներկայացնում շինարարական կազմակերպություններին։ Անհրաժեշտ է կազմակերպել այդ նոր կադրերի ուսուցումը, նրանց համար ստեղծել կուլտուր-կենցաղային համապատասխան պայմաններ։

Կառույցների պարտիական, պրոֆմիութենական և կոմերիտական կազմակերպությունները պետք է գործարար սոցիալիստական մրցություն ծավա-

լեն և ապահովեն պլանով նախատեսված բոլոր ցուցանիշների կատարումն ու գերակատարումը:

Պարտիայի քաղաքային և շրջանային կոմիտեների առաջնահերթ խնդիրներից է՝ բարձրացնել շինարարության ղեկավարման մակարդակը, զբաղվել կադրերի ընտրության ու տեղաբաշխման հարցով և կառույցների պարտիական կազմակերպություններին ամենօրյա օգնություն ցույց տալ՝ քաղաքական-դաստիարակչական աշխատանքի միջոցով բոլոր կառուցողների ուժերը մոբիլիզացնելու՝ ՀԿՊ Կենտկոմի պլենումի նշած միջոցառումները մինչև վերջ կենսագործելու համար:

Պարտիական, պրոֆմիութենական, կոմերիտական կազմակերպությունների, բոլոր կառուցողների, շինանյութերի արդյունաբերության մեջ աշխատողների և նախագծող կազմակերպությունների, բոլոր բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների գլխավոր խնդիրն է՝ շինարարության մեջ առավելագույն չափով ներդնել շինարարության ինդուստրիալ մեթոդները և մոբիլիզացնել իրենց ուժերը՝ գերակատարելու ՍՄԿՊ XXI համագումարում ընդունված յոթնամյակի առաջադրանքները, որի կարևոր նախապայմանն է յոթնամյակի առաջին տարվա՝ 1959 թվականի պետական պլանների հաջող կատարումը:

---

# ԱՐՀՄԻՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԵՆՍԱԿԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԸ

Մեր Հայրենիքի աշխատավորները մեծ հետաքրքրությամբ հետևում էին ՍՍՌՄ արհեստակցական միությունների XII համագումարին, որը լսեց և քննարկեց ՀԱՄԿԽ-ի հաշվետվությունը և ՍՍՌՄ արհեստակցական միությունների խնդիրները ՍՄԿՊ XXI համագումարի որոշումների կապակցությամբ:

ՀԱՄԿԽ-ի XII համագումարը գոհունակությամբ նշեց, որ պարտիայի XX և ՀԱՄԿԽ-ի XI համագումարներից հետո անցած ժամանակաշրջանում սովետական ժողովուրդը վիթխարի նվաճումներ է ձեռք բերել կոմունիզմի կառուցման բնագավառում: Այդ գործում իրենց անգնահատելի ավանդն են մուծել սովետական արհմիությունները, որոնք անդուլ կերպով պայքարում են մեր Հայրենիքի բարգավաճման համար, պարտիայի կողմից վերջին տարիներս ձեռնարկված վիթխարի խնդիրները հաջողությամբ կատարելու համար:

ՍՍՌՄ արհեստակցական միությունների XII համագումարը տեղի ունեցավ այն նշանակալից էպոխայում, երբ մեր երկիրը թևակոխել է իր զարգացման նոր ժամանակաշրջանը՝ կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը, երբ սովետական ժողովուրդը ստեղծագործական վիթխարի եռանդով ձեռնամուխ է եղել ՍՄԿՊ XXI համագումարի հաստատած՝ կոմունիզմի կառուցման մեծ ծրագրի իրագործմանը, յոթնամյա պլանի առաջին տարվա վիթխարի առաջադրանքների հաջող կենսագործմանը:

Այժմ, քան երբևէ, անչափ մեծանում է արհմիությունների դերն ու նշանակությունը որպես կառավարման ու տնտեսավարման դպրոցի, կոմունիզմի դպրոցի: Այսօր արհեստակցական միություններից պահանջվում է առավելագույն եռանդ ցուցաբերել տնտեսական ու կուլտուրական շինարարության, սոցիալիստական արտադրության, հանրային գործերի կառավարման մեջ միլիոնավոր աշխատավորների ակտիվ ներգրավումն ապահովելու համար:

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեն արհմիությունների XII համագումարին հղած իր ողջույնում բարձր գնահատեց արհմիությունների ծառայությունները մեր երկրի տնտեսական ու հասարակական կյանքում՝ սովետական մարդկանց նյութական բարեկեցության, կուլտուրական մակարդակի բարձրացման, աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում: Այդ ողջույնի մեջ ասված է. «Այժմ սովետական արհմիությունների ամենագլխավոր, ամենահրատապ խնդիրն է՝ աշխատավորների լայն զանգվածների ջանքերը մոբիլիզացնել պայքարելու պարտիայի XXI համագումարի պատմական որոշումները կենսագործելու համար, յոթնամյա պլանը և յոթնամյակի առաջին տարվա՝ 1959 թվականի առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու համար: Արհմիութենական կազմակերպությունները պետք է ավելի լայնորեն ծավալեն համաժողովրդական սոցիալիստական մրցությունը յուրաքանչյուր ձեռնարկության, կոլտնտեսության, սովետական տնտեսության, ՆՏ կայանի կողմից այն բնագծերը նվաճելու համար, որ նրանք պետք է վերցնեն այս յոթնամյակում:

Անհրաժեշտ է զարգացնել մեր օրերի հայրենասիրական հիանալի շարժումը՝
կոմունիստական աշխատանքի բրիգադաների և հարվածայինների մրցու-
թյունը»։

Մեր պարտիայի շտաբի ողջույնը արհմիությունների XII համագումարին,
դա 53 միլիոն բանվորների ու ծառայողների մարտական գործողության, հե-
տագա աշխատանքների ծրագիր է, որը խոշոր չափով կնպաստի սոցիալիս-
տական էկոնոմիկայի և կուլտուրայի հետագա հզոր վերելքի և աշխատավոր-
ների կենսամակարդակի բարձրացմանը։

Ներկա էտապում, երբ սովետական երկիրը թևակոխել է կոմունիստական
հասարակության ծավալուն կառուցման ժամանակաշրջանը, մեծ նշանակու-
թյուն են ստանում հասարակական աշխատանքի արտադրողականության
բարձրացման հարցերը։ Վ. Ի. Լենինը նշում էր, որ աշխատանքի արտադրո-
ղականությունն ամենից կարևորն ու ամենից գլխավորն է նոր հասարակարգի
հաղթանակի համար։ Յոթնամյակում աշխատանքի արտադրողականությունը
արդյունաբերության մեջ պետք է բարձրանա 45—50 տոկոսով, շինարարու-
թյան մեջ՝ 60—65 տոկոսով, երկաթուղային տրանսպորտում՝ 34—37 տոկոսով
և սովետական տնտեսություններում՝ 60—65 տոկոսով։ 1965 թվականին ար-
դյունաբերական արտադրանքի աճի երեք քառորդն ստացվելու է աշխատան-
քի արտադրողականության բարձրացման հաշվին։ Աշխատանքի բարձր ար-
տադրողականությամբ է պայմանավորված երկրի ժողովրդական տնտեսության
արագ զարգացումը, ազգային եկամտի աճը և աշխատավորների կենսամա-
կարդակի անընդհատ բարձրացումը։ Մեզ մոտ անսպառ են աշխատանքի
արտադրողականության բարձրացման ռեզերվները։

Մեր ռեսպուբլիկայի արհմիութենական կազմակերպությունների առաջնա-
հերթ խնդիրը պետք է լինի՝ հասնել աշխատանքի արտադրողականության
անընդհատ բարձրացման, արտադրանքի ինքնարժեքի իջեցման ու նրա որակի
բարձրացման, արտադրության ավտոմատացման ու մեքենայացման արմա-
տավորման, ապահովել արդյունաբերության անսպառ ռեզերվների օգտա-
գործումը։

Այս օրերին, երբ մեր ռեսպուբլիկայի աշխատավորությունն ամենուրեք
համաժողովրդական մրցություն է ծավալել յոթնամյա պլանի գերակատարման
համար, արհմիության յուրաքանչյուր կոլեկտիվի և նրա յուրաքանչյուր անդա-
մի ամենագլխավոր պարտքը պետք է լինի՝ մտնել յոթնամյակը ժամկետից
շուտ կատարելու համար ծավալված համաժողովրդական մրցության մեջ։ Սո-
ցիալիստական գործարար մրցության լավ օրինակ են ցույց տալիս Երևանի
Ձերժինսկու անվան հաստոցաշինական, կոմպրեսորների և Կանազի գործա-
րանների կոլեկտիվները, որտեղ մրցությանը մասնակցում է բանվորների, ին-
ժեներների և տեխնիկների ճնշող մեծամասնությունը։ Այս գործարանների
պարտիական ու պրոֆմիութենական կազմակերպությունները պայքարում են
հասնելու այն բանին, որ կոլեկտիվները և անհատ մրցողները պատվով կա-
տարեն ստանձնած սոցիալիստական պարտավորությունները։

Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության խորհրդի ձեռնարկություն-
ների, կառույցների, սովետական տնտեսությունների կոլեկտիվները որոշել
են՝ յոթնամյակի առաջին տարվա պլանները ժամկետից շուտ կատարել։ Այդ
նպատակով նրանք սոցիալիստական մրցության մեջ են մտել Վրացական,
Ադրբեջանական և Տաջիկական սովետական ռեսպուբլիկաների տնտեսական



վարչական շրջանների ձեռնարկությունների, կառույցների, սովետական տնտե-
սությունների ու կազմակերպությունների կոլեկտիվների հետ։ Մեր ռեսպուբ-
լիկայի բազմաթիվ արդյունաբերական ձեռնարկություններ խոսքից գործի
անցնելով՝ արդեն պայքարում են 1959 թվականին պլանից դուրս տալու 214
միլիոն ռուբլու արդյունաբերական արտադրանք։

Արտադրության կառավարման գործում աշխատավորների լայն խավերին
ընդգրկելու կարևորագույն ձևերից մեկը, կոմունիստական շինարարության
փորձված մեթոդը՝ սոցիալիստական մրցությունն է։ Մեր ժողովրդական տնտե-
սության բոլոր ճյուղերի հետագա հզոր զարգացման շահերը պահանջում են
արհմիութենական կազմակերպություններից՝ մրցության ղեկավարման գործը
միշտ պահել ուշադրության կենտրոնում և այն հասցնել նոր, ավելի բարձր աս-
տիճանի։ Սոցիալիստական մրցությունը պետք է կրի մասսայական ու գործա-
րար բնույթ, իր մեջ ընդգրկելով բոլոր բանվորներին ու ինժեներա-տեխնիկա-
կան աշխատողներին, նշանաբան ունենալով հասնել այն բանին, որպեսզի
վերցված պարտավորությունները կատարվեն ու գերակատարվեն բոլոր մրցող-
ների կողմից։ Մրցության հիմքում պետք է դրվեն լենինյան սկզբունքները՝
հրապարակայնությունը, արդյունքների համեմատելիությունը և ընկերական
փոխօգնությունը։ Անհրաժեշտ է առավել ուշադրություն դարձնել հայրենա-
սիրական նոր շարժման՝ կոմունիստական աշխատանքի բրիգադաների կոչման
արժանանալու համար ծավալված մրցության վրա, ձգտելով այդ շարժումը
լայնորեն տարածել բոլոր տեղամասերում։

Մեր երկրի տնտեսական և կուլտուրական շինարարության գործում, արհ-
միությունների դերի բարձրացման գործում խոշոր դեր կատարեց ՍՄԿՊ Կենտ-
կոմի 1957 թվականի Դեկտեմբերյան պլենումի որոշումը և այն միջոցառում-
ները, որ մեր պարտիան ձեռնարկեց վերջին տարիներին։

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը հարատև
կերպով հոգ են տանում մեր ժողովրդի բարօրության համար։ Նրանց ամբողջ
պրակտիկ գործունեության նպատակն է այնպես անել, որ տարեցտարի սո-
վետական մարդիկ ավելի ու ավելի լավ ապրեն, առավել լրիվ կերպով բավա-
րարվեն նրանց նյութական ու հոգևոր հարաճուն պահանջմունքները։ Յոթնամ-
յա պլանով նախատեսվում է աշխատավարձի, կենսաթոշակի ապահովության
հետագա աճ, սննդամթերքների, հագուստի, կոշկեղենի արտադրության նշա-
նակալի ավելացում, բնակարանների, դպրոցների, մանկական հիմնարկների
ծավալուն շինարարություն։

Արհմիութենական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է՝ ավե-
լի մեծ նախաձեռնություն ու հաստատակամություն հանդես բերել բանվորների
ու ծառայողների աշխատանքային ու կենցաղային պայմանների բարելավման
գործում խստիվ կերպով հետևել աշխատանքային օրենսդրության պահպան-
մանը, ուժեղացնել հասարակության վերահսկողությունը բնակարանային շի-
նարարության պլանների կատարման, բնակելի տարածության բաշխման,
առևտրի ու հասարակական սննդի ձեռնարկությունների աշխատանքի, բնակ-
չության բժշկական, կոմունալ ու կենցաղային սպասարկման նկատմամբ։
Նրանց սրբազան պարտքը պետք է լինի աշխատավորներին ամեն կերպ օգ-
նություն ցույց տալ՝ երեխաների դաստիարակման գործում։

Արհեստակցական միությունները, նրանց տեղական ֆաբրիկա-գործարա-
նային կոմիտեներն ու կազմակերպությունները պետք է ավելի մոտիկից զբաղ-

վեն բանվորների ու ծառայողների կոմունիստական գիտակցության, իրենց պարտականությունների նկատմամբ ազնիվ ու անձնվեր վերաբերմունքի, սոցիալիստական սեփականության խնայողության ու պահպանման ոգով դաստիարակելու գործով, կազմակերպեն աշխատավորների պայքարը թերությունների, քարացածության, հնամոլության, հասարակական կարգը խախտողների դեմ և ամբողջ գործունեությամբ նպաստեն մարդկանց գիտակցությունից անցյալի մնացորդները վերացնելուն։ Հատուկ ուշադրություն պետք է դարձնել երիտասարդ սերնդի դաստիարակության վրա և երիտասարդության մեջ հաստատակամորեն սեր պատվաստել աշխատանքի ու սեփական զբաղմունքի նկատմամբ։

Արհմիության օրգանների գործունեության մակարդակի բարձրացումը հրամայողաբար պահանջում է, արմատապես բարելավել կադրերի հետ տարվող աշխատանքը։ Պետք է համարձակ կերպով արհմիութենական ղեկավար աշխատանքներում առաջ քաշել նոր, թարմ ուժեր՝ բանվորներից, երիտասարդներից ու կանանցից, նրանց հետ կազմակերպել համապատասխան աշխատանք՝ բարձրացնելու նրանց մարքս-լենինյան պատրաստականությունը և գործնական որակավորումը։

Արհմիությունների, ֆաբրիկա-գործարանային կոմիտեների ղեկավարման գործում խոշոր դեր ունեն կատարելու պարտիայի քաղկոմ-շրջկոմները և սկզբնական պարտիական կազմակերպությունները։ Նրանք պարտավոր են հմտորեն ուղղություն տալ արհմիութենական օրգանների գործունեությանը, մշտապես և պրակտիկ կերպով օգնել նրանց՝ իրենց պարտականությունները կատարելու գործում, ամեն կերպ խրախուսել և զարգացնել նրանց ինքնագործունեությունն ու նախաձեռնությունը աշխատանքում, բարձրացնել պարտիայի բոլոր անդամների պատասխանատվությունն արհմիությունների աշխատանքի համար։

Սովետական արհմիութենական կազմակերպությունները իրենց աշխատանքներում ուղենիշ ունենալով ՍՄԿՊ XXI համագումարի պատմական որոշումները, վիթխարի աշխատանք են կատարում մասսաների, մեր բազմամիլիոն բանվորների ու ծառայողների մեջ, գլխավորում են նրանց ստեղծագործ աշխատանքը՝ կոմունիզմի համար մղվող պայքարում։ Նրանք է՛լ ավելի կբարձրացնեն իրենց դերը պետական, տնտեսական ու կուլտուրական շինարարության մեջ, ավելի մեծ եռանդով կօգնեն մեր պարտիային՝ մոբիլիզացնելու աշխատավորության բոլոր ուժերը՝ կոմունիստական շինարարության մեծ գործում նոր հաջողություններ ձեռք բերելու համար։

---

# Վ. Ի. ԼԵՆԻՆԸ ՍՄԿՊ-Ի ՏՆՏԵՍԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Հ. ՀԱԿՈԲՅԱՆ

Սովետական ժողովուրդը մեծ Լենինի ծննդյան 89-րդ տարեդարձը տոնում է կոմունիստական հասարակարգի ծավալուն շինարարության պայմաններում։

1917 թվականին, երբ Ռուսաստանի բանվորները Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ վերցրին իշխանությունը, նրանք քաջ գիտեին, որ ստանձնում են խիստ դժվարին, բայց միաժամանակ շատ պատվավոր միսիա։ Լինելով համաշխարհային բանվորական և կոմունիստական շարժման ավանգարդային ջոկատը, ռուս կոմունիստներն առաջինը պետք է գծեին այն ուղին, որով հետագայում անցնելու էին դեպի սոցիալիզմ ընթացող ժողովուրդները։ Այժմ ամբողջ աշխարհին հայտնի է, որ Սովետական Միության Կոմունիստական պարտիան և մեր երկրի հերոսական բանվոր դասակարգը հաջողությամբ կատարել և շարունակում են կատարել այդ միսիան։ Գնալով ոչ ոքի կողմից չուսումնասիրված, անծանոթ ուղիով, նրանք մեր երկիրը հասցրին համաշխարհային-պատմական հաղթանակների, այն դարձրին հզոր պատվար և հենարան՝ բոլոր սոցիալիստական երկրների և համաշխարհային կոմունիստական շարժման համար։

Սովետական Միության վճռական դերը կապիտալիզմի ուժերի նկատմամբ սոցիալիզմի ուժերի հաղթանակի գործում պայմանավորված է, ամենից առաջ, նրա տնտեսական հզորությամբ, Կոմունիստական պարտիայի տնտեսական քաղաքականության արդյունքներով։ Այժմ այդ քաղաքականությունն ուղղված է Կոմունիստական հասարակարգի նյութա-տեխնիկական բազայի համակողմանի ստեղծմանը, որի կոնկրետ հեռանկարները տրված են ՍՄԿՊ XXI համագումարում ընդունված ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանում։

Յոթնամյակի իրագործմամբ սոցիալիզմի և կապիտալիզմի տնտեսական խաղաղ մրցությունը թևակոխում է իր վճռական փուլը։ «Ներկայումս մեր խնդիրն է,— ասաց ընկ. Ն. Ս. Խրուշչովը XXI համագումարին տված իր զեկուցման մեջ,— հասնել համաշխարհային արտադրության մեջ կապիտալիստական սիստեմի հանդեպ սոցիալիստական սիստեմի գերակշռության, հանրային աշխատանքի արտադրողականությամբ, բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ գերազանցել առավել զարգացած կապիտալիստական երկրներին և ապահովել աշխարհում ամենաբարձր կենսամակարդակը»։

Իսկ ինչպիսի՞ ելակետային դիրքերից սկսեց մեր երկիրը մրցությունը կապիտալիստական աշխարհի հետ։ Մոտ 40 տարի առաջ, երբ Սովետական իշխանությունը հաղթանակ տանելով քաղաքացիական պատերազմում ներքին կոնտրռևոլյուցիայի և օտարերկրյա ռազմական ինտերվենցիայի դեմ, պատրաստվում էր անցնել խաղաղ շինարարության, մեր երկիրը թողարկում էր 1913 թվականի արտադրանքի միայն մեկ հինգերորդ մասը։ Իսկ 1913 թվականի Ռուսաստանը, Վ. Ի. Լենինի խոսքերով ասած, ներկայացնում էր «անհավատալիորեն, չտեսնված կերպով հետամնաց երկիր, աղքատ ու կիսավայրենի», որը ժամանակակից արտադրամիջոցներով սարքավորված էր չորս անգամ ավելի վատ, քան Անգլիան, հինգ անգամ ավելի վատ, քան Գերմանիան և տասն անգամ ավելի վատ, քան Ամերիկան։ 1913 թվականին բնակչության մեջ մեկ շնչի հաշվով Ռուսաստանը թողարկել է արտադրանք ավելի պակաս քան ԱՄՆ-ում՝ սև մետաղ՝ 11—12 անգամ, քարածուխ՝ 25 անգամ, նավթ՝ վեց անգամ, էլեկտրաէներգիա՝ 19 անգամ։

Ժառանգելով այդպիսի քայքայված ու հետամնաց տնտեսություն, Կոմունիստական պարտիան, առաջնորդվելով մարքսիստական-լենինյան տեսությամբ, պատմական կարճ ժամանակամիջոցում մեր երկիրը դարձրեց իր տնտեսական հզորությամբ երկրորդ տերությունը աշխարհում և առաջինը՝ Եվրոպայում։ 1958 թվականին արդյունաբերության համախառն արտադրանքի չափերով մեր երկիրը 1913 թվականի մակարդակը գերազանցեց 36 անգամ, մինչդեռ արդյունաբերական արտադրանքի ծավալը միայն 30 անգամ ավելացնելու համար ԱՄՆ-ին պահանջվել է 80 տարի, իսկ Անգլիային՝ գրեթե 150 տարի։ Այժմ արդյունաբերական արտադրանքի ծավալով ՍՍՌՄ-ը ԱՄՆ-ին զիջում է միայն երկու անգամ, իսկ գյուղատնտեսական արտադրանքի գծով՝ 20—25 տոկոսով։ Այդ տարբերությունները կհաղթահարվեն առաջիկա յոթ տարիների ընթացքում։

Սովետական Միության տնտեսական վիթխարի նվաճումները մեծ Լենինի գաղափարների նյութականացումն են, նրա հանճարեղ ցուցումների իրագործումը մեր պարտիայի կողմից։ Վ. Ի. Լենինը բազմիցս նշել է Կոմունիստական պարտիայի վճռական դերը տնտեսական շինարարության գործում, ասելով, որ նրա ճիշտ տնտեսական քաղաքականությունից է կախված սոցիալիզմի հաղթանակը ո՛չ միայն մեր երկրում, այլև ամբողջ աշխարհում։

Դեռևս 1915 թվականին «Եվրոպայի Միացյալ Նահանգների լոզունգի մասին» հոդվածում Վ. Ի. Լենինն ապացուցելով սոցիալիզմի հաղթանակի հնարավորությունը սկզբնական շրջանում մեկ առանձին վերցրած երկրում, գրում էր. «Այդ երկրի հաղթանակած պրոլետարիատը, ունեզրկած լինելով կապիտալիստներին և իր երկրում սոցիալիստական արտադրություն կազմակերպած լինելով, կկանգներ ընդդեմ մնացած կապիտալիստական աշխարհի, իր կողմը գրավելով մյուս երկրների ճնշված դասակարգերին...» (Երկեր, հ. 21, էջ 435)։

Այսպիսով, Վ. Ի. Լենինը, սոցիալիզմի կառուցումը մեկ երկրում չէր դիտում որպես ինքնապարփակ, ինքնաբավ մի պրոցես։ Ընդհակառակը, նա ընդգծում էր դրա վճռական նշանակությունը կապիտալիզմի դեմ միջազգային մասշտաբով հաղթանակ տանելու համար։ Նա Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հենց առաջին օրերին անդրադառնալով նրա միջազգային նշանակության հարցին, բազմիցս նշել է, որ Ռուսաստանում սկսված սոցիալիստական ռևոլյուցիան համաշխարհային սոցիալիստական ռևոլյուցիայի լոկ սկիզբն է։ «...մեզ վիճակվեց մեզ վրա վերցնելու իմպերիալիզմի դեմ մղվող համաշխարհային պայքարի նախամարտիկը լինելու ամբողջ ծանրությունը, որի մեջ մենք մեծ պատիվ ենք տեսնում» (Երկեր, հ. 30, էջ 174 — 175)։



Նոր հասարակարգի տնտեսական հիմքի ստեղծումը տեղի էր ունենում սուր դասակարգային պայքարի, տապալված ունևոր դասակարգերի կատաղի դիմադրության պայմաններում։ Բուրժուազիան քաղաքական իշխանությունը կորցնելուց հետո որոշել էր հենց տնտեսական բնագավառում ճակատամարտ տալ Սովետական իշխանությանը, որովհետև նա լավ էր գիտակցում, որ այստեղ է որոշվում նոր հասարակարգի բախտը։ Բուրժուազիայի նպատակն էր հուսալքել, կազմալուծել բանվոր դասակարգի շարքերը, ապացուցել, որ նա ընդունակ չէ կառավարել առանց բուրժուազիայի։

Անողոք պայքարի կոչելով բուրժուազիայի սաբոտաժի դեմ, Վ. Ի. Լենինը պարտիայի առաջ իր ամբողջ սրությամբ դնում էր երկրի տնտեսական կյանքը կազմակերպելու «ամենօրյա կազմակերպական հնկայական աշխատանքի» հարցը, որպես սոցիալիստական ռևոլյուցիայի ամենաէական հարցը։ «Պրոլետարիատի հիմնական ու ամենաէական շահը,— ասում էր Վլադիմիր Իլյիչը,— խոշոր արդյունաբերության և նրա մեջ տնտեսական ամուր բազայի վերստեղծումն է, այն ժամանակ նա իր դիկտատուրան կամրապնդի, այն ժամանակ նա իր դիկտատուրան հակառակ բոլոր քաղաքական ու ռազմական դժվարությունների, հաստատապես մինչև վերջը կհասցնի» (Երկեր, հ. 32, էջ 527)։

Իշխանությունը նվաճելուց հետո Լենինը պարտիայի գործունեության մեջ հիմնականը համարում էր տնտեսական կազմակերպչական գործունեությունը։ Հայտնի է, որ Ռուսաստանի էլեկտրիֆիկացման պլանը նա համարում էր նույնիսկ մեր պարտիայի երկրորդ ծրագիրը։ «Մենք, բոլշևիկների պարտիան, Ռուսաստանին համոզեցինք: Մենք Ռուսաստանը նվաճեցինք հարուստներից չքավորների համար, շահագործողներից՝ աշխատավորության համար,— գրել է Վ. Ի. Լենինը «Սովետական իշխանության հերթական խնդիրները» աշխատության մեջ։— Մենք այժմ պետք է Ռուսաստանը կառավարենք...

Պետք է մտածել, որ հաջող կառավարելու համար, բացի համոզել կարողանալուց, բացի քաղաքացիական պատերազմում հաղթել կարողանալուց, անհրաժեշտ է գործնականապես կազմակերպելու կարողություն։ Սա ամենադժվարին խնդիրն է, որովհետև գործը վերաբերում է տասնյակ և տասնյակմիլիոնավոր մարդկանց կյանքի ամենախոր, տնտեսական հիմքերը նոր ձևով կազմակերպելուն։ Եվ այդ ամենաշնորհակալ խնդիրն է, որովհետև միայն նրա լուծումից հետո (գլխավոր և հիմնական գծերով) կարելի կլինի ասել, որ Ռուսաստանը դարձել է ոչ միայն սովետական, այլև սոցիալիստական ռեսպուբլիկա» (Երկեր, հ. 27, էջ 287 — 288)։

Պարտիայի տնտեսական կազմակերպական գործունեությունը Վ. Ի. Լենինը միշտ դիտում էր նրա միջազգային նշանակության տեսանկյունից։ Բրեստ-Լիտովսկի հաշտության ծանր օրերին, երբ հարցականի տակ էր դրված Սովետական իշխանության գոյությունը, պայքարելով «ձախ կոմունիստների» ռևոլյուցիոն պատերազմի ավանտյուրիստական լոզունգի դեմ, Վ. Ի. Լենինը բազմիցս նշել է, որ պարտիայի խնդիրն է ամեն գնով պահ-

պանել Սովետական իշխանությունը և ավարտել սոցիալիստական տնտեսության կառուցումը։ Լենինի կարծիքով դա միայն ռեալ օգնությունը կլիներ միջազգային սոցիալիստական ռևոլյուցիային։ «Ռուսաստանի վերակազմությունը պրոլետարիատի դիկտատուրայի հիման վրա, բանկերի ու խոշոր արդյունաբերության ազգայնացման հիման վրա, նատուրալ մթերափոխանակության պայմաններում քաղաքի և մանր գյուղացիների գյուղական սպառողական ընկերությունների միջև, տնտեսապես միանգամայն հնարավոր է... այդպիսի վերակազմությունն անհաղթելի կդարձնի սոցիալիզմը և՛ Ռուսաստանում, և՛ ամբողջ աշխարհում...» (Երկեր, հ. 26, էջ 546)։

Քաղաքացիական պատերազմը և օտարերկրյա ռազմական ինտերվենցիան առժամանակ հետին պլան մղեցին տնտեսական շինարարության խնդիրները։ Միջազգային իմպերիալիզմը բացարձակ թշնամական վերաբերմունք էր ցուցաբերում Սովետական իշխանության ռևոլյուցիոն-տնտեսական միջոցառումների հանդեպ, որոնք խոր ռևոլյուցիոնացնող ազդեցություն էին գործում արտասահմանի աշխատավորության վրա և պայքարի ոգեշնչում նրանց։

Հաղթականորեն ավարտելով քաղաքացիական պատերազմը, մեր երկրի աշխատավոր ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ վերսկսեց խաղաղ շինարարական աշխատանքը։ Վ. Ի. Լենինը բնորոշելով տնտեսական շինարարության խնդիրները 1921 թվականին՝ պարտիայի X կոնֆերանսում արտասանած եզրափակիչ ճառում ասում էր, որ Ռուսաստանը միջազգային ռևոլյուցիայի վրա իր գլխավոր ներգործությունն անում է իր տնտեսական քաղաքականությամբ։ «Սովետական Ռուսաստանի ռեսպուբլիկային են նայում բոլորը, աշխարհի բոլոր երկրների բոլոր աշխատավորները, առանց որևէ բացառության և առանց չափազանցության,— ասում էր Վ. Ի. Լենինը։—Մենք հասել ենք դրան։ Կապիտալիստները չեն կարող ոչ մի բան լռության տալ, թաքցնել, այդ պատճառով նրանք ամենից ավելի որսում են մեր տնտեսական սխալներն ու մեր թուլությունը։ Այս ասպարեզն է փոխադրվել պայքարը համաշխարհային մասշտաբով։ Կլուծենք այդ խնդիրը և այն ժամանակ մենք կշահենք միջազգային մասշտաբով հաստատապես ու վերջնականապես։ Այդ պատճառով տնտեսական շինարարության հարցերը մեզ համար միանգամայն բացառիկ նշանակություն են ստանում։ Այս ճակատում մենք պետք է հաղթանակ տանենք... անշեղ վերելքով ու առաջխաղացումով» (Երկեր, հ. 32, էջ 562)։

Վ. Ի. Լենինը գտնում էր, որ երբ ճշմարտությունը Ռուսաստանում կառուցվող սոցիալիստական տնտեսության մասին ներթափանցի բոլոր երկրների բանվորական մասսաների մեջ, «այն ժամանակ կարելի կլինի ի լուր ամենքի, լիակատար վստահությամբ մեկ անգամ էլ ասել, որ մեր հաղթանակն ապահովված է համաշխարհային մասշտաբով...» (Երկեր, հ. 29, էջ 89)։

Լենինը միևնույն ժամանակ ընդգծում էր, որ Սովետական Միության տնտեսական քաղաքականության փորձը խոշոր նշանակություն կունենա բոլոր ժողովուրդների համար կապիտալիզմից սոցիալիզմին անցնելիս։ Ռուսական ռևոլյուցիան նա համարում էր համաշխարհային պրոլետարական ռևոլյուցիայի գլխավոր փորձը։

Սոցիալիզմի ուղիով Սովետական Միության առաջընթաց զարգացումն ավելի քան չորս տասնամյակի ընթացքում հանդիսացել է ամենաբուռն



դիսկուսիայի առարկա կապիտալիստական Արևմուտքում։ Կապիտալիստական աշխարհի զանազան քաղաքական խմբերը, հոսանքները, պարտիաներն ու դասակարգերը քայլ առ քայլ հետևել են Սովետական Միության տնտեսական նվաճումներին, իրենց տարբեր վերաբերմունքն են արտահայտել և շարունակում են արտահայտել մեր երկրի տնտեսական ու քաղաքական զարգացման արմատական հարցերի նկատմամբ, ինչպես նաև երկու սիստեմների մրցության և նրա հնարավոր ելքի նկատմամբ։ Վերաբերմունքը դեպի Սովետական Միությունը՝ ջրբաժան գիծ է առաջադիմության և ռեակցիայի ուժերի միջև, փորձաքար կապիտալիստական երկրների դասակարգերի և պարտիաների համար, որը պարզում է նրանց քաղաքական դեմքը։

Միջազգային ռեակցիան ամեն կերպ փորձել է խանգարել Սովետական Միության մասին ճշմարտության տարածմանը արտասահմանում, լռության մատնել սոցիալիստական շինարարության հաջողությունները կամ էլ խեղաթյուրել իրականությունը, ներկայացնելով այն ծուռ հայելու մեջ։ «...մեզ փորձում էին շրջապատել կարծես չինական պարսպով և որ բոլշևիկներին տասնյակներով ու դյուժիններով արտաքսում են աշխարհի ամենաազատ ռեսպուբլիկաներից, կարծես վախենալով, որ մեկ տասնյակ կամ մեկ դյուժին բոլշևիկներ ընդունակ են վարակել ամբողջ աշխարհը,— բայց մենք հո գիտենք, որ այդ վախը ծիծաղելի է, որովհետև նրանք արդեն վարակել են ամբողջ աշխարհը, որովհետև ռուս բանվորների պայքարն արդեն արել է այն, որ բոլոր երկրների բանվորական մասսաները գիտեն, որ այստեղ, Ռուսաստանում, լուծվում է ընդհանուր համաշխարհային ռևոլյուցիայի բախտը»,— ասում էր Վ. Ի. Լենինը (Երկեր, հ. 28, էջ 625 — 626)։

Չնայած իմպերիալիստական բուրժուազիայի կատաղի դիմադրությանը, ճշմարտությունը Սովետական իշխանության տնտեսական քաղաքականության մասին հաղթահարում էր ամեն տեսակ սանիտարական կորդոնները, ներթափանցում էր արտասահման և իր համար ճանապարհ հարթում դեպի աշխատավորների գիտակցությունը։ Իհարկե, այդ պրոցեսը տեղի չէր ունենում հավասարաչափ և կայծակնային արագությամբ, սակայն այն ընթանում էր հարաճուն հաջողությամբ՝ պրոլետարիատի դիկտատուրայի ամրապնդման և երկրի տնտեսական առաջընթացի հետ միասին։

Ռուսաստանում պրոլետարիատի դիկտատուրայի հաղթանակը և հին հասարակարգի դեմ ուղղված նրա առաջին ռևոլյուցիոն-տնտեսական միջոցառումները ցնցող ազդեցություն գործեցին ամբողջ աշխարհի վրա։ Հոկտեմբերյան ռևոլյուցիան մի տեսակ կատալիզատորի դեր կատարեց Եվրոպայի և Ասիայի մի շարք երկրներում հասունացած ռևոլյուցիոն ելույթների պոռթկման համար։

Ամենուրեք, ուր պրոլետարիատը թեկուզ կարճ ժամանակով իշխանությունն իր ձեռքն էր վերցնում, կամ դառնում դրության տերը, անմիջապես հարձակման էր անցնում հին հասարակարգի տնտեսական հիմքերի դեմ։ Բավարիայի պրոլետարիատը, որն իշխանությունն իր ձեռքում պահեց ընդամենը 18 օր, Ռուսաստանի բանվոր դասակարգի օրինակով ձեռնարկություններում մտցրեց բանվորական վերահսկողություն և ձեռնամուխ եղավ բանկերի ազգայնացմանը։ Իտալիայում 1920 թվականի օգոստոս-սեպտեմբեր ամիսներին ծավալվեց բանվորների լայն շարժում գործարանները և ֆաբրիկաները գրավելու համար, որն ընդգրկեց 600.000 [illegible] Հյուսիսային Իտա-

կիայում բոլոր խոշոր գործարաններն անցան բանվոր դասակարգի ձեռքը, որը 2—3 շաբաթ շարունակ ղեկավարում էր դրանց աշխատանքը։ Անդրադառնալով Հունգարիայի Սովետական ռևոլյուցիայի վրա Հոկտեմբերյան ռևոլյուցիայի ազդեցության հարցին, Վ. Ի. Լենինը 1919 թվականի ապրիլին գրում էր. «Այդ կուլտուրական երկրում ռուսական ռևոլյուցիայի ամբողջ փորձը հաշվի է առնվում, հաստատուն կերպով անց է կացվում սոցիալիզացիան և ավելի նախապատրաստված հողի շնորհիվ, ավելի պլանաչափ և ավելի հաջող է կառուցվում սոցիալիզմի շենքը» (Երկեր, հ. 29, էջ 391)։

Դժբախտաբար կապիտալիզմի դեմ ուղղված այդ առաջին գրոհները ամենուրեք վերջացան պարտությամբ։ Բայց չնայած դրան, Հոկտեմբերյան ռևոլյուցիայի ազդեցությունը կապիտալիստական երկրների աշխատավորական մասսաների վրա գնալով ուժեղանում էր, որովհետև մեր երկրում սոցիալիզմի հաջողություններն ամրապնդում էին հավատը հաղթանակի նկատմամբ։ Աշխատավորները տեսնում էին, թե ինչպես սոցիալիստական տնտեսության հաջողությունները հետզհետե փոխում են ՍՍՌՄ-ի բնակչության դասակարգային ստրուկտուրան, արմատախիլ անելով մարդու կողմից մարդու շահագործման բոլոր հիմքերը։

Արտասահմանյան բարեկամներն ուրախանում էին մեր հաղթանակներով, իսկ բուրժուական ռեակցիոն գաղափարախոսներն ու քաղաքական գործիչները՝ վատաբանում, հոռետեսորեն վարկաբեկում Սովետական իշխանությունը։ Վերջինների «դատավճիռները» Սովետական իշխանության ճակատագրի նկատմամբ հատկապես խիստ էին, երբ հարցը վերաբերում էր տնտեսական պրոբլեմներին։ Մեր պարտիայի տնտեսական ծրագրերը համարելով ֆանտազիա, ուտոպիա, անիրականանալի երազ, բուրժուական մտածողներից շատերը պնդում էին, որ առանց կապիտալիստական երկրների օգնության Ռուսաստանը չի կարող դուրս գալ անցյալից ժառանգած տնտեսական քայքայվածությունից։ Բայց կային նաև մարդիկ, որոնք արդեն Սովետական իշխանության տնտեսական շինարարության առաջին քայլերի մեջ տեսնում էին նորի, առաջադեմի մեծ ուժը։ Ամերիկյան տնտեսագետ Ա. Ա. Հելլերը «Արդյունաբերության վերակենդանացումը Ռուսաստանում» աշխատության մեջ գրում էր. «Խելացի, ազնիվ, ստեղծագործ ռուս ժողովուրդը մեկ կամ երկու սերունդ հետո կդառնա ամենաազատ ժողովուրդը աշխարհում։ Նա կհաղթահարի տնտեսական քայքայվածությունը, ինչպես հաղթահարեց քաղաքացիական պատերազմը և օտարերկրյա ագրեսիան... Նա կշարունակի ռևոլյուցիայի գործը և 10, 20 կամ 30 տարում կստեղծի մի ռեսպուբլիկա՝ ժողովրդական և ժողովրդի համար, բառի իսկական իմաստով» (A. A. Heller, The Industrial Revival in Soviet Russia, p. 240, 1922 թ.)։

ՍՍՌՄ-ում սոցիալիստական շինարարությունն ընթանում էր կապիտալիստական աշխարհի համար ապշեցուցիչ արագությամբ։ 1928 թվականին ՍՍՌՄ ազգային եկամուտը, 1913 թվականի համեմատությամբ, աճել էր 20 տոկոսով, իսկ երկրորդ հնգամյակի վերջում, 1937 թվականին, այն կազմում էր 459 տոկոս։

Առաջին, երկրորդ հնգամյակների և երրորդ հնգամյակի երեք տարիների ընթացքում իր բուռն աճի տեմպերով սոցիալիստական տնտեսությունն անհերքելիորեն ապացուցեց իր առավելությունները կապիտալիստական տնտեսության նկատմամբ։ Այն ժամանակ, երբ սոցիալիստական տնտեսությունն



աճում էր բուռն տեմպերով, կապիտալիստական տնտեսությունը հիվանդագին գալարումներ էր ապրում։ 1929—1933 թվականների ճգնաժամին հաջորդած լճացումից հետո կապիտալիստական երկրներին այդպես էլ չհաջողվեց վերելքի հասնել։ Ընդհակառակն, այդ լճացումը փոխարինվեց մի նոր ճգնաժամով, որը հավանաբար իր հետևանքներով շատ ավերիչ կլիներ, եթե չընդհատվեր երկրորդ համաշխարհային պատերազմով։ Ահա այդ տարիներին արտասահմանում ավելի ուժեղացավ հակասովետական կամպանիան։ Իմպերիալիստական բուրժուազիան աշխատում էր թուլացնել այն տպավորությունը, որը գործում էին ճգնաժամի հետևանքով ձախացող աշխատավորական մասսաների վրա մեր երկրի արագ ինդուստրացումը, գործազրկության լիակատար վերացումը։

Սովետական տնտեսության համար առանձնապես մեծ փորձություն հանդիսացավ Հայրենական Մեծ պատերազմը։ Հաղթանակը ֆաշիստական ռազմական մեքենայի նկատմամբ ակնառու կերպով ցույց տվեց սոցիալիստական տնտեսության կենսունակությունը և նրա անվիճելի առավելությունները կապիտալիստականի նկատմամբ։

Հետպատերազմյան շրջանում է՛լ ավելի մեծացավ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի տնտեսական քաղաքականության և մեր երկրի տնտեսական հաջողությունների միջազգային նշանակությունը։ Խոսքը վերաբերում է ո՛չ միայն արտասահմանի աշխատավորության վրա դրանց գործած ազդեցությանը, այլև նրան, որ դրանցից մեծ չափով կախված էր սոցիալիստական շինարարության հաջող ընթացքը ժողովրդական դեմոկրատիայի երկրներում։ Բանն այն է, որ այդ երկրները, չնչին բացառությամբ, անցյալում եղել էին հետամնաց, առավելապես ագրարային երկրներ։ Ի դեպ, այդ հետամնաց տնտեսությունն էլ պատերազմի հետևանքով հասել էր ծայր աստիճանի քայքայված վիճակի։ Սովետական էկոնոմիկան հետպատերազմյան շրջանում հանդես է գալիս որպես բազա, հիմք և հենարան Եվրոպայի և Ասիայի ժողովրդա-դեմոկրատական երկրներում սոցիալիստական վերափոխումների համար։ Կյանքն անվիճելիորեն ապացուցել է, որ Սովետական Միությունը հաջողությամբ լուծել է և շարունակում է լուծել այդ խոշոր միջազգային նշանակություն ունեցող պրոբլեմները։ Իսկ դա չի կարող չներգործել համաշխարհային հասարակական կարծիքի վրա։

Սովետական Միության տնտեսական օգնության շնորհիվ ժողովրդական դեմոկրատիայի երկրները հաջողությամբ առաջ են ընթանում սոցիալիզմի ուղիով։ Նախապատերազմյան մակարդակի համեմատությամբ, 1958 թվականին արդյունաբերական արտադրանքն աճել է Լեհաստանում՝ ավելի քան 5,5 անգամ, Չեխոսլովակիայում՝ 3,3 անգամ, ԳԴՌ-ում՝ ավելի քան 2,5 անգամ, Ռումինիայում՝ գրեթե 4 անգամ, Հունգարիայում՝ ավելի քան 4 անգամ, Բուլղարիայում՝ մոտ 9 անգամ, Ալբանիայում՝ 18 անգամ։ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան 1950—1958 թթ. արդյունաբերական արտադրանքն ավելացրել է տասն անգամ։ Միաժամանակ այդ երկրներում այժմ հաջողությամբ լուծվում է սոցիալիստական շինարարության ամենադժվարին խնդիրը՝ գյուղացիության կոոպերացումը։

Այժմ սոցիալիստական սիստեմն ընդգրկում է տնտեսական զարգացման տարբեր մակարդակների վրա գտնվող և սոցիալիստական վերափոխումների

տարբեր աստիճանների վրա կանգնած երկրներ: Սակայն հաջողությամբ օգտագործելով սոցիալիստական կարգերի առավելությունները և հենվելով հատկապես Սովետական Միության եղբայրական, անշահախնդիր օգնության վրա, արագ տեմպերով զարգացնելով իրենց տնտեսությունը, նրանք ՍՍՌՄ-ի հետ այս կամ այն չափով միաժամանակ կթևակոխեն կոմունիստական հասարակարգի բարձրագույն փուլը:

Համաշխարհային սոցիալիստական սիստեմի ղեկավար և առաջատար ուժը իր տնտեսական հզորությամբ և փորձով հանդիսանում է Սովետական Միությունը, որն իր հարաբերությունները և, մասնավորապես, տնտեսական հարաբերությունները մյուս սոցիալիստական երկրների հետ կառուցում է իրավահավասարության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների վրա: Չեխոսլովակիայի Կոմպարտիայի կողմից ողջունելով ՍՄԿՊ XXI համագումարը, ընկեր Ա. Նովոտնին նշեց, որ կապիտալիզմից սոցիալիզմին անցնելիս ժողովրդական դեմոկրատիայի երկրները սկզբից ևեթ հենվել են ՍՍՌՄ-ի օրինակի, պաշտպանության և նյութական աջակցության վրա: «Սովետական Միության օրինակը,— ասաց ընկեր Նովոտնին,— նրա հարուստ փորձը և անշահախնդիր օգնությունը, ՍՍՌՄ-ի աճող միջազգային հեղինակությունը հանդիսանում են և կմնան այսուհետև համաշխարհային սոցիալիստական սիստեմի զարգացման հզոր գործոնը»:

Իրականանում են Վ. Ի. Լենինի խոսքերն այն մասին, որ սոցիալիստական շինարարությունը մեր երկրում օրինակ է ծառայելու ապագայում Եվրոպայի և Ասիայի սոցիալիզմ կառուցող երկրների համար: Մեծ է ՍՄԿՊ-ի տնտեսական քաղաքականության նշանակությունը նաև իմպերիալիզմի գաղութակալության լուծը թոթափած երկրների տնտեսական և կուլտուրական զարգացման համար: Հնդկաստանում, Ինդոնեզիայում, Միացյալ Արաբական Ռեսպուբլիկայում, Բիրմայում, Իրաքում և այլ երկրներում տնտեսության ինդուստրացման հարցում օգտագործվում է սովետական փորձը: ՍՍՌՄ-ը այդ երկրներին ցույց է տալիս բարեկամական լուրջ օգնություն և աջակցություն՝ վարկով, փոխառություններով, մեքենաներով, սարքավորումներով, մասնագետներով, նախագծերով և մինչև իսկ կառուցում է իր ուժերով ամբողջ ձեռնարկություններ:

Սովետական Միության վիթխարի տնտեսական հաջողությունները և ՍՄԿՊ-ի իմաստուն տնտեսական քաղաքականությունը խոշոր չափով նպաստել են և նպաստում են սոցիալիզմի հեղինակության տարածմանը աշխարհում և կոմունիստական ու բանվորական պարտիաների աճին ու ամրապնդմանը: Այդ մասին Պալմիրո Տոլյատին ՍՄԿՊ XXI համագումարում արտասանած իր ճառում ասաց. «Այդ ձեր նոր սրընթաց շարժումը դեպի առաջ մեզ համար, մեր երկրում նույնպես բաց է անում հեռանկարներ սոցիալիզմի ազդեցությունը, նրա սկզբունքները, նրա պրակտիկ նվաճումները և նրա կազմակերպված ջոկատի փորձը լայնորեն տարածելու համար»:

Կոմունիստական շարժումն այժմ հասել է վիթխարի չափերի: Եթե 1920 թվականին ամբողջ աշխարհում գոյություն ունեին միայն 27 կոմպարտիաներ, իսկ 1939 թվականին՝ 43, որոնք միավորում էին 4,2 միլիոն մարդ, ապա այժմ աշխարհում գործում են 83 կոմունիստական և բանվորական պարտիաներ, որոնք իրենց շարքերում հաշվում են 33 միլիոն մարդ: Կոմունիստական



շարժման ուժի և հեղինակության բուռն աճը զգալի չափով բացատրվում է սոցիալիզմի հաջողություններով ՍՍՌՄ-ում:

Պատահական չէ, որ բուրժուական տնտեսագիտական միտքն սկսել է ավելի մեծ հետաքրքրություն ցուցաբերել Սովետական Միության տնտեսական զարգացման, տնտեսական հիմնարկների գործունեության, կառուցվածքի, պլանավորման սիստեմի և այլնի նկատմամբ: Սովետական էկոնոմիկայի և ՍՄԿՊ տնտեսական քաղաքականության հանգուցային հարցերի ուսումնասիրությամբ արտասահմանում սկսել են զբաղվել ամբողջ ինստիտուտներ, գրադարաններ, հատուկ հիմնարկություններ, որոնք մեծ մասամբ ստեղծվեցին պատերազմից հետո: Եվ այս բոլորն արվում է ո՛չ միայն զուտ թեորիական հետաքրքրության, կամ պրոպագանդիստական նպատակներով, այլև ստրատեգիական և մասամբ էլ պրակտիկ կիրառական նպատակներով: Ինչպես նշեց Ա. Ի. Միկոյանը ՍՄԿՊ XX համագումարում արտասանած իր ճառում, միայն ԱՄՆ-ում նման հիմնարկությունների թիվն անցնում է 15-ից:

Բուրժուական ռեակցիոն հիմնարկներն ու քաղաքական գործիչները ՍՍՌՄ-ի տնտեսական հաջողությունները դիմավորում են չարախնդորեն և անհանգստացած ՍՍՌՄ-ի տեխնիկա-տնտեսական բուռն առաջընթացի փաստով, նրանք զանազան շաղատանություններով և կեղծարարությամբ մի կողմից աշխատում են արհեստականորեն նվաղեցնել մեր տնտեսական հաջողությունները, իսկ մյուս կողմից դրանց բացահայտ կեղծ մեկնաբանությամբ փորձում են արդարացնել իմպերիալիստական շրջանների ագրեսիվ նպատակները: Երեսպաշտորեն շաղակրատելով սոցիալիզմի առավելությունների մասին, աջ սոցիալիստներն էլ պաշտպանում են «երրորդ ուղու», այսպես կոչված՝ «դեմոկրատական սոցիալիզմի» գաղափարը: Վերջինս, իր հեղինակների ռեկլամի համաձայն, իրենից իբր թե սոցիալիստական և կապիտալիստական սիստեմների առավելությունների սինթեզ է ներկայացնում: Այլ կերպ ասած, սովետական էկոնոմիկայի առավելությունների և, այսպես կոչված, «արևմտյան դեմոկրատիայի» յուրահատուկ զուգորդումը՝ առանց մասնավոր սեփականության լիակատար ոչնչացման: Այս հակամարքսիստական կոնցեպցիան ըստ էության սնում է «պլանավորված կապիտալիզմի», «կազմակերպված կապիտալիզմի», «դեմոկրատական կապիտալիզմի» և իմպերիալիստական բուրժուազիայի ռեակցիոն գաղափարախոսության այլ առասպելներ:

Այնուհանդերձ, չնայած այս երկու խմբերին պատկանող հեղինակների տեսակետների ողջ ռեակցիոնականությանը, նրանց նշանակալի մասը, որպես կանոն, հրաժարվել է այն մերկ նիհիլիզմից, անհիմն ժխտման պրակտիկայից, կույր թերահավատությունից, որոնք բնորոշ էին մինչպատերազմյան ՍՍՌՄ-ի էկոնոմիկայի մասին բուրժուական տնտեսագետների գրած աշխատություններին: Այժմ ՍՄԿՊ տնտեսական քաղաքականության բոլոր հարցերն անմիջապես դառնում են լուրջ քննարկման առարկա արտասահմանում՝ մամուլում և գրականության մեջ, պետական և քաղաքական շրջաններում:

ՍՄԿՊ XXI արտահերթ համագումարից անցել է ավելի քան երկու ամիս, բայց ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանը շարունակում է մնալ համաշխարհային հասարակայնության ուշադրության կենտրոնում:

Յոթնամյակի վիթխարի խնդիրների կենսագործման շնորհիվ աննախըն-

թաց չափով կմեծանա սոցիալիզմի ձգողական ուժը կապիտալիստական ստրկության դեմ պայքարող աշխատավորների համար, թույլ զարգացած երկրների ժողովուրդների համար։ Այս հարցերն ամենից ավելի են մտահոգում բուրժուական տնտեսագետներին ու գործիչներին։

Յոթնամյակի խնդիրներն այն աստիճան վիթխարի են և նրանց խաղաղասիրական բնույթն այն աստիճան ակնառու, որ մինչև իսկ բուրժուական մամուլի որոշ ներկայացուցիչներ ստիպված են ցուցաբերել զգալի օբյեկտիվություն դրանց գնահատման հարցում։ Ամերիկյան բուրժուական տնտեսագետ, սովետական էկոնոմիկայի վերաբերյալ աշխատությունների հեղինակ ոչ անհայտ Հարրի Շվարցը «Նյու-Յորք Թայմս» թերթում գրում է, որ ամերիկյան բոլոր մասնագետները, այդ թվում նաև «ամենասկեպտիկները» գտնում են, որ «եթե Արևմուտքում արտակարգ իրադարձություններ տեղի չունենան, ապա Սովետական Միության և մյուս կոմունիստական երկրների տնտեսական զարգացումը մոտակա տասնամյակում կընթանա ավելի արագ, որի հետևանքով Արևմուտքի ներկա գերազանցությունն արտադրության և կենսամակարդակի ասպարեզում զգալիորեն կփոքրանա»։ Հատկանշական է, որ այդ նույն մարդը ութ տարի առաջ իր «Ռուսաստանի Սովետական էկոնոմիկան» գրքում ճիշտ հակառակ միտքն էր արտահայտում։

Սովետական Միությունում կոմունիստական շինարարության թափը կապիտալիստական աշխարհի ղեկավարներին ստիպում է անդրադառնալ իրենց երկրների առաջ կանգնած լուրջ խնդիրներին։ Բանն այն է, որ նրանք ռեալ վախ են ապրում այն առթիվ, որ կապիտալիզմը կարող է տանուլ տալ սոցիալիզմի հետ խաղաղ մրցությունը։ Եվ այդ վախը խոր հիմքեր ունի։

Առաջիկա տարիներին ԱՄՆ-ին հասնելու և անցնելու խնդրի իրագործման առաջին երաշխիքն այն է, որ ինչպես մեր, այնպես էլ մյուս սոցիալիստական երկրների տնտեսության զարգացման տեմպերն անհամեմատ գերազանցում են կապիտալիստական տնտեսության զարգացման տեմպերին։ Վերջին հինգ տարում (1954—1958 թվականներին) սոցիալիստական լագերի արդյունաբերական տարեկան աճը կազմել է 14 տոկոս, այն ժամանակ, երբ ամբողջ կապիտալիստական աշխարհինը 3 տոկոսից էլ պակաս է։

Բացի այդ, վերջին ութ տարում, ընդհանուր առմամբ, ՍՍՌՄ-ում արտադրանքի մի շարք կարևորագույն տեսակների (պողպատի, չուգունի, երկաթաքարի, նավթի, ածխի, ցեմենտի, բրդի գործվածքների) աճման բացարձակ չափերը գերազանցում են ամերիկյան ցուցանիշները։

Ահա թե ինչու իմպերիալիստական ռազմամոլ շրջանները նպատակ ունենալով խանգարել սոցիալիզմի ուժերի հաղթական առաջընթացը, փորձում են խորացնել սառը պատերազմը, ծուռ հայելու մեջ ներկայացնելով մեր յոթնամյակի նպատակները։ Ամերիկյան միլիարդատերերի և կառավարական շրջանների հետ սերտորեն կապված «Ուոլլ Ստրիտ Ջոռնել» թերթը, ամերիկյան և անգլիական ռադիոն սկսեցին հերյուրանքներ տարածել, որ իբր թե յոթնամյակը վկայում է սառը պատերազմը շարունակելու Սովետական Միության մտադրության մասին։ Այսպիսով, միջազգային իմպերիալիզմը ՍՍՌՄ-ի տնտեսական հզորացման փաստն օգտագործում է սոցիալիստական երկրների դեմ իր բացահայտ ագրեսիվ պլանները քողարկելու համար։

Սովետական Միության հաշվին սեփական հակասությունները լուծելու փորձերը միշտ ունեցել են և կունենան տխուր վախճան կապիտալիստական



երկրների համար, առավել ևս ներկա պայմաններում, երբ ՍՍՌՄ-ը սոցիալիզմի կղզի չէ՝ շրջապատված կապիտալիստական օվկիանոսով։ Այժմ սոցիալիզմն ավելի հզոր է քան երբևիցէ. այն դարձել է համաշխարհային սիստեմ։ ՍՄԿՊ XXI համագումարը, հանրագումարի բերելով Սովետական Միության և մյուս երկրների նվաճումները, արձանագրեց, որ միջազգային ասպարեզում սոցիալիզմի և կապիտալիզմի միջև ուժերի փոխհարաբերությունը փոխվել է արմատապես և անվերադարձ կերպով և որ այժմ սոցիալիզմը հաղթանակել է ո՛չ միայն լիովին, այլև վերջնականապես:

Ռազմական ուժով կապիտալիզմը կրկին համաշխարհային համապարփակ սոցիալ-տնտեսական սիստեմ դարձնելու բոլոր փորձերը կարող են վերջանալ միայն կապիտալիզմի կործանմամբ։ Սոցիալիստական երկրները ձգտում են խաղաղ գոյակցության, գտնելով, որ երկու սիստեմների պայքարի ելքը կարող է և պետք է լուծվի տնտեսական մրցության ասպարեզում։ Կոմունիստները լիովին վստահ են, որ այդ մրցության մեջ սոցիալիզմը կհաղթի։ Վլադիսլավ Գոմուլկան Լեհաստանի Միացյալ բանվորական պարտիայի երրորդ համագումարին տված իր հաշվետու զեկուցման մեջ պատկերավոր կերպով ասաց, որ 40 տարի առաջ, երբ Ռուսաստանի պրոլետարիատը վերցրեց իշխանությունը, իր ձեռքում ուներ Մարքսի և Էնգելսի Կոմունիստական Մանիֆեստը, իսկ այժմ համաշխարհային սոցիալիստական ռևոլյուցիայի օգտին բացի Կոմունիստական Մանիֆեստից գործում են նաև սոցիալիստական շինարարության նվաճումները և նրա զարգացման հեռանկարները։ «Սոցիալիզմի օգտին գործում են,—ասաց Վ. Գոմուլկան,—ՍՄԿՊ XXI համագումարի ընդունած Սովետական Միության ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանը, ինչպես նաև մեր տնտեսության զարգացման պլանը և բոլոր սոցիալիստական երկրների տնտեսական պլանները։ Որովհետև, կարճ ասած, Կոմունիստական Մանիֆեստը դա սոցիալիզմի թեորիան է, իսկ սոցիալիստական երկրների համակողմանի զարգացման պլանները, որոնք իրագործվում են, դա սոցիալիզմի պրակտիկ, նյութական և հասարակական պատկերն է»։

Համաշխարհային սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակն ի վերջո անխուսափելի է, որովհետև անխուսափելի է սոցիալիստական սիստեմի տնտեսական հաղթանակը կապիտալիստական սիստեմի նկատմամբ։ Իսկ տնտեսական հաղթանակը հիմնականն է, կարևորը, վճռականը։ Դեռևս 1921 թվականին Վ. Ի. Լենինը սոցիալիստական կացութաձևի հիմքերի տնտեսական շինարարությունը համարում էր «...մեր ամենաիսկական գործը, ամենաիսկականը թե՛ սկզբունքային տեսակետից, թե՛ գործնական, թե՛ ՌՍՖՍՀ տեսակետից այժմ և թե՛ միջազգային տեսակետից» (Երկեր, հ. 33, էջ 116)։

Այժմ սոցիալիստական սիստեմի երկրների համար ամենակարևոր խնդիրը շարունակում է մնալ տնտեսական շինարարության պլանների իրագործումը, որովհետև այն կապահովի հաղթանակը կապիտալիզմի նկատմամբ խաղաղ մրցության ասպարեզում, իսկ այդ կկանխորոշի սոցիալիզմի հաղթանակը ամբողջ աշխարհում, որովհետև, ինչպես Լենինն էր ասում, սոցիալիստական տնտեսական սիստեմն իր օրինակի ուժով կապիտալի լծի տակ գտնվող ժողովուրդներին կմղի դեպի վերջնական ազատագրություն։

# ԵՐԿՐԻ ԷԼԵԿՏՐԻՖԻԿԱՑՄԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ՊԼԱՆԻ ՎՃՌԱԿԱՆ ՓՈՒԼԸ

ԷԴ. ՇԱՀԻՆՅԱՆ

*Դեռևս Սովետական պետության կառուցման արշալույսին, մեր պարտիայի հիմնադիր անմահ Լենինն ընդգծում էր էլեկտրիֆիկացման հսկայական նշանակությունը կոմունիստական հասարակության կառուցման գործում։ Վլադիմիր Իլյիչի անվան հետ է կապված և նրա անմիջական ղեկավարությամբ է այն ժամանակ մշակվել ԳՈԷԼՌՈ-ի պատմական պլանը, ըստ որի էլեկտրաէներգիայի լայն օգտագործման հիման վրա նախատեսվում էր մեր երկրի տնտեսական բոլոր ճյուղերի տեխնիկական վերազինում։ Վ. Ի. Լենինը գտնում էր, որ Սովետական իշխանությունը կարող է աշխատանքի արտադրողականության վիթխարի աճի հասնել, կոմունիզմի համար անհրաժեշտ նյութական նախադրյալներ ստեղծել միայն երկրի համատարած էլեկտրիֆիկացման ճանապարհով։*

«Կոմունիզմը—դա Սովետական իշխանությունն է պլյուս ամբողջ երկրի էլեկտրիֆիկացիան»։ *«Միայն այն ժամանակ, երբ երկիրն էլեկտրիֆիկացվի, երբ արդյունաբերությունը, գյուղատնտեսությունն ու տրանսպորտը դրվեն ժամանակակից խոշոր արդյունաբերության տեխնիկական բազայի վրա, միայն այն ժամանակ մենք կհաղթենք վերջնականապես»,—ընդգծում էր Վ. Ի. Լենինը։*

*Լենինյան այս պատգամները Կոմունիստական պարտիան դրեց իր մշակած հնգամյա պլանների հիմքում։*

*Սովետական իշխանության գոյության տարիներին մեզ մոտ վիթխարի միջոցառումներ իրականացվեցին, որոնք կարճ ժամկետում մեր երկիրը դարձրին հզոր սոցիալիստական ինդուստրիալ-կոլտնտեսային տերություն։*

*Նույն այդ ժամանակի ընթացքում ՍՍՌՄ էներգետիկ տնտեսությունը մեծ չափով ընդլայնվեց, իսկ էլեկտրաէներգիայի արտադրանքն անչափ աճեց։ Եթե 1913 թվականին նախառևոլյուցիոն Ռուսաստանում արտադրվում էր 1,94 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, ապա 1958 թվականին այն ավելացավ 120 անգամ, էլեկտրաէներգիայի արտադրությունը հասավ 233 միլիարդ կիլովատ-ժամի։ Ներկայումս մեր էլեկտրակայանները 26 անգամ ավելի էլեկտրաէներգիա են արտադրում, քան նախատեսում էր ԳՈԷԼՌՈ-ի պլանը։*

*Անհրաժեշտ քանակությամբ էլեկտրաէներգիայի առկայությունը թույլ է տալիս մեքենայացնել ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի ամենաբարդ արտադրական պրոցեսները։ Էլեկտրաէներգիան թեթևացնում է աշխատանքը, բարձրացնում արտադրողականությունը։ Միայն երկրի արդյունաբերության մեջ աշխատանքի էլեկտրազինվածությունը (միջին հաշվով մեկ բանվորի սպառած էլեկտրաէներգիայի քանակը) 1913 թվականի համեմատությամբ աճել է ավելի քան 25 անգամ։ Ցարական Ռուսաստանի ամենախոշոր էլեկտրակայանի կարողությունը 57 հազար կիլովատից ավելի չէր։ Այժմ, իրոք, հեքիաթային է թվում, որ ՍՍՌՄ-ում աշխատում են 300—700 հազար կիլովատ կարողության մի քանի տասնյակ էլեկտրակայաններ։*



*Վերջին տարիների ընթացքում մեր երկրում գործարկվել են մի քանի խոշոր էլեկտրակայաններ, որոնց թվում և աշխարհում ամենախոշոր հիդրոէլեկտրակայանը՝ Վոլգայի վրա կառուցված Լենինի անվան հիդրոէլեկտրակայանը, որի կարողությունը 2 միլիոն 300 հազար կիլովատ է։ Մեծ Լենինի պատգամները կենսագործելու ուղիով է զարգացել նաև մեր ռեսպուբլիկայի էներգետիկ տնտեսությունը։ Հայ ժողովրդի համար, որը ժառանգություն էր ստացել քայքայված և հետամնաց մի տնտեսություն, հեշտ չէր նորի՝ սոցիալիստականի կառուցումը։*

*Առաջին համաշխարհային պատերազմի տարիներին և, հատկապես, դաշնակցական արյունոտ ռեժիմի ժամանակաշրջանում վերջնականապես քայքայված Հայաստանի էկոնոմիկան, ինչպես և էներգետիկ տնտեսությունը, շատ խղճուկ տեսք ուներ։*

*Լենինի ցուցումները, որ շարադրված են Կովկասի կոմունիստներին ուղղված հայտնի նամակում, դրվեցին ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության կազմակերպման, էներգետիկ բազայի ստեղծման աշխատանքների հիմքում։ Հայաստանում Սովետական իշխանության տարիներին առաջին հնգամյակի հիդրոէլեկտրակայանների՝ Լենինականի, Երևանի № 1, Ձորագէսի հիդրոկայանների և շատ գերատեսչական էլեկտրակայանների հետ միասին կառուցվել ու աշխատում են Սևան—Հրազդան կասկադի՝ Սևանի, Գյումուշի, Արզնու, Քանաքեռի հիդրոէլեկտրակայանները, որոնց էլեկտրաէներգիայի տարեկան ընդհանուր արտադրանքը 480 անգամ գերազանցում է նախառևոլյուցիոն Հայաստանի (1913 թ.) էլեկտրաէներգիայի արտադրության մակարդակը։ Միայն Գյումուշի հիդրոէլեկտրակայանը 70 անգամ կարողությամբ և 70-ից ավելի անգամ էլեկտրաէներգիայի արտադրությամբ գերազանցում է նախասովետական Հայաստանի բոլոր էլեկտրակայանների մակարդակը միասին վերցրած։*

*Հայկական ադմինիստրատիվ տնտեսական շրջանի ներսում խոշոր էլեկտրակայաններն ու ենթակայանները էլեկտրահաղորդման բարձրավոլտ գծերով միացված են իրար, որի շնորհիվ մեզ մոտ ստեղծված է Հայաստանի միասնական էներգոսիստեմ։ Մեր էներգոսիստեմի հիդրոէլեկտրակայանները և ենթակայաններն ավտոմատացված և հեռուստամեքենայացված են, որի շնորհիվ նրանց նկատմամբ կիրառվում է հեռուստավարում։ Այժմ Երևանում գտնվող ղեկավարման կենտրոնական պուլտից կանոնավորվում և հսկվում է ռեսպուբլիկայի բոլոր խոշոր և միջին հիդրոէլեկտրակայանների աշխատանքը։*

*Մեր ռեսպուբլիկան այժմ ավելի շատ էլեկտրաէներգիա է արտադրում, քան ամբողջ ցարական Ռուսաստանը 1913 թվականին։ Բնակչության մեկ շնչին ընկնող էլեկտրաէներգիայի արտադրությամբ Հայկական ՍՍՌ-ն ետ է թողել շատ առաջավոր կապիտալիստական երկրների, այդ թվում՝ Ֆրանսիային, Հոլանդիային, Իտալիային և Ճապոնիային։ Հայաստանն այժմ արտադրում է երկու և ավելի անգամ շատ էլեկտրաէներգիա, քան արդի Թուրքիան։ Անսահման աճել է Հայաստանի էկոնոմիկան։ Մեր ռեսպուբլիկան*

դարձել է ծաղկած երկիր ժամանակակից արդյունաբերությամբ, առաջավոր գյուղատնտեսությամբ և բարձր կուլտուրայով։ Գյուղատնտեսության բնագավառում ձեռք բերած նվաճումների համար Հայաստանն արժանացավ Լենինի շքանշանի։ Մեր ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության հաջողությունները, նրա էկոնոմիկայի վերելքը մեկ անգամ ևս վկայում են լենինյան ազգային քաղաքականության հաղթանակի, կապիտալիզմի նկատմամբ սոցիալիստական կարգերի առավելությունների մասին։

Երկրի ամբողջ ժողովրդական տնտեսության և, մասնավորապես, ժամանակակից խոշոր արտադրության հիմքը հանդիսացող էներգետիկայի զարգացման համար է՛լ ավելի վառ հորիզոններ են բացել ՍՄԿՊ XXI համագումարի որոշումները։ Ն. Ս. Խրուշչովը համագումարին տված իր զեկուցման մեջ ասաց. «Այժմ մենք թևակոխում ենք երկրի համատարած էլեկտրիֆիկացման մասին մեծ Լենինի գաղափարի իրականացման վճռական ստադիան»։ Յոթնամյակի վերջում էլեկտրաէներգիայի արտադրությունն ամբողջ երկրում, համաձայն համագումարի հաստատած կոնտրոլ թվերի, կհասնի մինչև 500—520 միլիարդ կիլովատ-ժամի, իսկ էլեկտրակայանների սահմանված կարողությունը կմեծանա ավելի քան երկու անգամ։

Յոթնամյակի վերջում բնակչության մեկ շնչին կընկնի 2300 կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։ Գյուղատնտեսության մեջ էլեկտրաէներգիայի ծախսումը կաճի չորս անգամ։

Երկրում էլեկտրաէներգիայի այսպիսի բացառիկ վերելք ապահովելու համար 1959—1965 թվականներին հաջողությամբ շահագործման կհանձնվեն շուրջ 58—60 միլիոն կիլովատ նոր էներգետիկ կարողություններ, այսինքն՝ ավելի, քան Սովետական իշխանության անցած բոլոր տարիների ընթացքում, կամ մոտավորապես այնքան, որքան կառուցվել և շարք են մտել Անգլիայում, Ֆրանսիայում և Արևմտյան Գերմանիայում միասին վերցրած, նրանց գոյության ամբողջ ընթացքում։

Հայտնի է, որ հիդրոէլեկտրակայանների կառուցումը շատ միջոցներ և ժամանակ է պահանջում։ Այդ պատճառով էլ ՍՄԿՊ XXI համագումարում միահամուռ հավանության արժանացավ պարտիայի Կենտկոմի վերցրած ճիշտ կուրսը, այն է՝ մոտակա տարիներին առաջնությունը տալ ջերմային էլեկտրակայանների կառուցմանը։ «Որպես ՍՍՌՄ-ի էլեկտրաէներգետիկայի զարգացման գլխավոր ուղղություն՝ նախատեսված է 1959—1965 թվականներին կառուցել առավելապես ջերմաէլեկտրակայաններ՝ էժան ածխի, բնական գազի ու մազութի բազայի վրա»,— ասված է ՍՄԿՊ XXI համագումարին ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսներում։ Ջերմային էներգետիկայի զարգացումը գլխավորապես իրագործվելու է մեկ միլիոն և ավելի կիլովատ կարողությամբ խոշոր ջերմային էլեկտրակայաններ կառուցելու հաշվին՝ դրանցում տեղակայելով 150,200. 300 հազար և ավելի կիլովատ կարողությամբ շոգու և գազային տուրբիններ։

Յոթնամյակում մեր Հայրենիքի զանազան շրջաններում ավելի քան 40 խոշոր ջերմաէլեկտրակայանների կառուցման շնորհիվ երկիրը կստանա 47—50 միլիոն կիլովատ նոր կարողություն, այսինքն՝ 1959—1965 թվականներին շահագործվելիք կարողությունների մոտ 80 տոկոսը։

Ջերմաէներգետիկան մեծ զարգացում կստանա երկրի արևելյան շրջաններում և Կովկասում, որտեղ էժան ածխի և գազի հսկայական պաշարներ կան։



Մեծ կարողության ջերմային էլեկտրակայանների շինարարությանն անցնելը կավելացնի նրանց սահմանված կարողությունը մոտ 2,3—2,4 ազամ, կիլովատի արժեքը կիջնի 520—560 ռուբլով։ Այս բոլորը թույլ կտան է՛լ ավելի արագացնելու երկրի էլեկտրիֆիկացման տեմպերը և յոթնամյակի ընթացքում էներգետիկայի գծով կապիտալ ներդրումներից տնտեսելու ավելի քան 20 միլիարդ ռուբլի։

Ջերմային էլեկտրակայանների շինարարությանը զուգընթաց առաջիկա յոթնամյակում նախատեսված է կառուցել նաև 10 միլիոն կիլովատ կարողությամբ նոր հիդրոէլեկտրակայաններ։ Ոչ հեռու ապագայում կավարտվի 3,6 միլիոն կիլովատ կարողությամբ Բրատսկի հիդրոէլեկտրակայանի շինարարությունը։ Շարք կմտնեն նաև Վոտկինսկի հիդրոէլեկտրակայանը՝ մեկ միլիոն կիլովատ կարողությամբ, Բուխտարմայի հիդրոկայանը՝ 525 հազար կիլովատ կարողությամբ։ Լայն ծավալ է ստանում Կրասնոյարսկի՝ աշխարհում ամենախոշոր հիդրոկայանի շինարարությունը, որը կունենա 4,2 միլիոն կիլովատ կարողություն և կտա մեր երկրում ամենաէժան էլեկտրաէներգիան։ Դրա հետ մեկտեղ առաջիկա տարիներին կաշխատեն Ստալինգրադի՝ 2,5 միլիոն կարողությամբ հիդրոէլեկտրակայանի բոլոր ագրեգատները, կավարտվի Կրեմենչուգի հիդրոէլեկտրակայանի շինարարությունը և շահագործման կհանձնվի Դնեպրոձերժինսկի հիդրոէլեկտրակայանը։

Առաջիկա յոթնամյակում էլեկտրաէներգիայի զարգացման կարևորագույն յուրահատկությունը կլինի էլեկտրահաղորդման գծերի արագաթափ շինարարությունը։ Նախատեսվում է 1959—1965 թվականներին էլեկտրական ցանցերի տարածությունը մեծացնել 2,5—3 անգամ։ Այդ ժամանակամիջոցում կստեղծվեն ՍՍՌՄ Եվրոպական մասի և Կենտրոնական Սիբիրի միասնական էներգետիկ սիստեմներ, ինչպես նաև կմիավորվեն Հյուսիս-Արևմուտքի, Արևմուտքի, Անդրկովկասի, Ղազախստանի, Միջին Ասիայի շրջաններում գործող էլեկտրակայանները։ Սովետական Միությունում խոշոր էներգոսիստեմների մեջ էլեկտրակայանների հետագա միավորումը կընթանա մեկ միասնական էներգոսիստեմ ստեղծելու ուղղությամբ։

Էլեկտրացանցերի շինարարությունը հնարավորություն կընձեռի յոթնամյակում էլեկտրիֆիկացնելու մոտ 20 հազար կիլոմետր երկաթուղի երկրի եվրոպական մասի կարևորագույն ուղղություններում և Արևելքում, որը թույլ կտա երկաթուղու էլեկտրիֆիկացիայի բնագավառում գերազանցել ԱՄՆ-ին։ Յոթնամյակի վերջում էլեկտրական և ջերմային քարշի անցած երկաթուղիների երկարությունը կհասնի մոտ 100 հազար կիլոմետրի։

Յոթնամյա պլանում նախատեսվում է ատոմային էներգետիկայի հետագա զարգացում։ Կկառուցվեն մի քանի փորձնական հզոր ատոմային-արդյունաբերական էլեկտրակայաններ՝ տարբեր տիպի ռեակտորներով։

Յոթնամյակի վերջում մեր երկրում կավարտվի բոլոր Սովետական տնտեսությունների, կոլտնտեսությունների, նորոգման տեխնիկական կայանների, բանվորական ավանների էլեկտրիֆիկացիան, շեշտակիորեն կբարձրանա արդյունաբերության էլեկտրազինվածության մակարդակը, որը կմոտենա ԱՄՆ-ի մակարդակին։

1959—1965 թվականները կլինեն մեր Հայրենիքի էլեկտրիֆիկացման լենինյան գաղափարների իրագործման վճռական էտապը։

*Երկրի էլեկտրիֆիկացիայի հետագա զարգացմանը զուգընթաց կամրապնդվի և կընդլայնվի մեր ռեսպուբլիկայի էներգետիկ տնտեսությունը։*

*Հայաստանի Կոմպարտիայի XX համագումարի որոշումներում և ՀԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ս. Թովմասյանի զեկուցման մեջ հանգամանորեն դրված են մեր ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության զարգացման հեռանկարները։* Յոթնամյակի ընթացքում Հայաստանում էլեկտրաէներգիայի սպառումը կաճի 1,8 անգամ:

*Ի՞նչ ուղիներով է զարգանալու և ընդլայնվելու ռեսպուբլիկայի էներգետիկ բազան։*

*Պետք է նշել, որ Հայկական ՍՍՌ-ում, որը չունի վառելանյութային հանածոների պաշարներ, մինչև հիմա էլ էներգետիկայի յուրահատկությունը հիդրոռեսուրսների և, գլխավորապես, Սևանա լճի սահմանափակ պաշարների օգտագործումն է։ Մինչդեռ ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության բուռն զարգացման և նոր արտադրական կարողությունների գործարկման հետևանքով (հատկապես էներգատար քիմիական արդյունաբերության) մեր էլեկտրակայանների արտադրած էներգիան ի վիճակի չէր ապահովելու Հայաստանի արտադրողական ուժերի հետագա զարգացումը։ Դրա հետևանքով ռեսպուբլիկայի էներգոբալանսի մեջ որոշակի լարում էր զգացվում։ Այս հանգամանքը և Սևանա լճի մակարդակը պահպանելու բացառիկ կարևորությունը հաշվի առնելով, ՀԿՊ Կենտկոմը և Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետը վերջին տարիներին մշակել և իրագործում են մի շարք կոմպլեքսային միջոցառումներ՝ Սևանա լճի ջրերի ռացիոնալ օգտագործման և այլ ռեսուրսների հաշվին ռեսպուբլիկայի էներգետիկ տնտեսության հետագա զարգացման ուղղությամբ։*

*Հայաստանի էներգետիկ շինարարության պլանի մեջ վերջերս մի շարք էական փոփոխություններ մտցվեցին։ Այդ գործին նպաստեց եղբայրական Ադրբեջանի Ղարադաղի շրջանում մեծ քանակությամբ բնական գազի առկայությունը, որը կնուցի և մեզ մոտ կառուցվող ջերմաէլեկտրակայանները։*

*Ելնելով պարտիայի Կենտրոնական Կոմիտեի և մեր կառավարության այն ցուցումից, որ անհրաժեշտ է ժամանակ շահել, կրճատել էլեկտրակայանների շինարարության ժամկետները և սակավ ծախսերի գնով շատ էլեկտրաէներգիա ստանալ (որը հնարավոր է գլխավորապես ջերմաէլեկտրակայանների շինարարության ճանապարհով), որոշվեց շեղվել նախնական, այն է՝ Հայաստանի տարբեր ջրային ուղիների վրա փոքր կարողության և թանկ նըստող մի շարք հիդրոէլեկտրակայանների կառուցման պլանից։ Այսպիսով, ռեսպուբլիկայի էներգաշինարարության յոթնամյա պլանում նախատեսվեց ընթացիկ տարում շահագործման հանձնել Աթարբեկյանգէսը և արագացնել Երևանգէսի՝ Սևան—Հրազդան կասկադի վեցերորդ և վերջին աստիճանի շինարարությունը, այն 1960 թվականին ավարտելու հաշվով։*

*Մեզ մոտ հիմնական ուշադրությունը յոթնամյակի ընթացքում հատկացվելու է ջերմաէլեկտրակայանների կառուցմանը։ Նախատեսվում է Ղարադաղ—Երևան գազամուղին զուգընթաց, ձեռնարկել 2 հզոր ջերմաէլեկտրակայանների շինարարությանը, որոնցից մեկը՝ Երևանի ջերմաէլեկտրակայանը, արդեն 1962 թվականին կտա արդյունաբերական հոսանք, աշխատելով բնական գազի և քաղաքի քիմիական ձեռնարկությունների գազային մնացորդների այրման վրա։*



*Դրա հետ մեկտեղ նկատի առնելով, որ Սևան—Հրազդան կասկադի հիդրոէլեկտրակայանները (հետագայում Սևանա լճից ջրի բացթողումները կրճատելուց հետո) չեն կարող մնալ որպես հզոր էներգետիկ բազա, նախատեսված է ջերմաէլեկտրակայանների շինարարության հետ միաժամանակ ստեղծել նոր հզոր հիդրոէներգետիկ բազա Որոտան գետի վրա։ Որոտան գետը հոսում է այն շրջաններով, որտեղ կենտրոնացված են մեր ռեսպուբլիկայի լեռնահանքային արդյունաբերության մի շարք խոշոր ձեռնարկություններ։ Համաձայն արդեն հաստատված սխեմայի, Որոտան գետի էներգետիկ օգտագործումը նախատեսված է իրագործել կասկադաձև դասավորված յոթ հիդրոէլեկտրակայանների միջոցով։ Յոթնամյա պլանով նախատեսվում է մոտակա ապագայում սկսել Որոտանի կասկադի ամենամեծ՝ 150 հազար կիլովատ կարողությամբ Տաթևի էլեկտրակայանի շինարարությունը։*

*Առաջիկա յոթնամյակում մեզ մոտ կառուցվելիք էլեկտրակայանների ընդհանուր կարողությունը մոտ 500 հազար կիլովատ է։*

*Անդրկովկասյան երեք ռեսպուբլիկաների էներգետիկ բազայի զարգացման մեջ կարևոր դեր կխաղա նրանց էներգետիկ սիստեմների միավորումը։ Յոթնամյա պլանով նախատեսվում է «Աղստաֆա-Հայկական էներգոսիստեմ» էլեկտրահաղորդման գծի կառուցումը, որի շահագործումը կսկսվի 1960 թվականից։ Այդ էլեկտրահաղորդման գծով մեր ռեսպուբլիկան 1960 թվականից սկսած լրացուցիչ էլեկտրաէներգիա կստանա Անդրկովկասյան էներգոսիստեմից, հիմնականում Ալի-Բայրամլիի (Ադրբեջանական ՍՍՌ) խոշորագույն գազատուրբինային էլեկտրակայանից։ Դա թույլ կտա բավարարել արդյունաբերության աճող էներգապահանջը և 1965 թվականից սկսած, այսօրվա համեմատ, երեք անգամ կրճատել Սևանա լճի ջրի տարեկան բացթողումները և անցնել իռիգացիոն գրաֆիկով նախատեսվող բացթողումներին, այսինքն՝ Սևանա լճի բարձր մակարդակը պահպանելու առաջին էտապին։*

*Ջերմային և հիդրոէլեկտրակայանների շինարարությանը զուգընթաց ռեսպուբլիկայում կծավալվի էլեկտրական ցանցերի և ենթակայանների շինարարությունը։ Յոթնամյակում կառուցվելիք էլեկտրահաղորդման մագիստրալ գծերի ընդհանուր երկարությունը կկազմի 900 կիլոմետր։ Արմատապես կփոխվի էներգետիկայի կառուցվածքը։ 1965 թվականին մեր ռեսպուբլիկան (չհաշված Ադրբեջանից ստացվող էլեկտրաէներգիան) կարտադրի 600-ից ավելի անգամ էլեկտրաէներգիա, քան նախառևոլյուցիոն Հայաստանը ու երկուսից ավելի անգամ, քան ցարական Ռուսաստանը։*

*Հայաստանի տերիտորիայի մեկ քառակուսի կիլոմետրին յոթնամյակի վերջում կընկնի շատ ավելի էլեկտրաէներգիա, քան ԱՄՆ-ում, Կանադայում, Շվեդիայում և ուրիշ առաջավոր կապիտալիստական երկրներում։ Յոթնամյակի վերջում ամբողջ ռեսպուբլիկան ծածկված կլինի էլեկտրահաղորդման գծերով։ Արդեն 1960 թվականին կիրագործվի Հայաստանի քաղաքների և գյուղերի համատարած էլեկտրիֆիկացիան։*

*Կոմունիզմի ծավալուն կառուցման յոթնամյակում մեր անծայրածիր Հայրենիքի բոլոր անկյուններում ավելի պայծառ կվառվեն Իլյիչի միլիոնավոր ու միլիոնավոր լամպերը։*

# Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ՓԻԼԻՍՈՓԱՅԱԿԱՆ ՏԵՏՐԵՐԸ

Հ. ԱՍԼԱՆՅԱՆ, ՏԱՃ. ԱԼԵՔՍԱՆՅԱՆ

*Սովետական ընթերցողի սեղանի վրա է ռեվոլյուցիոն գործի ու մտքի մեծագույն կորիֆեյ Վ. Ի. Լենինի փիլիսոփայական աշխատանքի մի նոր մարգարիտ՝ Երկերի 38-րդ հատորը։ Այս հատորը լրացված հրատարակությունն է այն աշխատության, որն անցյալում մի քանի անգամ լույս է տեսել «Փիլիսոփայական տետրեր» խորագրով։ Սա մարքս-լենինյան փիլիսոփայության ստեղծագործական մշակման ու զարգացման մի հարստագույն գանձարան է և, միևնույն ժամանակ, մեր փիլիսոփայության հետագա առաջընթացի մի ամբողջ ծրագիր։ Բաց անելով այս գիրքը, մենք մտնում ենք լենինյան մտքերի հարուստ աշխարհը, մեր առաջ բացվում է հզոր բանականության անդադրում աշխատանքի լաբորատորիան։ «Փիլիսոփայական տետրեր»-ը մի ամբողջական գործ չէ. այստեղ համախմբված են փիլիսոփայական ու բնագիտական բազմազան գրքերի վերաբերյալ 1914—1916 թթ. Լենինի կազմած կոնսպեկտները, ֆրագմենտները, քննադատական գրախոսականներն ու դիտողությունները և այլ նյութեր։*

*Առաջին հայացքից կարող է անհասկանալի թվալ այն հանգամանքը, որ պրոլետարիատի մեծ առաջնորդը համաշխարհային իմպերիալիստական պատերազմի ահավոր տարիներին, իր բուռն ռեվոլյուցիոն գործունեության հետ միասին, ժամանակ է գտել զբաղվելու «վերացական» փիլիսոփայական կատեգորիաներով ու պրոբլեմներով, կոնսպեկտավորելու Հեգելի հաստափոր հատորները, տնտղելու բնագիտական մի շարք գրքեր։*

*Բայց այստեղ տարօրինակ ոչինչ չկա։ Մարքսիզմի թեորիական սկզբունքների հիմնավորումն ու հետագա զարգացումը, դրանց պաշտպանությունը բազմաթիվ ճշնամիներից, պատմական նոր էպոխայի օրինաչափությունների բացահայտումը, պրոլետարական ռեվոլյուցիայի ծրագրի, ստրատեգիայի, տակտիկայի մշակումը միշտ էլ Լենինի ռեվոլյուցիոն գործունեության բաղկացուցիչ մասն են կազմել։ Իմպերիալիստական պատերազմը, Երկրորդ ինտերնացիոնալի կրախը, միջազգային կոմունիստական կազմակերպություն ստեղծելու հրատապ խնդիրների լուսաբանման, բնագիտության նոր տվյալների ընդհանրացման անհրաժեշտությունը — այդ բոլորը Լենինից պահանջում էին դիալեկտիկական ու պատմական մատերիալիզմի, ինչպես և մարքսյան քաղաքատնտեսության դրույթների ստեղծագործական զարգացում և կիրառում։ Այդ զարգացման փայլուն մարմնացումն են «Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի բարձրագույն ստադիա», «Փիլիսոփայական տետրեր» և այդ շրջանի այլ գործեր։*

*Հատորի գաղափարական բովանդակության առանցքը, անշուշտ, մարքսիստական մեթոդոլոգիան է, մատերիալիստական դիալեկտիկան։ Շարունակ*



*անդրադառնալով այդ հարցին, Լենինն ընդգծում է դրա վճռական նշանակությունը մարքսիզմի գաղափարական սիստեմում, համարելով այն նրա արմատական թեորիական հիմքը։ Դեռ 1913 թվականին Մարքսի և Էնգելսի նամակագրության վերաբերյալ Լենինը գրել է. «Եթե փորձ անենք մի խոսքով սահմանելու ամբողջ նամակագրության, այսպես ասած, կիզակետը,— այն կենտրոնակետը, որին հանգում է արտահայտվող և քննարկվող գաղափարների ամբողջ ցանցը, ապա այդ խոսքը կլինի դիալեկտիկան։ Մատերիալիստական դիալեկտիկայի կիրառումը ամբողջ քաղաքատնտեսության վերամշակման նկատմամբ սկսած նրա հիմքից — պատմության, բնագիտության, փիլիսոփայության, բանվոր դասակարգի քաղաքականության ու տակտիկայի նկատմամբ,— ահա ինչն է ամենից շատ հետաքրքրում Մարքսին ու Էնգելսին, ահա ինչի մեջ են նրանք մտցնում ամենից էականն ու ամենից նորը, ահա ինչումն է նրանց հանճարեղ առաջաքայլը ռեվոլյուցիոն մտքի պատմության մեջ» (Երկեր, հ. 19, էջ 694—695)։*

*Գաղափարական ճակատամարտ մղելով ինչպես իդեալիզմի, այնպես էլ վուլգար մատերիալիզմի դեմ, Լենինն ամբողջ ուժով պաշտպանում է մարքսիստական փիլիսոփայության անաղարտությունը, բացատրելով, որ մատերիալիստական դիալեկտիկայից շեղվելը՝ նշանակում է մարքսիզմից դուրս մղել նրա կենդանի հոգին, խզել նրա կապը դարաշրջանի գործնական խնդիրների հետ, մարքսիզմը դարձնել այլանդակ, անկենդան, հեռանալ հակասություններով լի պատմական զարգացման բազմակողմանի, օբյեկտիվ և ճիշտ ըմբռնումից։ Ահա թե ինչու մատերիալիստական դիալեկտիկայի հարցերը «Փիլիսոփայական տետրեր»-ի հիմնական բովանդակությունն են կազմում. այստեղ տրված է այդ գիտության առարկայի բնորոշումը, լուսաբանված են դրա խնդիրները, խորապես բացահայտված են դրա օրենքների ու կատեգորիաների բովանդակությունը, փոխադարձ կապը։*

*Լենինի համար մատերիալիստական դիալեկտիկան ամենից առաջ մի ամբողջական փիլիսոփայական գիտություն է իր օրենքներով, կատեգորիաներով, ներքին ստրուկտուրայով և, որպես այդպիսին, հանդիսանում է օբյեկտիվ աշխարհի ամենախոր արտացոլումը։ Այդ գիտության բովանդակության բացահայտման տեսակետից է Լենինը կոնսպեկտավորել Հեգելի «Տրամաբանության գիտություն» մեծածավալ աշխատությունը, ամենուրեք աշխատելով գտնել իդեալիստական դիալեկտիկայի և տրամաբանության այդ կլասիկ երկի ռացիոնալ բովանդակությունն ու օբյեկտիվ հիմքը՝ կարդալ այն մատերիալիստորեն։*

*Լենինի (ինչպես և Մարքսի ու Էնգելսի) համար մատերիալիստական դիալեկտիկան ստույգ փիլիսոփայական գիտություն է բնության, հասարակության ու մարդկային մտածողության շարժման և զարգացման ամենաընդհանուր օրենքների մասին։ Այդ ընդհանուր օրենքները հավասարապես վերաբերում են ինչպես օբյեկտիվ, նյութական աշխարհին, այնպես էլ մարդկային մտածողությանը։ Այստեղից՝ Լենինի այն ձևակերպումը, թե՝ դիալեկտիկան «գիտություն է ինչպես արտաքին աշխարհի, այնպես էլ մարդկային մտածողության շարժման ընդհանուր օրենքների մասին» (հ. 21, էջ 53)։ Ընդ որում, այդ երկու շարք օրենքներն, ըստ էության, իրենց բովանդակությամբ համընկնում են, իրարից տարբերվելով միայն իրենց արտահայտման ձևերով։ Ամբողջ հատորում կարմիր թելի պես անցնում է մատերիալիստական այն մեծ*

միտքը, թե դիալեկտիկայի օրենքները մտածին բաներ չեն, այլ վերցված են ռեալ աշխարհից՝ բնությունից, հասարակությունից, պատմությունից։ Կա իրերի դիալեկտիկա և կա մտքերի դիալեկտիկա, շարունակ հիշեցնում է Լենինը, ընդ որում, երկրորդն առաջինի արտացոլումը, արտանկարն է մարդու գլխում։ Արտանկարը կարող է օրիգինալի ճշգրիտ, մոտավոր ճիշտ, սխալ, նույնիսկ խեղաթյուրված ու ֆանտաստիկ արտացոլումը լինել, բայց այն նրա արտացոլումն է, այնտեղ է թաքնված նրա աղբյուրը, հիմքն ու բովանդակությունը։

Արժեքավորելով Հեգելին այս տեսակետից, Լենինը գրում է՝ «Հեգելը հասկացությունների դիալեկտիկայի մեջ հանճարեղորեն կռահեց իրերի (երևույթների, բնության, աշխարհի) դիալեկտիկան» (հ. 38, էջ 188)։ «Բուն իրերի, բուն բնության, դեպքերի բուն ընթացքի դիալեկտիկա», կրկին անդրադառնում է Լենինը նույն մտքին (էջ 100)։ Իրերի դիալեկտիկայով է որոշվում մտքերի, իդեաների դիալեկտիկան։ Ուստի և մտածողության օրենքները չեն կարող հակասել օբյեկտիվ աշխարհի օրենքներին, այլ, վերջին հաշվով, համընկնում են նրանց հետ։ Եվ դրա շնորհիվ է, որ մարդն իր մտածողության օգնությամբ կարող է ազդել օբյեկտիվ աշխարհի վրա, ավելին՝ վերակառուցել ու վերափոխել այն, նյութի մի ձևից ստեղծել մի այլ ձև, ստեղծել նոր աշխարհ, մարդկային աշխարհ։

Իդեականի այդ վերափոխիչ դերը շեշտելու համար Լենինն իր մտքին այնպիսի սուր ձևակերպում է տալիս, որ վուլգար մատերիալիստին, երբ նա լսի այդ խոսքերը, կարող է թվալ, թե իր ականջի տակ թնդանոթ կրակեցին։ «Մարդու գիտակցությունը ոչ միայն արտացոլում է օբյեկտիվ աշխարհը, այլև կերտում այն»,—գրում է Լենինը (էջ 204)։ Այստեղ հանդես է գալիս օբյեկտիվի և սուբյեկտիվի, մատերիայի և մտածողության դիալեկտիկական միասնությունը, որպիսին անզոր են հասկանալու ինչպես իդեալիզմը, այնպես էլ վուլգար մատերիալիզմը։

Հիմնավորելով մարքսիստական դիալեկտիկայի օբյեկտիվ բովանդակությունը՝ Լենինն առաջ է քաշում իր ֆունդամենտալ դրույթներից մեկը, այն է՝ դիալեկտիկայի, տրամաբանության և իմացաբանության միասնության հարցը։ Այս դրույթն անցնում է ամբողջ հատորով, լուսաբանվելով ամենատարբեր առումներով ու կողմերով։ «Հենց դիալեկտիկան է (Հեգելի և) մարքսիզմի իմացաբանությունը. ահա թե գործի որ «կողմի» վրա (սա գործի «կողմը» չէ, այլ գործի էությունն է) ուշադրություն չի դարձրել Պլեխանովը, չխոսելով արդեն մյուս մարքսիստների մասին»,— գրում է Լենինը «Դիալեկտիկայի հարցի շուրջը» հանրահայտ ֆրագմենտում։ Ամփոփ գծագրելով Հեգելի դիալեկտիկայի (տրամաբանության) պլանը, Լենինը հետևյալ անչափ կարևոր մտահանգումն է անում. «Եթե Մարքսը չի թողել (մեծատառ) «Տրամաբանություն», ապա նա թողել է «Կապիտալ»-ի տրամաբանությունը, և այս պետք էր խորապես օգտագործել տվյալ հարցում։ «Կապիտալ»-ում մի գիտության նկատմամբ կիրառված է մատերիալիզմի տրամաբանությունը, դիալեկտիկան և իմացաբանությունը (3 բառ պետք չէ՝ դա նույն բանն է), Հեգելից վերցնելով այն ամենը, ինչ արժեքավոր է և առաջ տանելով սույն արժեքավորը» (էջ 315)։

Պարզաբանենք այս. ի՞նչ է նշանակում, թե դիալեկտիկան մարքսիզմի իմացաբանությունն ու տրամաբանությունն է, երբ իդեալիստները բազում



հատորներ են գրել տրամաբանությունն ու իմացաբանությունն իրարից անջատելու համար։ Ի՞նչ է տրված «Կապիտալ»-ում։

Ինչպես հայտնի է, այնտեղ հետազոտված ու բացահայտված են կապիտալիստական հասարակական ֆորմացիայի ծագման, զարգացման ու կործանման օրենքները, լուսաբանված է կապիտալիստական հարաբերությունների օբյեկտիվ պատմական պրոցեսը և այդ հիմքի վրա վերլուծված են այն հասկացությունները, կատեգորիաներն ու իդեաները, որոնք պատմական այդ պրոցեսի մտային վերարտադրություններն են։ Նույն ձևով էլ մատերիալիստական դիալեկտիկան կիրառվում է բոլոր բնագավառների նկատմամբ, մարդկային ամբողջ պատմության իմացության նկատմամբ։

«Կարլ Մարքս» հոդվածում Լենինը գրել է. «Իսկ դիալեկտիկան Մարքսի ըմբռնումով, նաև համաձայն Հեգելի, իր մեջ ներառում է այն, ինչ այժմ կոչում են իմացաբանություն, գնոսեոլոգիա, որը իր առարկան պետք է քննի հավասարապես պատմականորեն, ուսումնասիրելով և ընդհանրացնելով իմացության ծագումն ու զարգացումը, անցումը չիմացությունից իմացության» (հ. 21, էջ 54)։ Այսպիսով, հարցի էությունը տրամաբանականի և պատմականի հարաբերությունն է։

Մարքսիստական դիալեկտիկան խորապես լուծում է այս պրոբլեմը. տրամաբանականը (մտածողության ձևերն ու օրենքները) լինելով իմացության պատմության հանրագումարը, համընկնում է պատմականին։ Մարքսիզմ-լենինիզմը իմացության կատեգորիաները բխեցնում է գիտությունների պատմությունից։ Որտեղի՞ց է հայտնի, որ գիտություններն այն օրենքների համաձայն են ընթանում, որ ձևակերպված են դիալեկտիկայի մեջ։ Այդ եզրակացությանն է հանգեցնում բոլոր գիտությունների պատմությունը։ Մարքսը, Էնգելսը, Լենինը ուշի-ուշով հետևում էին այդ պատմությանը։ Օրինակ, դիալեկտիկան սովորեցնում է, որ զարգացումն ամենուրեք ընթանում է հակասությունների, հակադրությունների անցումների ձևով՝ երևույթից էությունը, մասնավորից ընդհանուրը, ցածրից բարձրը, վերջավորից անվերջը և այլն։ Եվ Լենինը գրում է. «Այդպես է նաև բնագիտության և քաղաքատնտեսության (ու պատմության) ընթացքը» (հ. 38, էջ 314)։

Ինքը մարքսիստական դիալեկտիկան հենց այն ժամանակ հանդես եկավ, երբ գիտությունների զարգացումը անհրաժեշտ նյութ կուտակեց իմացության պրոցեսի հիմնական օրենքները ձևակերպելու համար. նա ինքը հազարավոր տարիների իմացության պատմության հանրագումարն է և գոյացել է բիոլոգիայի, ֆիզիոլոգիայի, հոգեբանության, լեզվի պատմության, ֆիզիկայի, քիմիայի, երկրաբանության, պատմության, քաղաքատնտեսության և գիտության մյուս բնագավառների նյութի ընդհանրացումից։

Ահա թե ինչու դիալեկտիկայի օրենքներն ու կատեգորիաները համընկնում են մտքի պատմության պրոցեսի հետ, դրանք հենց այդ պրոցեսի օրենքներն են։ Հեգելի «Տրամաբանության» մեջ դիալեկտիկայի օրենքներն ու կատեգորիաներն իրենց փոխադարձ անցման ու կապակցությունների մեջ այդ առումով հիմնականում համընկնում են այդ պրոցեսի հետ, չնայած նրա միստիկական մեկնաբանություններին ու հաճախ բռնազբոսիկ կառուցումներին։ Այդ կապակցությամբ Լենինը գրում է. «Հեգելի դիալեկտիկան այդքանով էլ մտքի պատմության ընդհանրացումն է» (էջ 314)։

Այստեղից՝ Լենինը անչափ կարևոր ծրագրային խնդիր է առաջադրել

մարքսիստներին. դա գիտությունների պատմության լուսաբանման հարցն է դիալեկտիկական մատերիալիզմի տեսանկյունով։ «Զափազանց շնորհակալ խնդիր է թվում,— գրում է Լենինը,— սույնը հետազոտել ավելի կոնկրետ, ավելի մանրազնին, առանձին գիտությունների պատմության օրինակով։ Տրամաբանության մեջ մտքի պատմությունը ընդհանուր առմամբ ու ամբողջապես ՊԵՏՔ է համընկնի մտածողության օրենքների հետ» (նույն տեղ)։

Սա վիթխարի խնդիր է, որով մարքսիստները սիստեմատիկաբար պետք է զբաղվեն։ Լենինը պահանջում է դիալեկտիկայի ամբողջ բովանդակության, նրա օրենքների ու կատեգորիաների ճշտությունը շարունակ ստուգել գիտության պատմությամբ։ Այդպես մոտենալով հարցին, մենք տեսնում ենք, որ փիլիսոփայական և գիտական կատեգորիաներն այն հանգույցներն ու աստիճաններն են, որոնց միջով անցել է մարդկային մտքի պատմությունը։ Ուստի և այդ կատեգորիաները հասկանալու համար պետք է բացահայտել մարդկային մտքի անցած ուղին։ Երկու կարգի օրինակներ, ասում է Լենինը, պետք է բացատրեն այդ՝ 1) բնագիտության պատմությունից և 2) փիլիսոփայության պատմությունից (տե՛ս 148 և այլ էջեր)։ Տրամաբանության, իմացաբանության խնդիրը մտածողության ձևերի և երևույթների սոսկ նկարագրումը չէ, այլ օբյեկտիվ իրականության ճշմարտացի արտացոլման պրոցեսի բացատրումը, իսկ դա պետք է բխեցվի մտքի պատմությունից։ Հեգելը կռահել է այդ։ Այդ կապակցությամբ Լենինը հետևյալ ծրագրային դիտողությունն է անում. «Այսպիսի ըմբռնումով տրամաբանությունը համընկնում է **իմացաբանության** հետ։ Սա ընդհանրապես շատ կարևոր հարց է» (էջ 165)։

Տրամաբանականի և պատմականի հարաբերության հարցը միայն մտքի օրենքների ու կատեգորիաների և մտքի պատմության հարաբերության հարց չէ. դա մյուս կողմից մտքի պատմության, այսինքն՝ գիտության ընթացքի և մարդկանց ռեալ կյանքի, տեխնիկայի, պրակտիկ գործունեության, պատմության հարաբերության հարցն է, դա, վերջին հաշվով, աշխարհի իմացման և պրակտիկայի հարաբերակցության հարցն է։ Սա անչափ կարևոր է, և վերոհիշյալ հատորում տրված է դրա դիալեկտիկական-մատերիալիստական լուսաբանումը։ Որտեղի՞ց են գիտության կատեգորիաները. իմացության պատմության արդյունք են։ Բայց իմացության պատմությունը մտքի ինքնածին ֆիլիացիա չէ. այն ընթանում է մարդկանց պրակտիկ պահանջների, պրակտիկ գործունեության հիման վրա։ Այդ պահանջներն իրագործվում են տեխնիկայի զարգացման միջոցով։ Ֆրիդրիխ Էնգելսը նկատել է, թե մի տեխնիկական պահանջ շատ ավելի մեծ չափով կխթանի գիտության զարգացմանը, քան շատ համալսարաններ։ Այստեղից Լենինը դարձյալ մարքսիստների համար մեծագույն ստեղծագործական խնդիր է առաջադրում. «Հեգելի և Մարքսի գործի շարունակությունը պետք է լինի՝ դ ի ա լ ե կ տ ի կ ո ր ե ն մշակել մարդկային մտքի, գիտության ու տեխնիկայի պատմությունը» (էջ 136)։

Հիմնական ու վճռական դրույթը, որ Լենինն անդադրում առաջ է մղում այս կապակցությամբ, դա պրակտիկայի առաջնությունն է իմացության նկատմամբ։ Ճշմարտություն է, որ առաջ գործն է եղել. նախքան խորհելը մարդիկ գործել են, իսկ իմացությունը, աբստրակցիաների, ընդհանրացումների ու մտահղացումների ընդունակությունը հետո է հանդես եկել՝ պրակտիկ փորձի ընթացքում։ «Պրակտիկան բարձր է (տեսական) իմացությունից,— գրում է Լենինը,— որովհետև, այն ունի ոչ միայն համընդհանրության, այլև



անմիջական իրականության արժանիք» (էջ 205)։ Իմացությունը, տեսությունը նրանով էլ հենց տարբերվում է պրակտիկայից, որ այն անմիջական իրականություն չէ, այնտեղ մենք գործ ունենք հասկացությունների, կատեգորիաների, իդեաների, նրանց շարժման, կապակցությունների վերլուծության հետ։ Պրակտիկան (արտադրական պրակտիկան, հասարակական-քաղաքական գործունեությունը, գիտական էքսպերիմենտը) այլ բան է. այստեղ մենք գործ ունենք նյութի ձևերի, բնության, հասարակական կյանքի վրա մարդու առաջացրած նպատակահարմար փոփոխությունների հետ։ Դա անմիջական իրականություն է։ Իմացությունը պրակտիկ փորձի բազմաթիվ կրկնությունների, բազում փաստերի ընդհանրացումն է։ Դիտողություններ անելով Հեգելի «Տրամաբանության գիտություն» գրքի համապատասխան տեղի վերաբերյալ, Լենինն առաջ է քաշում և ընդգծում վիթխարի պրոբլեմ՝ «ՏՐԱՄԱԲԱՆՈՒԹՅԱՆ ԿԱՏԵԳՈՐԻԱՆԵՐԸ ԵՎ ՄԱՐԴԿԱՅԻՆ ՊՐԱԿՏԻԿԱՆ» (էջ 181)։ Մատերիալիստորեն վերամշակելով Հեգելի միտքը՝ Լենինը գրում է. «Պետք է շուռ տալ. մարդու պրակտիկ գործունեությունը միլիարդավոր անգամ պետք է մարդու գիտակցությունը հանգեցներ զանազան տրամաբանական ֆիգուրաների կրկնությանը, որպեսզի այդ ֆիգուրաները կարողանային ստանալ ախիոմաների նշանակություն։ Այս լավ նշիր» (էջ 181—182), կամ՝ «Մարդու պրակտիկան, միլիարդավոր անգամ կրկնվելով, ամրապնդվում է մարդու գիտակցության մեջ տրամաբանության ֆիգուրաներով» (էջ 209)։

Պրակտիկան է որոշում գիտության զարգացման ուղղությունը, խնդիրներ դնում նրա առջև, պրակտիկան է նյութ մատակարարում գիտական օրենքներ բացահայտելու համար, պրակտիկան էլ ստուգում և օգտագործում է այդ օրենքները։ Թեորիան և պրակտիկան միացնելու այս դրույթը մարքսիզմ-լենինիզմի վճռական պահանջն է և ընդգծվում է տվյալ հատորի սկզբից մինչև վերջը։ Լենինն աշխատում է Հեգելի մոտ գտնել այդ հարցի վերաբերյալ ռացիոնալ մտքեր և ամբողջ ուժով ընդգծում է դրանց նշանակությունը։ Թեորիան պրակտիկայի հետ միացնելու, պրակտիկան ու տեխնիկան իմացաբանության մեջ մտցնելու միտքը Լենինը համարում է պատմական մատերիալիզմի սաղմեր Հեգելի մոտ։ Լենինը գրում է, որ Հեգելն ընդհուպ մոտենում է «այն բանին, որ իր պրակտիկայով է մարդն ապացուցում իր իդեաների, հասկացությունների, գիտելիքների, գիտության օբյեկտիվ ճշմարտությունը» (էջ 182)։

«Փիլիսոփայական տետրեր»-ում Լենինը բացահայտում է աշխարհի և նրա օրինաչափությունների արտացոլման բարդ ու հակասական բնույթը, տալիս է մեզ ճշմարտության պրոցեսի (որովհետև ճշմարտությունը պրոցես է) դիալեկտիկան։ Կենդանի հայեցողությունից դեպի աբստրակտ մտածողությունը, այստեղից դեպի պրակտիկան, այս է, ըստ Լենինի, մարդու կողմից աշխարհի իմացման դիալեկտիկական ուղին։ Ծագելով պրակտիկայից, իմացությունը պետք է ծառայի և ծառայում է պրակտիկային։ Միայն այդ ճանապարհով է իմացությունը յուրացնում օբյեկտիվ աշխարհը, դառնում ավելի ու ավելի լրիվ օբյեկտիվ ճշմարտություն։ Իմացությունը աշխարհը վերափոխելու մեծ ուժ է։ Այստեղից՝ մարքսիզմ-լենինիզմի այն պահանջը, թե պետք է գիտելիքը կապել կյանքի հետ։ «Անհրաժեշտ է միացնել իմացությունն ու պրակտիկան», ընդգծում է Լենինը (էջ 208)։ Կոմունիստական պարտիան իր գործունեության հիմքում դրել է հենց այս սկզբունքը. կոմունիզմի կառուց-

ման իր վիթխարի պլանները նա մշակում է մարդկային գիտելիքների ձեռք բերած ամբողջ նվաճումների հիման վրա։ ՍՄԿՊ XXI համագումարը առաջ քաշելով և ստեղծագործաբար լուծելով մեծագույն թեորիական նշանակություն ունեցող պրոբլեմներ, մի անգամ ևս ցուցադրեց մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ ուժը, որն աշխարհի ճանաչման և ռևոլյուցիոն վերափոխման անփոխարինելի զենքն է։ Համագումարի ողջ աշխատանքը, որը ներծծված էր լենինյան մեծ գաղափարներով, ցույց տվեց թեորիան պրակտիկայի հետ կապելու և այն ստեղծագործորեն զարգացնելու նոր, փայլուն օրինակներ։

Դիալեկտիկայի մեջ հիմնականն ու վճռականը Լենինը համարում է հակադրությունների պայքարի ու միասնության օրենքը, Հեգելի ձևակերպմամբ՝ «հակասության սկզբունքը»։ Հակասությունն է ամեն ինչի շարժման ներքին խթանը, դրդապատճառը, իմպուլսը։ Դրա համար դիալեկտիկներն ասում են՝ «զարգացումը հակադրությունների պայքար է»։ Քննադատաբար վերամշակելով և զարգացնելով Հեգելին, Լենինը պահանջում է կյանքի երևույթների, պատմական իրողությունների, գիտական փաստերի, պրակտիկ քաղաքականության հարցերը քննարկելիս և մշակելիս զարգացումը դիտել որպես հակադրությունների պայքարի դրսևորում։

Ամեն ինչ որ կա՝ ապրում, շարժվում, գործում է հակասությունների հետևանքով, հակասությունների առաջացման և դրանց հաղթահարման միջոցով. սա օբյեկտիվ աշխարհի և մարդկային մտածողության շարժման ամենաէական օրենքն է։ Այդ օրենքը Լենինը համարում է դիալեկտիկայի միջուկը, էությունը։ Միասնականի երկատումը և նրա հակասական կողմերի իմացությունը դիալեկտիկայի էությունն է—այսպես է սկսվում Լենինի «Դիալեկտիկայի հարցի շուրջը» հանճարեղ ֆրագմենտը։

ՍՄԿՊ-ն իր ամբողջ պրակտիկ քաղաքականությունն այդ գիտական հիմքի վրա է կառուցում. նա ուշի-ուշով հետևում է սոցիալիզմի շարժման ընթացքում առաջացող հակասություններին, բացահայտում է դրանք, ցույց տալիս դրանց հաղթահարման ուղիները և ապահովում կոմունիզմի առաջընթացը։

Սակայն հակասության սկզբունքով (միջուկով) չի սպառվում մարքսիստական դիալեկտիկայի թեորիական բովանդակությունը. այն օրենքների, տարրերի, կատեգորիաների մի ամբողջ սիստեմ է ներկայացնում։ Հակասության սկզբունքը թափանցում է այդ օրենքների, տարրերի ու կատեգորիաների մեջ. վերջիններս ըստ էության բացահայտում են հակասության օրենքի անսահման խորությունն ու հարստությունը, հանդիսանում են նրա դրսևորման ձևերը, կոնկրետացումն ու լրացումները։ Թվարկելով դիալեկտիկայի մի շարք տարրեր, Լենինը հետևյալ հետևությունն է անում. «Դիալեկտիկան կարելի է հակիրճ սահմանել որպես ուսմունք հակադրությունների միասնության մասին։ Դրանով կըմբռնվի դիալեկտիկայի միջուկը, բայց դա պահանջում է մեկնաբանություններ և զարգացում» (էջ 215)։

Եվ Լենինը հանճարեղորեն մեկնաբանում ու բացահայտում է միջուկի այդ զարգացումը. հակադրությունների պայքարի ու միասնության դրսևորումներ ու լրացումներ են՝ երևույթների փոխադարձ կապն ու անցումները, քանակն ու որակը, էվոլյուցիան ու թռիչքը, բացասման բացասումը, երևույթն ու էությունը, ձևն ու բովանդակությունը, հնարավորությունն ու իրականությունը, անհրաժեշտությունն ու պատահականությունը, անվերջն ու վերջավորը, եզակին ու ընդհանուրը, անհրաժեշտությունն ու ազատությունը, կոնկրետն ու վերացականը, անալիզն ու սինթեզը, ինդուկցիան ու դեդուկցիան և այլն և այլն։ Առաջ քաշելով և ձևակերպելով այս բոլորը, որպես մատերիալիստական դիալեկտիկայի տարրեր, Լենինը տվել է դրանց մշակման մի ամբողջ ծրագիր, ընդգծելով այդ մշակման հսկայական կարևորությունը։ «Փիլիսոփայական տետրերում» տրված են այդ տարրերից շատերի գիտական մշակման ու քննարկման փայլուն օրինակներ, որոնք ունեն վիթխարի թեորիական և պրակտիկ նշանակություն։



***

Վ. Ի. Լենինի «Փիլիսոփայական տետրեր»-ի երկրորդ հիմնական առանցքային հարցը փիլիսոփայության պատմության հարցն է։

Այնտեղ մեծ տեղ գրավող այնպիսի նյութերի վերաբերյալ, ինչպիսիք են՝ Հեգելի «Դասախոսություններ փիլիսոփայության պատմության մասին» գրքի, Արիստոտելի «Մետաֆիզիկայի», Լասսալի «Եփեսացի Հերակլիտ Մթինի փիլիսոփայությունը», Ֆոյերբախի «Լայբնիցի փիլիսոփայության շարադրանքը, վերլուծությունը և քննադատությունը» և մի շարք այլ աշխատությունների Լենինի կազմած կոնսպեկտների ժամանակագրությունը գալիս է ասելու, որ համաշխարհային առաջին պատերազմի նախօրյակին ու նրա ընթացքում Վ. Ի. Լենինը նորից ու նորից անդրադառնում է փիլիսոփայության պատմության հարցերին։

Պարտիական շահը, դասակարգային պայքարի շահերն էին թելադրում Լենինին՝ նորից անդրադառնալու փիլիսոփայության պատմությանը։ Հենց այս հանգամանքով էլ պայմանավորված է այն, որ «Փիլիսոփայական տետրերի» բովանդակության առանցքը փիլիսոփայական պարտիականության մարքսիստական սկզբունքն է։ Սկզբից ևեթ դեն շպրտելով բուրժուական պարտիականության ձևը հանդիսացող օբյեկտիվիզմը, հավատարիմ իր իսկ այն մտքին, թե փիլիսոփայությունը 2000 տարի է ինչ պարտիական է և պարտիական էլ այսօր մնում է, Վ. Ի. Լենինն իր տիտանական ամբողջ հասակով կանգնում է մեր առաջ որպես մեծագույն մարտնչող մատերիալիստ։ Փիլիսոփայության պարտիականության մարքսիստական սկզբունքի դիրքերից նա անհաշտ պայքար է մղում Հեգելի և, առհասարակ, իդեալիստական ամբողջ բանակի դեմ։ Կոնսպեկտավորելով Հեգելի «Դասախոսություններ...»-ը, Լենինն ընդգծում է նրա ընդհանուր տենդենցը՝ ամեն ինչ հարմարեցնել իդեալիզմին. Դեմոկրիտի, Էպիկուրի, Արիստոտելի և ուրիշների ուսմունքների առնչությամբ խիստ հանդիմանում է Հեգելին։ Լենինը բազմիցս նշում է, որ Հեգելը զրպարտում է մատերիալիզմը, Արիստոտելի մատերիալիստական ամեն մի մտքի համար, ամեն մի քայլափոխում կռվելով Հեգելի դեմ։

Մյուս կողմից Լենինը մեկիկ-մեկիկ ընդգծում, հատուկ ուշադրության է արժանացնում փիլիսոփայության պատմության մասին Հեգելի հայտնած այն մտքերը, որոնք հաստատում են մատերիալիզմը՝ ասելով թե «խելացի իդեալիզմը ավելի մոտիկ է խելացի մատերիալիզմին, քան հիմար մատերիալիզմը» (էջ 271)։ Փիլիսոփայության պարտիականության մարքսիստական սկզբունքի դիրքերից տալով իդեոլոգիական պայքարի հիմնական սկզբունքը, Վ. Ի. Լենինը գրում է. «Երբ մեկ իդեալիստ քննադատում է մեկ ուրիշ իդեալիս-

տի իդեալիզմի հիմքերը, դրանից միշտ օգտվում է մատերիալիզմը» (էջ 278)։ Ինքը Լենինը այս սկզբունքի կիրառման հիանալի օրինակներ է տալիս։ Նա հրճվում է, երբ Հեգելը սուբյեկտիվ իդեալիզմը քննադատելով, անվանում է այն «հիմար իդեալիզմ», երբ ջրի երես է հանում կանտյան փիլիսոփայության ամեն տեսակի սխալները։ Նույնպիսի հրճվանքով է համակվում նա Պլատոնի իդեաների արիստոտելյան քննադատության կապակցությամբ։

Լենինը փիլիսոփայության պատմության այս կամ այն հարցը շոշափելիս, դրանք անմիջապես կապում է օրվա փիլիսոփայական հրատապ հարցերի հետ։

Հեգելի «Դասախոսություններ...»-ի կոնսպեկտում Լենինը քննադատում է Մախին ու ընկերությանը, Վ. Չերնովին և ուրիշների։

Պարտիականության դիրքերից Վ. Ի. Լենինը հակադրվում է փիլիսոփայության պատմության հեգելյան և, առհասարակ, իդեալիստական ըմբռնմանը։ Փիլիսոփայության պատմությունը դիտելով որպես իրական կյանքից կտրված մի պրոցես, որպես ինքնազարգացող ոգու պատմություն, Հեգելը նշում է, որ «փիլիսոփայության զարգացումը պատմության մեջ պետք է համապատասխանի տրամաբանական փիլիսոփայության զարգացմանը», այլ կերպ ասած, իրականը պետք է ենթարկվի տրամաբանականին։ Քաղվածորեն բերելով Հեգելի այս թեզը, Լենինը հակադրում է դրան այն միտքը, որ փիլիսոփայության պատմությունը ոչ այլ ինչ է, քան իրական, նյութական կյանքի, մարդկության իրական պատմության մտային վերարտադրություն։ Նա հենց այդտեղ էլ դիտում է, որ «իրական պատմությունն է խարիսխը, հիմքը, գոյը, որին հետևից է գնում գիտակցությունը» (էջ 261)։

Ելնելով հենց այս ըմբռնումից, Լենինը լուծում է փիլիսոփայության պատմության պերիոդիզացիայի հարցը։

Մոտենալով փիլիսոփայության պատմության պերիոդիզացիայի հարցին տրամաբանականի տեսանկյունից, Լենինը ընդգծում է, որ ժամանակագրությունն այստեղ պարտադիր չէ, որ փիլիսոփայական մտքի դիալեկտիկական զարգացման մեջ մենք տեսնում ենք «շրջաններ», որոնցից յուրաքանչյուրը մարդկային իմացության զարգացման ընդհանուր սպիրալի վրա պատմականորեն անհրաժեշտ որոշ տեղ է գրավում։ Ընդգծելով Հեգելի գրքում այդ պատմության համեմատումը շրջանի հետ և մեջ բերելով Հեգելի այն միտքը, թե՝ «այդ շրջանը եզրերում ունի բյուր բազում շրջաններ», Լենինը գրում է. «Շատ խորը ճիշտ համեմատություն է!! Մտքի յուրաքանչյուր երանգ-շրջան առհասարակ մարդկային մտքի զարգացման մեծ շրջանի (սպիրալի) վրա» (էջ 243)։ Այս մեկնակետից ելնելով՝ «Դիալեկտիկայի հարցի շուրջը» ֆրագմենտում նա ուրվագծորեն նշում է հետևյալ «շրջանները».

««Շրջանները» փիլիսոփայության մեջ (պարտադի՞ր է արդյոք ժամանակագրությունը անձերի նկատմամբ։ Ո՛չ!)

Անտիկը՝ Դեմոկրիտից մինչև Պլատոն և Հերակլիտի դիալեկտիկան։

Վերածնունդ՝ Դեկարտը Գասսենդիի (Սպինոզայի՞) նկատմամբ։

Նորը՝ Հոլբախ—Հեգել (Բերկլիի, Յումի, Կանտի միջոցով)։

Հեգել—Ֆոյերբախ—Մարքս» (էջ 360)։

Աներկբայելի է, որ այս հարցը շատ մեծ է և սպառել այս մի հոդվածում ուղղակի անհնարին է։ Ավելացնենք միայն, որ փիլիսոփայական մտքի զար-



գացման դիալեկտիկան նշված «շրջաններով» չի ավարտվում։ Հայտնի է, որ ռուսական գիտական միտքը ընդհանուր փիլիսոփայական մտքի զարգացման պատմության մեջ բացեց նոր «շրջան»՝ լենինյան «շրջանը», որի մասին են խոսում նաև տվյալ դեպքում մեզ հետաքրքրող «Փիլիսոփայական տետրեր»-ը։ Տրամաբանականի տեսանկյունից բացի, Վ. Ի. Լենինը փիլիսոփայության պատմության պերիոդիզացիայի հարցին մոտեցել է նաև պատմականի տեսանկյունից։ Այստեղ Լենինի համար անհերքելի էր այն, որ այդ պատմության շրջանները համընկնում են հասարակության զարգացման հիմնական շրջանների՝ ստրկատիրության, ֆեոդալիզմի, կապիտալիզմի շրջանների հետ։ Ընդ որում նա այդ պատմությունը սերտորեն կապում էր ռևոլյուցիոն շարժման զարգացման պատմության հետ ընդհանրապես և յուրաքանչյուր էտապի շրջանակների մեջ, մասնավորապես։ Տալով փիլիսոփայության պատմության իր ըմբռնումը, Վ. Ի. Լենինը նշում է, որ այն, ըստ էության, «իմացության պատմություն է առհասարակ» (էջ 350), որ այն ընդգրկում է մարդկային «գիտանքի ամբողջ բնագավառը» (նույն տեղ)։ Այս առումով, փիլիսոփայության պատմությունը մտքի, իմացության պատմության դիալեկտիկան է։

«Իմացությունը,— գրում է Լենինը,— մտածողության հավերժ, անվերջ մոտեցումն է օբյեկտին։ Բնության արտացոլումը մարդու մտքի մեջ պետք է հասկանալ ոչ «մեռած», ոչ «աբստրակտ», ոչ առանց շարժման, ոչ առանց հակասությունների, այլ շարժման, հակասությունների ծագման ու դրանց լուծման հավերժական պրոցեսում» (էջ 186)։ Այսպիսին է անհատական իմացության դիալեկտիկան։ Այդպիսին է, իր հիմնական, գլխավոր գծերով նաև մարդկային մտքի դիալեկտիկան. ապա ուրեմն, այդպիսին է նաև փիլիսոփայության պատմության դիալեկտիկան։ Գտնելով, որ այդ դիալեկտիկական շարժման ներքին աղբյուրը մատերիալիզմի պայքարն է իդեալիզմի դեմ, և որ փիլիսոփայության պատմությունը այդ տեսակետից ոչ այլ ինչ է, քան այդ պայքարի պատմություն, Վ. Ի. Լենինը հետապնդում է այն միտքը, թե ինչպես այդ պայքարում նախապատրաստվեց ու ծագեց գիտական՝ մարքսիստական փիլիսոփայությունը։

Այստեղից էլ այն հարցը, թե ինչ վերաբերմունք է սովորեցնում մեզ Լենինը դեպի պատմությունը, դեպի անցյալի ժառանգությունն առհասարակ և փիլիսոփայական ժառանգությունը, մասնավորապես։ Անցյալի փիլիսոփայական ուսմունքների նկատմամբ Լենինը պահանջում է նախ և առաջ պատմական մոտեցում։ Նկատելով Հեգելի մոտ այդպիսի մոտեցում, Լենինը գրում է. «Հիանալի է փիլիսոփայության պատմության մեջ խիստ պատմականության համար՝ որպեսզի հներին չվերագրվի նրանց գաղափարների այնպիսի մի «զարգացում», որը մեզ համար հասկանալի է, բայց հների մոտ իրականում դեռ բացակայում էր» (էջ 244)։ Ուրեմն, պատմությանն, ասել է թե նաև փիլիսոփայության պատմության երևույթներին պետք է մոտենալ կոնկրետ-պատմականորեն. նրա վրա դրսից, խորթ որևէ բան ավելացնել կամ, ընդհակառակը, նրա միջից որևէ բան դուրս գցել չի կարելի։ Պատմությունը պետք է վերցնել այնպես, ինչպես այն եղել է։ Պատմականի իմացման խնդիրն է՝ խորամուխ լինել նրա մեջ, մակերեսի վրա բազմապիսի անցքերի պատահական թվացող ընթացքի մեջ տեսնել նրանց դիալեկտիկան, փոխադրվել գործի բուն էության մեջ, ըմբռնել այն իր անհրաժեշտության մեջ և պատմական անհրաժեշտության իմացության վրա հենված, գլխավորել

կյանքի պրոցեսը, մղել այն դեպի ապագան։ Լենինի համար անժխտելի է այն, որ պատմական պրոցեսում, ուրեմն և փիլիսոփայության պատմության մեջ, նախընթաց էտապի որևէ նվաճում չի անէանում. այն պահպանվելով, կուտակվում է ու դառնում խարիսխ նոր նվաճումներ ձեռք բերելու համար։ Ուստի և պատմական զարգացման տեմպերը գնալով արագանում են։ Նման ըմբռնումն իր մեջ պարունակում է երկմիասնական խնդիր՝ ա) իմանալ, հասկանալ անցյալն իր անհրաժեշտության, օրինաչափության մեջ, և բ) քննադատորեն յուրացնելով, նրանից վերցնելով ողջ արժեքավորը, այն մղել առաջ՝ զարգացնել։ Մարքսիզմն այդ խնդիրը, ինչպես տարբեր առիթներով նշում է Լենինը, լուծել է փայլուն կերպով։ Այդ խնդիրը դիտելով, մասնավորապես, Հեգելի և Մարքսի հարաբերակցության հարցի տեսանկյունից, Լենինը ասում է, որ Մարքսը վերցրեց Հեգելից նրա մոտ եղած ողջ արժեքավորը և շարժեց այն առաջ (էջ 315)։ Լենինը քաջատեղյակ էր, որ Մարքսին, մարքսիզմին հաջողվեց նախամարքսյան մատերիալիզմի ուժերից վեր այդ խնդիրն էլ լուծել, որովհետև փիլիսոփայության և գիտության պատմության երևույթներին Մարքսը մոտեցել է բազմակողմանիորեն։

«Շեմքից» քննադատությունը խորթ է եղել և խորթ է մարքսիզմ-լենինիզմին։ Այդ է վկայում նաև ներկա հատորը։

Լենինի դիտողությունները, մեկնաբանությունները, սահմանումները ո՛չ միայն մեզ, այլև ժողովրդա-դեմոկրատական երկրների փիլիսոփայության, կապիտալիստական երկրների կոմունիստների իդեոլոգիական պայքարի ասպարեզում աշխատողների համար ունեն կարևորագույն նշանակություն։ Դրանք, այդ դիտողությունները հատուկ կարևորություն ունեն նաև այն պայքարում, որ այսօր մղվում է ընդդեմ ժամանակակից ռևիզիոնիզմի։

Վերն արդեն ասվեց, որ լենինյան ավանդներից մեկն էլ բնագիտության փիլիսոփայական պրոբլեմների մշակումն է։ «Փիլիսոփայական տետրեր»-ում տրված են այդ կարևորագույն պրոբլեմի լուծման ղեկավար սկզբունքները, ուղղությունը, կոնկրետ օրինակները։ Բնագիտության պատմության և ժամանակակից պրոբլեմներին Լենինը, Մարքսի և Էնգելսի օրինակով, հետևում էր ոչ թե դեպքից դեպք, պատահաբար, այլ սիստեմատիկ ու հետևողականորեն։ Ընդ որում, Լենինին բնագիտությունը հետաքրքրում էր իմացաբանական արմատական հարցերի մարքսիստական լուսաբանման ասպեկտով։

Արդեն «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ»-ում Լենինը հատուկ գլուխ նվիրեց այդ հարցին, հանճարեղորեն ցույց տալով, թե ինչ ուղղությամբ պետք է լուծվի այդ խնդիրը։ Այդտեղ ամբողջ ուժով բացատրված և ընդգծված է, որ մարքսիստները՝ 1) պետք է հետևեն բնագիտության ընթացքին, խոշոր հայտնագործություններին և բացահայտեն փիլիսոփայական հոսանքների կապը ֆիզիկայում, քիմիայում, բիոլոգիայում, ֆիզիոլոգիայում, ամբողջ բնագիտության մեջ տեղի ունեցող պրոցեսների հետ, 2) վերլուծեն այն իմացաբանական եզրակացությունները, որ արվում են բնագիտության նորանոր տվյալներից, 3) մերկացնեն այդ տվյալների իդեալիստական կեղծումները և ցույց տան, որ հասարակության պատմության նման բնությունն էլ ենթակա է նույն դիալեկտիկական օրենքներին։ Խուսափել այս հարցերից, ասում է Լենինը, նշանակում է ծաղրի ենթարկել դիալեկտիկական մատերիալիզմի ոգին և էությունը։ «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ»-ի մեջ «Բնագիտության նորագույն հեղաշրջումը և փիլիսոփայական իդեալիզմը» գլուխը



վկայում է, որ հենց այդ ուղղություններով է աշխատել լենինյան միտքը։ Այնտեղ վեր են հանված բնագիտության մեջ 19-րդ դարի վերջերին և 20-րդ դարի առաջին տասնամյակում կատարված հեղաշրջման էությունն ու հետագա տենդենցները, ցույց է տրված ֆիզիկայի նոր տվյալների ֆալսիֆիկացիան մախիստների և այլ ռեակցիոներների կողմից, բացահայտված են ֆիզիկայի ճգնաժամի էությունն ու արմատները (իմացաբանական և սոցիալական), մատնանշված են այդ ճգնաժամից դուրս գալու ուղիները։

Որ Լենինը հետագայում էլ շարունակել է անդուլ աշխատել այդ ուղղությամբ, այդ մասին վկայում են ահա «Փիլիսոփայական տետրեր»-ը, ինչպես և 1922 թվականին գրած նրա «Մարտնչող մատերիալիզմի նշանակության մասին» ծրագրային հոդվածը։ «Փիլիսոփայական տետրեր»-ից իմանում ենք, որ Լենինն ուշի-ուշով հետևել է բնագիտության բնագավառում լույս տեսնող ամենավերջին շատ թե քիչ նշանակալից գրականությանը, ծանոթացել, քննադատական դիտողություններ է արել կամ կոնսպեկտավորել է բազմաթիվ գրքեր։

Լենինը նոր դարագլուխ բացեց բնագիտության փիլիսոփայական պրոբլեմների մարքսիստական լուսաբանման պատմության մեջ, հանճարեղ կանխատեսություններ արեց այդ ուղղությամբ։ Վերջին տասնամյակների բնագիտության զարգացման ընթացքը նորից հաստատեց այդ կանխատեսությունների ճշտությունը։ Բնագիտության փիլիսոփայական հարցերի սիստեմատիկ ու բազմակողմանի մշակումը, ինչպես ապացուցեց այդ հարցի առթիվ 1958 թվականի հոկտեմբերին Մոսկվայում կայացած համամիութենական խորհրդակցությունը, մնում է մեր փիլիսոփայական ճակատի կարևորագույն բնագավառներից մեկը։ Այդ բխում է նաև ՍՄԿԿ XXI պատմական համագումարի նյութերից ու որոշումներից։

Այս թռուցիկ ակնարկից երևում է, թե ինչ անգնահատելի գանձ է մտցրել իր «Փիլիսոփայական տետրեր»-ով Վ. Ի. Լենինը մարքսիստական փիլիսոփայության, փիլիսոփայության պատմության, բնագիտության փիլիսոփայական հարցերի մշակման գործում։

«Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ» անմահ գործի հետ միասին, «Փիլիսոփայական տետրեր»-ը ներկայացնում են մարքսիզմ-լենինիզմի բարձրագույն սկզբունքի՝ փիլիսոփայության պարտիականության հետևողական կիրառման անգերազանց օրինակ։ Այդ աշխատությունները հզոր զենք են իմպերիալիզմի ռեակցիոն իդեոլոգիայի և ռևիզիոնիզմի դեմ պայքարելու, կոմունիստներին, բոլոր պրոգրեսիվ ուժերին իդեապես զինելու, կոմունիզմի վեհ գաղափարները պաշտպանելու, տարածելու և զարգացնելու մեծ գործի համար։

# ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՆՈՐ ԷՏԱՊԸ

Խ. ԵՐԻՑՅԱՆ

Սովետական Միության Կոմունիստական պարտիան իր ամբողջ գործունեության ընթացքում անշեղորեն առաջնորդվում է մարքսիզմ-լենինիզմը ստեղծագործորեն զարգացնելու և այն պրակտիկայում ճիշտ կիրառելու սկզբունքով։ Վերջին տարիներին, հատկապես ՍՄԿՊ XX համագումարից հետո, դեպի կոմունիզմ մեր երկրի հետագա առաջընթացի խոշորագույն խնդիրների լուծման գործում ավելի ցայտուն դրսևորվեց մեր պարտիայի գործունեության լենինյան ստեղծագործական բնույթը։ Բացահայտելով անհատի պաշտամունքի պատճառները և հաղթահարելով նրա վնասակար հետևանքները, գաղափարապես ջախջախելով և դեն շպրտելով Մալենկովի, Կագանովիչի, Մոլոտովի, Բուլգանինի և Շեպիլովի հակապարտիական խմբակը, Կոմունիստական պարտիան նոր բարձրության հասցրեց մարքս-լենինյան ուսմունքը, առաջ քաշեց և լուծեց մեր երկրի զարգացման թեորիական և գործնական խոշոր նշանակություն ունեցող մի շարք արմատական հարցեր։

Կոմունիստական պարտիայի XXI համագումարը նշանավորեց մի նոր քայլ ևս մարքս-լենինյան թեորիայի ստեղծագործական զարգացման բնագավառում։ Ընկ. Խրուշչովն իր զեկուցման մեջ ամփոփելով պարտիայի կատարած վիթխարի աշխատանքը XX համագումարից հետո ընկած ժամանակաշրջանում, խոր վերլուծության ենթարկելով կոմունիստական հասարակարգի կառուցման փորձը, մի շարք կարևոր թեորիական և պրակտիկ հետևություններ արեց կոմունիզմի ծավալուն կառուցման հարցերի վերաբերյալ, որոնք նոր ուժով լուսավորեցին սոցիալիզմ, կոմունիզմ կառուցող երկրների ուղին։

⁂

Մարդկության դարավոր երազանքները սոցիալիզմի մասին իրականացան այն ժամանակ, երբ մեր երկրում տապալվեց շահագործողների ծանր լուծը և հաստատվեց պրոլետարիատի դիկտատուրա։ Պատմության մեջ առաջին անգամ արտադրողական ուժերը գործադրվեցին միլիոնավոր, հարյուր միլիոնավոր աշխատավորների բարօրության համար։

Սոցիալիստական շինարարության տարիներին տեղի ունեցան արմատական փոփոխություններ երկրի սոցիալ-տնտեսական և քաղաքական կյանքում։ Երկրի ինդուստրացման, կոլեկտիվացման և կուլտուրական ռևոլյուցիայի լենինյան պլանի իրագործման շնորհիվ սոցիալիստական արտադրահարաբերությունները լրիվին հաղթանակ տարան կապիտալիստական արտադրահարաբերությունների նկատմամբ։

Արտադրողական ուժերի սեփականության տիրապետող ձևը դարձավ սոցիալիստական սեփականությունը։ Արտադրողական ուժերի և արտադրահարաբերությունների պարտադիր համապատասխանության օրենքը ստացավ գործողության լայն ասպարեզ, որի շնորհիվ արտադրողական ուժերը սկսեցին զարգանալ էլ ավելի արագ տեմպերով։



Պատմական կարճ ժամանակամիջոցում, մեր երկիրը, որը 50—100 տարով ետ էր առաջավոր կապիտալիստական երկրներից, տնտեսության զարգացման այնպիսի վիթխարի թռիչք կատարեց, որ ոչ միայն հասավ, այլև գերազանցեց նրանցից շատերին, դարձավ աշխարհում առաջավոր ինդուստրիալ հզոր տերություն։ 1958 թվականին ՍՍՌՄ-ում արդյունաբերության համախառն արտադրանքը 1913 թվականի համեմատությամբ ավելացավ 36 անգամ, ըստ որում, արտադրության միջոցների արտադրությունն աճեց 83 անգամ։

Սոցիալիստական արտադրության, գիտության և կուլտուրայի բուռն զարգացման հիման վրա հնարավոր եղավ բաց թողնել երկրի արհեստական արբանյակներ, այնուհետև տիեզերական հրթիռ, որը միջմոլորակային թռիչքների դարաշրջանի սկիզբ դրեց։

Արտադրողական ուժերի զարգացման մեր տեմպերն աննախընթաց են պատմության մեջ։ Եվ դա լրիվին օրինաչափ է. միայն սոցիալիստական ռևոլյուցիան է, որ արտադրողական ուժերի անկաշկանդ զարգացման ուղի է հարթում։ Շնորհիվ այն բանի, որ արտադրության սոցիալիստական եղանակի օրոք նոր ձևով է կազմավորվում հարյուր միլիոնավոր մարդկանց կյանքը, արագաբար կատարելագործվում են նրանց տնտեսական հարաբերությունները։ Մարքսիզմ-լենինիզմն ուսուցանում է և պատմականորեն ապացուցված է, որ միայն սոցիալիզմի, կոմունիզմի ժամանակ է ծավալվում հասարակության գլխավոր ուժի՝ աշխատավորության ստեղծագործական վիթխարի եռանդը։

Սոցիալիստական շինարարության հաջողությունները ՍՍՌՄ-ում և ժողովրդական դեմոկրատիայի երկրներում՝ հողմացրիվ արին կապիտալիստական «դրախտի», արտադրության կապիտալիստական եղանակի «հավիտենականության» մասին բուրժուական գաղափարախոսների հորինած առասպելները։ Արդի պայմաններում, երբ ՍՍՌՄ-ում սոցիալիզմը հաղթանակել է լրիվին և վերջնականապես, երբ ստեղծվել է սոցիալիզմի համաշխարհային սիստեմ, ինչպիսի՜ ծիծաղելի վիճակի մեջ են ընկնում բուրժուազիայի գաղափարախոսները, որոնք հանդես են գալիս նոր առասպելներով, որ իբր թե արդի կապիտալիզմը «ժողովրդական է», որպես թե կապիտալիստական հասարակարգում այլևս չկան անտագոնիստական հակասություններ, տիրում է դասակարգային շահերի ներդաշնակություն։ Ջառամյալ կապիտալիզմի «հրաշալիքները» փառաբանելու բոլոր ճիգերը դատապարտված են անհաջողության։ Այժմ երկրագնդի միլիոնավոր աշխատավոր մարդիկ իրենց սեփական փորձով համոզվում են, որ կապիտալիզմը չարիք է իրենց համար։

Սոցիալիստական շինարարության հաջողությունները մերկացրին բուրժուական գաղափարախոսների նաև այն առասպելը, որ իբր թե ժողովրդական մասսաներն անընդունակ են պետություն կառավարելու։ Հազիվ թե անհրաժեշտություն կա ապացուցելու, որ աշխատավորների հասցեին այդ զրպարտությունները զուրկ են որևէ հիմքից։ Փաստերն իրենք են խոսում իրենց մասին։ ՍՍՌՄ-ի բանվոր դասակարգը և աշխատավոր գյուղացիությու-

նը ո՛չ միայն ոչնչացրին հին, փտած հասարակարգը, այլև ստեղծեցին պետական ու հասարակական նոր, սոցիալիստական սիստեմ, ձեռք բերին համաշխարհային պատմական մեծ հաղթանակ։ ՍՄԿԿ XXI համագումարում ընկ. Խրուշչովը Կոմունիստական պարտիայի և սովետական ժողովրդի անունից ի լուր ամբողջ աշխարհի հայտարարեց, որ այժմ աշխարհում չկան այնպիսի ուժեր, որոնք կարողանան մեր երկրում վերականգնել կապիտալիզմը, որ սոցիալիզմը հաղթանակել է ո՛չ միայն լրիվին, այլև վերջնականապես։

* * *

Գիտական կոմունիզմի հիմնադիրները, ուսումնասիրելով մարդկային հասարակության զարգացման օբյեկտիվ օրենքները, եկան այն եզրակացության, որ կապիտալիստական հասարակարգին, որի խորտակումը անխուսափելի է, հաջորդելու է կոմունիստական հասարակարգը։ Նա իր զարգացման ընթացքում անցնելու է երկու ստադիա, երկու փուլ. առաջին, կամ ստորին փուլը կոչվում է սոցիալիզմ, իսկ երկրորդը՝ կոմունիզմ։ Սոցիալիզմի և կոմունիզմի նյութական հիմքը ընդհանուր է, այն արտադրական միջոցների սոցիալիստական սեփականությունն է։ Ինչպես սոցիալիստական, այնպես էլ կոմունիստական արտադրաեղանակի հիմնական նպատակը նույնն է՝ բավարարել հասարակության բոլոր անդամների անընդհատ աճող նյութական և կուլտուրական պահանջմունքները, սակայն այն տարբերությամբ, որ կոմունիզմի ժամանակ դրանք կբավարարվեն լրիվին։

Չնայած սոցիալիզմի և կոմունիզմի նյութական հիմքի ընդհանրությանը, արտադրության նպատակների նույնությանը, նրանց մեջ կա էական տարբերություն։ Հանդիսանալով կոմունիստական հասարակական ֆորմացիայի երկու ստադիաներ, դրանք միաժամանակ տվյալ հասարակական ֆորմացիայի տնտեսական և քաղաքական հասունության զարգացման երկու տարբեր ժամանակաշրջաններ են։

Արտադրության սոցիալիստական եղանակը, սոցիալիստական արտադրահարաբերությունները բացառում են մարդու շահագործումը մարդու կողմից, քանի որ արտադրամիջոցները՝ գործարանները, մեքենաները, հողը և այլն հանրային սեփականություն են, իրականացվում են «ով չի աշխատում, նա չպետք է ուտի», «աշխատանքի հավասար քանակության համար պրոդուկտի հավասար քանակություն» սոցիալիստական սկզբունքները։ Արտադրության կապիտալիստական եղանակի ոչնչացմամբ և սոցիալիստական տնտեսության հաստատմամբ հետզհետե ոչնչանում է քաղաքի և գյուղի, ֆիզիկական և մտավոր աշխատանքի միջև եղած հակադրությունը, ոչնչանում է կապիտալի օրոք ծայրահեղ սրության հասած փոխադարձ թշնամանքը տարբեր ազգերի և ժողովուրդների միջև, հասարակությունից անհետանում է դասակարգային անտագոնիզմը և ստեղծվում է ժողովրդի բարոյա-քաղաքական միասնություն։ Այլ կերպ ասած, վերանում են այն բոլոր պայմանները, որոնք անցյալում հնարավորություն էին տալիս մի բուռ կապիտալիստների՝ ճզմելու, կեղեքելու ժողովրդական մասսաներին և վայելելու նրանց ստեղծած բարիքները։

Վերացնելով գյուղի և քաղաքի, մտավոր և ֆիզիկական աշխատանքների հակադրությունը, սոցիալիզմը միաժամանակ հող է նախապատրաստում,



որպեսզի աստիճանաբար վերացվեն նաև նրանց միջև եղած էական տարբերությունները։

Եթե սոցիալիզմը ծնունդ է առնում կապիտալիստական հասարակության կործանումից, երկարատև երկունքից հետո. ապա կոմունիզմը զարգանում է արդեն իր սեփական հիմքի վրա, այսինքն՝ սոցիալիզմի բազայի վրա։

Չնայած նոր զարգացող հասարակարգը վճռականորեն դեն է շպրտում հինը և ստեղծում նորը, այնուամենայնիվ նորի հետ միասին շարունակում են գոյություն ունենալ կապիտալիզմի առանձին, նոր հասարակարգին խորթ երևույթներ, մնացուկներ։ Այս առումով Մարքսը նշում է, որ կապիտալիզմին անմիջապես հաջորդող կոմունիստական հասարակության առաջին փուլը՝ սոցիալիզմը, «բոլոր տեսակետներից — թե՛ տնտեսական, թե՛ բարոյական, թե՛ մտավոր — դեռ կրում է իր վրա այն հին հասարակության դրոշմը, որի ընդերքից նա դուրս է եկել» (Կ. Մարքս, «Գոթայի ծրագրի քննադատությունը», 1948 թ., էջ 17)։

Իր առաջին փուլում կոմունիզմը դեռ չի կարող տնտեսապես լրիվին հասուն լինել, այն դեռևս չի ստեղծել արտադրական միջոցների այնպիսի մակարդակ, նյութական բարիքների այնպիսի առատություն, որը հնարավորություն տա լրիվին բավարարելու հասարակության բոլոր անդամների պահանջմունքները։ Սոցիալիզմի ժամանակ նյութական բարիքները հասարակության բոլոր անդամների միջև բաշխվում են յուրաքանչյուրին ըստ իր ունակությունների, յուրաքանչյուրին ըստ իր աշխատանքի սկզբունքով։ Դա նշանակում է՝ հասարակության ամեն մի անդամ, կատարելով հասարակականորեն անհրաժեշտ աշխատանքի մի որոշ մասը, պետք է հասարակությունից ստանա միայն ըստ իր աշխատանքի քանակի և որակի։

Սոցիալիզմի, ինչպես և կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում պետք է կիրառվի բոլոր աշխատողների նյութական շահագրգռվածության սկզբունքը, որն ստուգված է սոցիալիստական շինարարության ամբողջ փորձով։ Այն նպաստել է սոցիալիզմին և կնպաստի կոմունիստական շինարարության գործին։ Ըստ աշխատանքի վարձատրությունը կոմունիստական շինարարության կարևոր պայմանն է։ Նյութական բարիքների բաշխման հավասարարական սկզբունքը կհանգեցներ կուտակված միջոցների սպառման և վնաս կհասցներ կոմունիզմի կառուցմանը։ Ըստ պահանջի սկզբունքին անցնելու համար սոցիալիզմի ժամանակ ո՛չ միայն չկան անհրաժեշտ նյութական պայմաններ, այլև գոյություն ունի էական տարբերություն մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև, մարդիկ ունեն տարբեր որակավորում, ձիրքեր և աշխատելու ունակություն, նրանք հավասար վարձատրության դեպքում անհավասար եկամուտներ են ունենում։ Բացի այդ, հասարակության անդամները դեռ այն աստիճան չեն վարժվել, այնքան չեն նախապատրաստվել, որ կարողանան պահպանել կոմունիզմի համակեցության հիմնական կանոնները։ Հասարակության ոչ բոլոր անդամներն են, որ կոմունիստական վերաբերմունք ունեն դեպի աշխատանքը. ոմանք ձգտում են ապրել հասարակության հաշվին, առանց քրտինք թափելու, ոմանք էլ՝ քիչ աշխատել, բայց որքան կարելի է շատ բարիքներ պոկել հասարակությունից։

Հասարակությունը սոցիալիզմի օրոք չի կարող աշխատանքի չափի և սպառման չափի, նյութական բարիքների բաշխման գործը թողնել առանց հսկողության։ Վ. Ի. Լենինը քննադատելով սոցիալիզմի վերաբերյալ ոչ գի-

տական, վուլգար պատկերացումները, գրում է. «Միայն այն ժամանակ, երբ չկա կոմունիզմի «բարձրագույն» փուլը, սոցիալիստներն ամենախիստ վերահսկողություն են պահանջում հասարակության և պետության կողմից աշխատանքի չափի ու սպառման չափի վրա...» (Երկեր, հ. 25, էջ 611—612)։

Ըստ աշխատանքի բաշխման այժմ մեզ մոտ կիրառվող սկզբունքը լիովին ապահովում է մարդկանց նյութական շահագրգռվածությունը և աշխատանքի բարձր արդյունավետությունը։ Այն այսուհետև էլ կխթանի արտադրամիջոցների հետագա աճը, մարդկանց կդաստիարակի աշխատանքային բարձր կարգապահության ոգով։ Աշխատանքի չափի և սպառման չափի նկատմամբ վերահսկողության անհրաժեշտությունը կոմունիզմի ժամանակ կվերանա։ «Հասարակության անդամների միջև,— ասում է ընկ. Ն. Ս. Խրուշչովը,— պրոդուկտների բաշխումը կարգավորելու անհրաժեշտությունը կվերանա միմիայն կոմունիզմի օրոք, երբ արտադրողական ուժերն այնքան կզարգանան, որ ձեռք կբերվի սպառման համար անհրաժեշտ բոլոր մթերքների առատություն, երբ բոլոր մարդիկ կամավոր կերպով և նյութական բարիքների ստացման չափից անկախ կաշխատեն իրենց ընդունակությունների ամբողջ ուժով, գիտակցելով, որ դա անհրաժեշտ է հասարակության համար»։

Կոմունիզմն ամենակազմակերպված, ամենազարգացած հասարակական ֆորմացիան է, ուր կիրառվում է «յուրաքանչյուրից ըստ իր ունակությունների, յուրաքանչյուրին ըստ իր պահանջմունքների» ամենաարդարացի սկզբունքը, որը լիովին համապատասխանում է նրա տնտեսական և կուլտուրական հասունությանը, երբ առատորեն կհոսեն հասարակական հարստության բոլոր աղբյուրները։

Սոցիալիզմի և կոմունիզմի միջև գոյություն ունի տարբերություն ո՛չ միայն տնտեսական հասունության, այլև քաղաքական հասունության տեսակետից։ Կոմունիստական շինարարության ընթացքում գնալով զարգանում է սոցիալիստական դեմոկրատիան, ավելի լայն մասսաներ են ընդգրկվում պետական կառավարման մեջ։ Երբ կոմունիզմը լիակատար հաղթանակի ամբողջ աշխարհում, կվերանա պետական իշխանության միջամտության անհրաժեշտությունը հասարակական հարաբերություններին, կառավարման ֆունկցիաները կկորցնեն իրենց քաղաքական բնույթը և կվերածվեն հասարակության գործերի անմիջական ժողովրդական կառավարման։ Անհրաժեշտ է նշել, որ սովետական պետության աստիճանական մահացումը տեղի կունենա ոչ թե նրա թուլացման, այլ հետագա ամրապնդման, սոցիալիստական դեմոկրատիայի առավել ընդլայնման ու հետագա զարգացման միջոցով։

Սակայն որքան էլ սոցիալիզմը և կոմունիզմը տարբերվեն միմյանցից, նրանց միջև չկա ինչ-որ պատնեշ։ Մարքսիստները սոցիալիզմին երբեք չեն նայել որպես մի ինչ-որ վերջնական, ավարտված հասարակական գոյաձևի. կոմունիզմը աճում է սոցիալիզմից, սոցիալիզմի օրինաչափ զարգացումը տրամաբանորեն հանգեցնում է կոմունիզմի վերջնական հաղթանակին։

Վ. Ի. Լենինը նշելով, որ սոցիալիզմը ինչ-որ մեռած, քարացած, մի անգամ ընդմիշտ տրված բան չէ, գրում է. «...միմիայն սոցիալիզմից է սկսվելու արագ, իրական, իսկապես մասսայական, բնակչության մեծամասնության, ապա նաև ամբողջ բնակչության մասնակցությամբ տեղի ունեցող առաջընթաց շարժումը հասարակական ու անձնական կյանքի բոլոր ասպարեզներում» (Երկեր, հ. 25, էջ 615)։ Սոցիալիզմից կոմունիզմին անցնելը իրա-



գործվում է անընդհատ, որը չի կարելի պատկերացնել որպես ինչ-որ դանդաղ շարժում։ Դա ձեռք կբերվի ոչ թե մեկ ակտով, այլ հետևողականորեն, նյութա-արտադրական պայմանների զարգացման համեմատ։ Սոցիալիստական հասարակարգում արդեն ծնունդ են առնում և զարգանում կոմունիզմի ծիլերը, որոնք պատմական կարճ ժամանակաշրջանում տալիս են նոր որակ և հասարակությունը թևակոխում է կոմունիզմի փուլը։ «ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959 — 1965 թվականների կոնտրոլ թվերի մասին» ՍՄԿՊ XXI համագումարի բանաձևում ասված է, որ արդեն այժմ մեր երկրում նյութական և կուլտուրական բարիքների զգալի և հարաճուն մասը ձրի օգտագործվում է հասարակության բոլոր անդամների կարիքների համար։ Յոթնամյակի ընթացքում սպառման հասարակական ֆոնդի այդ բաժինը գնալով կավելանա, որը կարևոր նախադրյալ է աստիճանաբար բաշխման կոմունիստական սկզբունքին անցնելու համար։

Հենվելով մարքս-լենինյան թեորիայի վրա՝ Սովետական Միության Կոմունիստական պարտիան հանրագումարի բերեց սոցիալիստական շինարարության նվաճումները և հանգեց այն հետևության, որ մեր երկրում սոցիալիզմի կառուցումը լիովին ավարտվել է, որ մեր երկիրն այժմ թևակոխում է կոմունիզմի ծավալուն կառուցման փուլը։ ՍՄԿՊ XXI համագումարի բանաձևում ընդգծված է, որ առաջիկա յոթնամյակում մեր երկրի հիմնական խնդիրը կոմունիստական հասարակարգի նյութա-տեխնիկական բազայի ստեղծումն է, սոցիալիստական արտադրողական ուժերի նոր, հզոր վերելքը։ Յոթնամյակի կոնտրոլ թվերի իրականացումը վճռական քայլ է այդ բնագավառում։ Յոթնամյակի ընթացքում ծանր արդյունաբերության արտադրանքը կաճի 85 — 88 տոկոսով, 1959 — 1965 թվականները կլինեն երկրի լիակատար էլեկտրիֆիկացիայի լենինյան գաղափարի իրագործման վճռական տարիներ։ Մեքենաշինությունը առաջավոր տեխնիկայի և գիտության հիման վրա կապահովի նորագույն սարքավորումների արտադրությունը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի համար։ Խնդիր է դրված առաջիկա տարիներին ապահովել արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացումը, առանձին ագրեգատների ավտոմատացումից անցնել լրիվ ավտոմատացված ցեխերի և ձեռնարկությունների ստեղծման։

Սակայն յոթնամյա պլանի կատարմամբ, մենք դեռևս ամբողջովին չենք լուծի ՍՍՌՄ հիմնական տնտեսական խնդիրը։ Դրա համար անհրաժեշտ է ևս հինգ տարի, նշում է ընկ. Ն. Ս. Խրուշչովը, գուցե ավելի քիչ ժամանակ, որպեսզի Սովետական Միությունը աշխարհում առաջին տեղը գրավի ինչպես արտադրության բացարձակ ծավալով, այնպես էլ բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ։

Կոմունիզմի նյութա-տեխնիկական բազան անպայման պետք է բարձր լինի, քան թե կապիտալիզմի նյութա-տեխնիկական բազան։ ՍՄԿՊ XXI համագումարում տված իր զեկուցման մեջ ընկեր Ն. Ս. Խրուշչովը ասում է. «Պարզամտություն կլիներ կարծել, որ եթե մենք Ամերիկայի Միացյալ Նահանգներին հասնենք տնտեսական տեսակետից, ապա դրանով իսկ կավարտենք կոմունիստական շինարարությունը»։ Կոմունիստական շինարարության ավարտման համար անհրաժեշտ է գերազանցել կապիտալիստական ամենազարգացած երկրի արտադրության մակարդակը, ապահովել աշխատանքի շատ ավելի բարձր արտադրողականություն, քան ունի կապիտալիզմը։ Ճաշե-

լով ԱՄՆ-ի հետ տնտեսական մրցությունը, ՍՍՌՄ-ը դրանով կավարտի կոմունիստական շինարարության առաջին էտապը։

Կոմունիստական շինարարության նոր էտապի բնորոշ գիծն այն է, որ արտադրողական ուժերի աննախընթաց աճի հետ կկատարելագործվեն նաև սոցիալիստական արտադրահարաբերությունները, որոնք խարսխված են հասարակության բոլոր աշխատավորների ընկերական համագործակցության, բարեկամության և փոխօգնության վրա։

Արտադրության վիթխարի առաջընթացը ստեղծում է չտեսնված բարենպաստ պայմաններ հասարակության գլխավոր արտադրողական ուժի՝ աշխատավորների բեղմնավոր, ավելի ստեղծագործ աշխատանքի ծավալման, նրանց ընդունակությունների զարգացման համար։ Կոմունիզմի իդեալը երբեք էլ չի եղել հասարակության բոլոր անդամների միայն նյութական պահանջմունքների բավարարումը։ Կոմունիզմ կառուցողների համար չափազանց կարևոր է նաև ապահովել մարդու ֆիզիկական և հոգևոր ընդունակությունների բազմակողմանի զարգացումը, ստեղծել այնպիսի հնարավորություններ, որպեսզի դրանք գործադրվեն մարդկանց հասարակական, գիտական և կուլտուրական գործունեության բոլոր բնագավառներում։ Կոմունիզմը ենթադրում է ո՛չ միայն նյութական բարիքների առատություն, այլև իրենց՝ մարդկանց զարգացման այնպիսի մակարդակ, որը կապահովի նրանց ընդունակությունների լայն կիրառում հասարակության բազմաբովանդակ կյանքի բոլոր ասպարեզներում։

Նյութական արտադրության բնագավառում մարդկանց աշխատանքային օրվա զգալի կրճատումը, որ կիրառվում է մեր երկրի զարգացման նոր ժամանակաշրջանում, հնարավորություն է ստեղծում հեշտությամբ զուգակցելու ֆիզիկական աշխատանքը մտավոր աշխատանքի հետ, աշխատանքային մեկ ֆունկցիան փոխարինելու մյուսով։ Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում աշխատավոր մասսաների տեխնիկական և կուլտուրական մակարդակի աննախընթաց վերելքը մեծ չափով կբարձրացնի աշխատանքի արդյունավետությունը, վճռական նախապայմաններ կստեղծի, որպեսզի հասարակության բոլոր անդամները կարողանան զբաղվել և մտավոր աշխատանքով, որպեսզի գիտությունը, արվեստը, գրականությունը և մտավոր աշխատանքի մյուս բնագավառները դադարեն հասարակության անդամների լոկ մի մասի գործունեության ոլորտը լինելուց։ Այս ամենն ուղղված են մարդու աշխատանքը հեշտացնելու, նրա կյանքն ավելի երջանիկ, նրա հոգևոր աշխարհն ավելի հարուստ դարձնելու նպատակին։

Այսպիսով, մարդիկ պայքարելով կոմունիզմի կառուցման համար, միաժամանակ պայքարում են իրենց բուն վերափոխման համար։ Այդ պայքարի ընթացքում նրանց գիտակցության մեջ կատարվող փոփոխությունները կդրսևորվեն իբրև նոր դարաշրջանի անհատի բնորոշ գծեր։ Դրա փայլուն ապացույցը կոմունիստական հասարակարգի ծավալուն շինարարության առաջին իսկ տարվանից լայնորեն զարգացող աշխատանքի կոմունիստական բրիգադաների շարժումն է։ Դա սոցիալիստական մրցության նոր, ավելի բարձր ձև է։ Ինքնըստինքյան հասկանալի է, որ սոցիալիստական մրցությունը, հանդիսանալով նոր հասարակարգի ծնունդ, չի կարող ետ մնալ նրա առաջընթացից և միշտ զարգացման պրոցես է ապրում։ Առաջին կոմունիստական շաբաթօրյակներից, մասսայական հարվածայնությունից մինչև աշխատանքի այժմ-



յան կոմունիստական բրիգադաները՝ ահա այն զարգացման ուղին, որով անցել է սոցիալիստական մրցությունը։ Դրանցից յուրաքանչյուրը սոցիալիստական շինարարության տարբեր էտապներում աչքի է ընկնում ժողովրդական մասսաների ստեղծագործական աշխատանքի բուռն արտահայտությամբ։

Մեր երկրի զարգացման փորձը ցույց է տալիս, որ Կոմունիստական պարտիայի առաջ քաշած վիթխարի խնդիրները միշտ էլ շարժման մեջ են դրել միլիոնավոր աշխատավորական մասսաներ։ Պատմական այդ օրինաչափությունն առավել քան դրսևորվում է այժմ, երբ պարտիան առաջ է քաշել ավելի մեծ խնդիրներ, որոնց կենսագործման համար պայքարող միլիոնները հանդես են բերում աշխատանքային նոր ավյուն, իրենց նպատակին՝ կոմունիզմին շուտ հասնելու համար։ Դա կոմունիստական գիտակցականության և սոցիալիստական հասարակական հարաբերությունների զարգացման դրսևորումն է, որը նպաստում է սոցիալիստական արտադրահարաբերություններն աստիճանաբար կոմունիստական արտադրահարաբերությունների վերաճմանը։

Սովետական մարդկանց աշխատանքային սխրանքների է մղում ո՛չ միայն նյութական շահագրգռվածությունը, այլև նրանց բարձր գիտակցականությունը։ Միլիոնավոր աշխատավորների համար աշխատանքն այժմ արդեն ո՛չ միայն ապրուստի միջոց է, այլև հետզհետե դառնում է կենսական պահանջ, տեղի է ունենում սոցիալիստական աշխատանքն աստիճանաբար կոմունիստական աշխատանքի վերածվելու պրոցես։ Սակայն մասսաների քաղաքական և աշխատանքային խանդավառության ներկա վերելքի պայմաններում ճիշտ չէր լինի որևէ չափով թուլացնել աշխատողների նյութական շահագրգռվածության սկզբունքի կիրառումը։ Կոմունիստական արտադրության նպատակն է՝ մաքսիմալ չափով բավարարել ամբողջ հասարակության անընդհատ աճող նյութական և կուլտուրական պահանջները։ Նյութական շահագրգռվածության սկզբունքի անշեղ կիրառման հետ միասին պարտիական, սովետական, պրոֆմիութենական և կոմերիտական կազմակերպությունների ամենօրյա ուշադրության կենտրոնում պետք է լինեն աշխատավորների և, հատկապես, երիտասարդության կոմունիստական դաստիարակության խնդիրները. սովետական դպրոցի վերակառուցումը նպատակ ունի արմատապես բարելավելու մատաղ սերնդի ուսման, կրթության և դաստիարակության գործը կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում։

Արտադրության եղանակը կոմունիզմի ժամանակ ենթադրում է համաժողովրդական սեփականության մի միասնական ձև։ Սակայն դա չի նշանակում, որ այժմ պետք է խթանել սեփականության պետական և կոլտնտեսային կոոպերատիվ ձևերի միաձուլումը։ Կոմունիստական պարտիան ժամանակին քննադատեց այն սխալ դրույթը, որ իբր թե կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականությունն արգելակում է գյուղատնտեսության զարգացումը։ Կյանքը ցույց տվեց, որ կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականությունը ներկա էտապում ոչ թե արգելակում, այլ, ընդհակառակը, լիովին ապահովում է գյուղատնտեսության մեջ ընդլայնված սոցիալիստական վերարտադրություն և դեռ երկար ժամանակ կնպաստի դրան։ Եվ, իրոք, պարտիայի ձեռնարկած միջոցառումները՝ գյուղատնտեսության աշխատողների նյութական շահագրգռվածության վերականգնումը, ՄՏ կայանների վերակազմումը, գյուղատնտեսական մթերքների գնման նոր կարգը և այլն, լուրջ խթան հանդիսա-

ցան գյուղատնտեսության հետագա առաջխաղացման համար։ Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում է՛լ ավելի է զարգանալու գյուղատնտեսական արտադրությունը, որի հետևանքով գնալով աճելու է կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդը, կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականությունը համաժողովրդական սեփականության հետ ձուլելու նյութական հիմքը։ Դա մեծ չափով կնպաստի միջկոլտնտեսային կապերի հետագա ընդլայնմանը։ Էլեկտրակայանների, ոռոգիչ ջրանցքների, գյուղատնտեսության մթերքները վերամշակող, շինանյութեր արտադրող ձեռնարկությունների շինարարությունը, ճանապարհների, դպրոցների, հիվանդանոցների, ակումբների, ծերերի համար տների և այլ խոշոր օբյեկտների կառուցումը մեծ ծախսերի հետ կապված լինելով՝ կպահանջեն կոլտնտեսությունների նյութական ուժերի համատեղ օգտագործում։ Գյուղատնտեսության հետագա տեխնիկական հագեցվածության, էլեկտրիֆիկացման զարգացման շնորհիվ, ինչպես նշում է ընկեր Խրուշչովը, մեծ չափով տեղի կունենա կոլտնտեսային և պետական, համաժողովրդական արտադրական միջոցների միացում, նրանց յուրօրինակ ձուլում, գյուղատնտեսական աշխատանքը աստիճանաբար կվերածվի ինդուստրիալ աշխատանքի տարատեսակի։

Կոմունիստական պարտիան, ամփոփելով սոցիալիստական շինարարության փորձը գյուղում, ցույց տվեց, որ կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականության վերածումը համաժողովրդական սեփականության, կատարվելու է ոչ թե կոլեկտիվ տնտեսությունների վերացման, այլ կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականությունը պետական սեփականության հետ աստիճանաբար մերձեցնելու, նրա մակարդակին հասցնելու ճանապարհով։ Այս պրոցեսը ինքնաբերաբար չի ընթանալու, այլ կատարվելու է պետության ակտիվ մասնակցությամբ և աջակցությամբ, գյուղի և քաղաքի միջև էական տարբերությունների վերացման, բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության դաշինքն է՛լ ավելի ամրապնդելու, նրանց փոխադարձ տնտեսական և կուլտուրական կապերն ուժեղացնելու միջոցով։

Սեփականության կոլտնտեսային-կոոպերատիվ ձևը հասնելով համաժողովրդական սեփականության մակարդակին, հետագայում լրիվ չափով կձուլվի մի միասնական կոմունիստական սեփականության ձևի մեջ։

* * *

Սովետական երկիրն իր զարգացման ընթացքում անցել է մի քանի էտապ և այժմ թևակոխել է կոմունիզմի ծավալուն կառուցման էտապը։ Անցած ժամանակաշրջանը եղել է ո՛չ միայն կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու, սոցիալիստական շինարարությունն ավարտելու, այլև աստիճանաբար կոմունիստական շինարարության համար անհրաժեշտ նախադրյալներ ստեղծելու ժամանակաշրջան։

Այժմ մեր երկիրն ունի բոլոր անհրաժեշտ պայմանները կոմունիզմի լիակատար հաղթանակի համար։ Ամենից առաջ նշենք, որ կոմունիզմի կառուցումը ընթանում է ավելի բարենպաստ պայմաններում, քան թե սոցիալիստական շինարարությունն էր ընթանում։ Սոցիալիզմի կառուցումը հիմնըվում էր համեմատաբար նեղ նյութատեխնիկական բազայի վրա։ Նրա ուղին



դժվարին էր, քանի որ հանդիպում էր մեռնող դասակարգերի ռեակցիոն ուժերի կատաղի դիմադրությանը։

Կոմունիզմի ծավալուն կառուցումը տեղի է ունենում միանգամայն նոր և ավելի հզոր սոցիալիստական արտադրաուժերի հիման վրա, որը կոմունիզմի հաջող կառուցման, հասարակության պատմական զարգացումը արագացնող խոշորագույն գործոն է։ Սոցիալիզմը մեր երկրում պետք է կառուցվեր այն մարդկային զանգվածով, որ թողել էր կապիտալիզմը, այն գիտական, տեխնիկական կադրերով, որոնց հիմնական մասը դուրս էր եկել բուրժուական միջավայրից. իսկ այժմ պատկերը միանգամայն այլ է։ Կոմունիզմը պետք է կառուցվի այն մարդկանցով, որոնք աճել են սոցիալիզմի օրոք։ Սովետական երկրի բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը, ինտելիգենցիան, կոմունիզմի գործին նվիրված, բոլորովին նոր մարդկանց միլիոնավոր մի բանակ է։ Կասկած չկա, որ այս վիթխարի ուժը կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում նոր թափով առաջ կմղի արտադրողական ուժերի զարգացման գործը։

Սոցիալիզմի շինարարությունը տեղի էր ունենում միջազգային բարդ իրադրությունում։ Կապիտալիստական երկրներով շրջապատված միակ սոցիալիստական երկրի գոյությունը պահանջում էր ժողովրդի ֆիզիկական և բարոյական ուժերի մեծագույն լարվածություն։ Իսկ կոմունիզմի կառուցումն ընթանում է սոցիալիզմի համաշխարհային սիստեմի պայմաններում։ Սոցիալիզմի երկրների փոխադարձ օգնությունը, նրանց տնտեսական, քաղաքական և կուլտուրական կապերի մշտական ամրապնդումը, փորձի օգտագործումը մեծապես կարագացնեն կոմունիստական շինարարությունը։ Սոցիալիզմի երկրները, ինչպես նշում է ընկեր Խրուշչովը, օգտագործելով սոցիալիստական կարգերի հնարավորություններն, այս կամ այն չափով միաժամանակ կթևակոխեն կոմունիստական հասարակարգի բարձրագույն փուլը։

Մարքս-լենինյան թեորիայով զինված, Կոմունիստական պարտիան հմտորեն ղեկավարում է կոմունիզմի հաղթական նավը, մեծագույն իմաստությամբ կանխատեսում և լուծում է մեր երկրի զարգացման ներկա, մոտիկ և հեռավոր ապագայի խնդիրները։

Կոմունիզմը մարդկության վերջնական նպատակն է և այն կառուցվում է մեր երկրում սոցիալիզմի նվաճած գրանիտյա բազայի վրա։ Հաջողությամբ կենսագործելով ՍՄԿՊ XXI համագումարի որոշումները, մեր երկրի ստեղծագործ ժողովուրդը հաստատ քայլերով գնում է դեպի կոմունիզմ։

# ՊՐՈԼԵՏԱՐԱԿԱՆ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻԶՄԻ ԴՐՈՇԻ ՆԵՐՔՈ

ՍՏ. ՍՏԵՓԱՆՅԱՆ

Պրոլետարական ինտերնացիոնալիզմը աշխատավորների միջազգային միասնությունն է կապիտալիզմի տապալման և կոմունիզմի կառուցման համար մղվող պայքարում։ Նա բոլոր մեծ ու փոքր ժողովուրդների ազատության և անկախության, իրավահավասարության և բարեկամության ամենահուսալի երաշխիքն է։ Ինտերնացիոնալիզմի գաղափարը փայլուն ձևով արտահայտված է գիտական սոցիալիզմի մեծագույն ծրագրային փաստաթղթում՝ «Կոմունիստական պարտիայի մանիֆեստ»-ում, որտեղ Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը առաջ քաշեցին «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք» մարտական լոզունգը։ Նրանք գտնում էին, որ սոցիալական ազատագրման համար անհրաժեշտ է բանվոր դասակարգի ռևոլյուցիոն ջանքերի միավորում ո՛չ միայն ազգային, այլև միջազգային մասշտաբով։ Բանվորների Միջազգային Ընկերության հիմնադիր մանիֆեստում Կ. Մարքսը գրել է. «Անցյալի փորձը ցույց տվեց, որ արհամարհական վերաբերմունքը դեպի եղբայրական այն դաշինքը, որ պիտի գոյություն ունենա տարբեր երկրների բանվորների միջև և նրանց դրդի իրենց ազատագրական պայքարում ամուր պաշտպանել միմյանց, պատժվում է նրանց ցաքուցրիվ ճիգերի ընդհանուր պարտությամբ» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր երկու հատորում, հ. 1, էջ 456)։

Զարգացնելով պրոլետարական ինտերնացիոնալիզմի մասին Մարքսի և Էնգելսի տեսական դրույթները, Վ. Ի. Լենինն ընդգծում էր, որ կապիտալիզմի վերջնական կործանումը և կոմունիզմի լիակատար հաղթանակը հնարավոր են միայն բոլոր երկրների աշխատավորների միջազգային դաշինքի առկայության դեպքում։ «Կապիտալը,— գրել է նա,— միջազգային ուժ է. նրան հաղթելու համար հարկավոր է բանվորների միջազգային միություն, նրանց միջազգային եղբայրություն» (Երկեր, հ. 30, էջ 367)։

Պրոլետարական ինտերնացիոնալիզմի էությունը պատմական զարգացման բոլոր ժամանակներում էլ նույնն է, բայց նրա դրոշի ներքո պայքարի բովանդակությունը տարբեր ժամանակներում տարբեր ձևեր է ընդունել։ Մինչև Հոկտեմբերյան ռևոլյուցիան ինտերնացիոնալիզմը հանդում էր միջազգային համերաշխությանը՝ հանուն կապիտալիզմի տապալման և սոցիալիզմի հաստատման։ 1917 թվականի հոկտեմբերից հետո ինտերնացիոնալիզմի թեորիան և պրակտիկան հարստացան նոր փորձով, որի իմաստը պետական իշխանություն նվաճած պրոլետարիատի և կապիտալի աշխարհում իշխանության համար պայքարող պրոլետարիատի միջև նոր հարաբերությունների հաստատումն է։ Ինտերնացիոնալիզմն այդ ժամանակ հանդում էր միջազգա-



յին բանվորական շարժման կողմից Սովետական Միության պաշտպանությանը և վերջինիս փոխադարձ աջակցությանը համաշխարհային բանվորական շարժմանը։

Պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարների դերը հսկայական չափով աճեց և ինտերնացիոնալիզմն իր մարմնացումը գտավ համաշխարհային սոցիալիստական սիստեմի մեջ։ Զգալիորեն լայնացավ պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների գործունեության ոլորտը։ Այդ սկզբունքներն այժմ կիրառվում են ո՛չ միայն եղբայրական կոմունիստական և բանվորական պարտիաների փոխհարաբերություններում, այլև սոցիալիստական երկրների միջպետական հարաբերություններում։

***

Պրոլետարական ինտերնացիոնալիզմը դարձել է սոցիալիստական երկրների ժողովուրդների բարեկամական հարաբերությունների հիմնական օրենքը։ Սոցիալիստական երկրների փոխհարաբերությունների նոր տիպը պայմանավորված է նրանց հասարակական, պետական կարգով, որը բացառում է ինչպես մարդու կողմից մարդու շահագործումը, այնպես էլ մի ազգի շահագործումը մյուս ազգի կողմից։

1847 թվականին Լոնդոնում լեհական ապստամբության 19-րդ տարեդարձին նվիրված միտինգում Կ. Մարքսը նշել է. «Որպեսզի ժողովուրդներն իրոք կարողանան միավորվել, նրանց պետք են ընդհանուր շահեր։ Որպեսզի նրանց շահերն ընդհանուր լինեն, պետք է ոչնչացնել գոյություն ունեցող սեփականատիրական հարաբերությունները, որովհետև գոյություն ունեցող սեփականատիրական հարաբերություններով է պայմանավորված մի ժողովրդի շահագործումը մյուսի կողմից» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., изд. 2-ое, I ч., стр. 371)։

Սոցիալիստական պետությունների փոխհարաբերություններն արմատապես տարբերվում են կապիտալիստական պետությունների փոխհարաբերություններից։ Վ. Ի. Լենինի բնորոշ արտահայտությամբ՝ «կապիտալիզմի պայմաններում միջազգային հարաբերությունների էությունը՝ թույլի բացահայտ կողոպուտը, դրսևորվում է լիակատար պարզությամբ» (Երկեր, հ. 17, էջ 222)։

Ի տարբերություն կապիտալի աշխարհում ազգերի և ժողովուրդների անհավասար դրության, սոցիալիստական երկրների ժողովուրդների միջև հարաբերությունները կառուցված են պրոլետարական ինտերնացիոնալիզմի մեծ սկզբունքների վրա։ «Պրոլետարական ինտերնացիոնալիզմը,— ասում է Հունգարական Սոցիալիստական Բանվորական պարտիայի Կենտկոմի առաջին քարտուղար Յանոշ Կադարը,— սոցիալիստական լագերի երկրների կյանքում օրենք է դարձել, նա մեր երկրների միջև բարեկամական հարաբերությունների ներքին բովանդակությունն է»։ Սոցիալիստական երկրների բարեկամության ամրապնդման համար մեծ նշանակություն ունեցավ սոցիալիստական երկրների կոմունիստական ու բանվորական պարտիաների ներկայացուցիչների 1957 թվականի նոյեմբերյան խորհրդակցության Դեկլարացիան։ Այդ պարտիաների ներկայացուցիչներն իրենց խորհրդակցությունում մշակեցին պետական ու պարտիական հարաբերությունների անխախտ սկզբունքներ, որոնք արտահայտվեցին ու տեսականորեն հիմնավորվեցին Դեկլարացիայում։

*Սոցիալիստական երկրների կոմունիստական ու բանվորական պարտիաները Դեկլարացիայում հայտարարեցին, որ «անդուլ կերպով կամրապնդեն իրենց միասնությունը և ընկերական համագործակցությունը հօգուտ սոցիալիստական պետությունների համերաշխության հետագա համախմբման, հօգուտ միջազգային բանվորական շարժման, խաղաղության ու սոցիալիզմի գործի»։*

*Սոցիալիստական պետություններն օգնում են միմյանց ազգային էկոնոմիկայի և կուլտուրայի հետագա աճի, աշխատավորների նյութական բարեկեցությունը բարձրացնելու և ամբողջությամբ վերցրած՝ սոցիալիզմի երկրների միջև համագործակցությունն է՛լ ավելի ամրապնդելու համար։ Սոցիալիզմի շինարարության գործում ժողովրդական դեմոկրատիայի երկրները հենվում են Սովետական Միության անշահախնդիր օգնության վրա։*

*Սոցիալիզմի լագերի բոլոր երկրների միջև ստեղծված հարաբերությունները հենվում են նպատակի ու շահերի ընդհանրության վրա, իրավահավասարության ու եղբայրական բարեկամության սկզբունքների վրա։ Սոցիալիստական երկրների միջև տնտեսական ավելի լայն համագործակցություն իրականացնելու նպատակով ստեղծված սոցիալիստական երկրների Տնտեսական փոխադարձ օգնության խորհրդի խնդիրն է՝ տնտեսական փորձի, տեխնիկայի նվաճումների փոխանակումը, փոխադարձ օգնությունը հումքով, պարենամթերքով, մեքենաներով և այլն։*

*Սովետական Միության գիտա-տեխնիկական օգնությամբ կառուցվել են Վ. Ի. Լենինի անվան մետալուրգիական կոմբինատը, մարդատար ու բեռնատար ավտոմոբիլների և ալյումինի գործարաններ Լեհաստանում, Գոտվալդի անվան մետալուրգիական կոմբինատը Չեխոսլովակիայում, մետալուրգիական կոմբինատ Հունգարիայում, տրակտորային գործարան Ռումինիայում, Լենինի անվան մետալուրգիական գործարանը և քիմիական կոմբինատ Բուլղարիայում և այլն։ Սովետական Միության օգնությամբ սոցիալիստական երկրներում կառուցվել և կառուցվում են 550 նոր արդյունաբերական ձեռնարկություններ և 169 առանձին ցեխեր և սարքավորումներ։ ՍՍՌՄ-ի օգնությամբ ժողովրդական Լեհաստանը կառուցում է 72, Ռումինիան՝ 56, Բուլղարիան՝ 39 ձեռնարկություն։ Սովետական Միությունը առավելագույն բարենպաստ պայմաններով սոցիալիստական երկրներին տրամադրել է 21 միլիարդ ռուբլի ընդհանուր գումարով երկարատև վարկ։*

*Սովետական Միությունն անմիջական մասնակցություն ունեցավ ժողովրդական Լեհաստանի մայրաքաղաք Վարշավայի վերակառուցման աշխատանքներին։ Այստեղի նորակառույցների շարքում վեհորեն կանգնած է կուլտուրայի և գիտության պալատի շքեղանիստ շենքը, որը որպես եղբայրության խորհրդանիշ կառուցել և լեհ ժողովրդին է նվիրել Սովետական Միությունը։ Վիետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայի տնտեսությունը զարգացնելու նպատակով Սովետական կառավարությունը նրան անվերադարձ տրամադրել է 400 միլիոն ռուբլի։*

*Սոցիալիստական երկրների համատեղ ջանքերով կառուցվում են արդյունաբերական, էներգետիկայի և ժողովրդա-տնտեսական շատ գիգանտներ։ Այսպես, օրինակ, Ռումինիայի, Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի, Չեխոսլովակիայի և Լեհաստանի միացյալ ուժերով Ռումինիայում կառուցվեց ցելյուլոզային խոշոր կոմբինատ։ ԳԴՌ-ն և Լեհաստանը համագործակցում են քարածխի բաց հանքերի շահագործմամբ և նախապատրաստական աշխատանք կատարում Օդերի և Դանուբի միջև ջրանցք կառուցելու համար։ Գերմանացի և չեխ մասնագետները Չինաստանում կառուցում են ջերմաէլեկտրակայան։ Սովետական Միությունը, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան և Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկան միասին կառուցեցին երկաթուղային մեծ ճանապարհ։ Բարեկամության այդ ճանապարհն անցնում է սոցիալիստական երեք երկրների տերիտորիաներով։ Նման օրինակները բազմաթիվ են և հնարավոր չէ բոլորը թվարկել։*

* * *

*ՍՄԿԿ XXI համագումարը նշեց, որ սոցիալիստական լագերի էկոնոմիկայի զարգացման մեջ կոչված են մեծ դեր խաղալու աշխատանքի միջազգային բաժանումը, հատկապես նրա բարձրագույն ձևերը՝ մասնագիտացումն ու կոոպերացումը։ Արտադրության մասնագիտացումն ու կոոպերացումը հնարավորություն են տալիս սոցիալիզմի լագերի բոլոր երկրներում բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, իջեցնել արտադրանքի ինքնարժեքը, գինը, ապահովել բանվորական ուժի ճիշտ տեղաբաշխում և հետևաբար արագացնել սոցիալիզմի ու կոմունիզմի շինարարության տեմպերը։*

*Ժողովրդական տնտեսության փոխկապակցված ճյուղերի պլաններում ընկերական համաձայնեցման միջոցով արտադրության հետագա միջպետական մասնագիտացումն ու կոոպերացումը նշանավորում են սոցիալիստական երկրներում աշխատանքի միջազգային բաժանումը զարգացնելու նոր էտապ։ Աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանման նշանակությունն այն է, որ նա արագացնում է սոցիալիստական երկրների տնտեսական աճը, ամրապնդում է նրանց միասնությունն ու համախմբվածությունը, կրճատում այն ժամկետը, որն անհրաժեշտ է յուրաքանչյուր երկրի հիմնական տնտեսական խնդրի լուծման համար։ ՍՄԿԿ XXI համագումարն ընդգծեց, որ «արտադրության ռացիոնալ տեղաբաշխումը, որի պայմաններում սոցիալիստական յուրաքանչյուր պետության ազգային շահերը ներդաշնակորեն զուգակցվում են սոցիալիստական ամբողջ լագերի ամրապնդման և զարգացման շահերի հետ, սոցիալիստական բոլոր երկրներում արտադրողական ուժերի աճման տեմպերի արագացման կարևորագույն աղբյուրներից մեկն է»։*

*Այսուհետև աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանման մեջ ավելի որոշակի կդառնա յուրաքանչյուր սոցիալիստական երկրի տեղը։ Եթե սովետական ժողովուրդը մեր երկրի ինդուստրացումն իրագործելիս ստիպված էր զարգացնել ծանր արդյունաբերության բոլոր ճյուղերը, որպեսզի Սովետական Միությունը պահպաներ իր անկախությունը կապիտալիստական աշխարհից, ապա ներկայումս բոլորովին հարկ չկա, որ ժողովրդական դեմոկրատիայի յուրաքանչյուր երկրում զարգացվեն արդյունաբերական այն ճյուղերը, որոնց համար չկան նպաստավոր պայմաններ և բազա։ Օրինակ, Բուլղարիայի, Ալբանիայի և Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկայի համար ձեռնտու չէ զարգացնել ծանր արդյունաբերության այնպիսի ճյուղեր, ինչպիսիք են՝ ավտոմոբիլային և տրակտորային արդյունաբերությունը, լոկոմոտիվների և այլ սարքավորումների արտադրությունը։*

*Արտադրության մասնագիտացման և կոոպերացման հիման վրա սոցիալիստական Բուլղարիան արտադրում և սոցիալիստական մյուս երկրներն է*

արտահանում կոմբայններ, նավեր, բարժաներ, էլեկտրամոտորներ, տրանս-
ֆորմատորներ և ավտոմատ հեռախոսային կայաններ։ Սոցիալիստական եր-
կըրների պայմանավորվածության համաձայն, Չեխոսլովակիան զարգացնում
է ծանր բեռնատար ավտոմեքենաների և տրանսպորտային հատուկ միջոցնե-
րի արտադրությունը, իսկ ԳԴՌ-ն՝ թեթև բեռնատար ավտոմեքենաների ար-
տադրությունը։ ԳԴՌ-ն և Չեխոսլովակիան կոորդինացնում են տրակտորների
արտադրությունը, ըստ որում ԳԴՌ-ն արտադրում է 15-ուժանոց տրակտոր-
ներ, իսկ Չեխոսլովակիան՝ 30-ուժանոց։ ԳԴՌ-ի և Չեխոսլովակիայի մեքե-
նաշինական արդյունաբերության առանձին ճյուղեր կոոպերացվում են ՍՍՌՄ-ի
համար շաքարի գործարանների սարքավորում արտադրելու ուղղությամբ։

Սոցիալիստական երկրների արտադրության մասնագիտացման և կոո-
պերացման հետագա զարգացման համար կարևոր որոշումներ ընդունեց Տըն-
տեսական Փոխօգնության խորհրդի վերջին սեսիան, որը տեղի ունեցավ 1958
թվականի դեկտեմբերին, Պրագայում։ Այդ սեսիայում որոշվեց մասնագիտաց-
նել և կոոպերացնել քիմիական արտադրանքի մի շարք տեսակների, ինչպես
նաև սև մետաղների գլանվածքի ու խողովակների արտադրությունը սոցիա-
լիզմի լագերի երկրներում։ Աշխատանքի միջազգային սոցիալիստական բա-
ժանման համար խոշոր նշանակություն ունի այն որոշումը, որով ՍՍՌՄ-ից
նավթամուղ է կառուցվում դեպի Լեհաստան և ապա՝ ԳԴՌ։

Սոցիալիստական երկրների միջև գոյություն ունի նաև գիտա-տեխնիկա-
կան սերտ համագործակցություն։ Այդպիսի համագործակցության վառ օրի-
նակ է սոցիալիզմի երկրներում ատոմային էներգիայի խաղաղ օգտագործ-
ման նպատակով 1956 թվականին ստեղծված միջուկային հետազոտություն-
ների միացյալ ինստիտուտը։ Այնուհետև, տեխնիկական փոխօգնության ձե-
վերից մեկը տարբեր ձեռնարկությունների ու շինարարությունների նախագծե-
րի ու գծագրերի, պատենտների ու գիտա-տեխնիկական դոկումենտացիայի
փոխանակումն է։ Սովետական Միության տրամադրած տեխնիկական դոկու-
մենտացիայի հիման վրա Լեհաստանում զարգացան ժողովրդական տնտե-
սության այնպիսի ճյուղեր, ինչպիսիք են՝ նավաշինությունը, ավտոմոբիլա-
շինությունը, տրակտորաշինությունը և այլն։ Սովետական փորձը Հունգա-
րիայում օգտագործվում է լեռնահանքային սարքավորումների, առանձին հաս-
տոցների արտադրության համար։ Ռումինիայում նավթային արդյունաբերու-
թյան համար սարքավորումների արտադրությունը իրականացվում է Սովե-
տական Միության տեխնիկական օգնությամբ։ Չինաստանում սովետական
փորձը լայնորեն օգտագործվում է մետալուրգիայի, մեքենաշինության և
տրանսպորտի մեջ։ Սովետական գծագրերով, արտադրության տեխնոլոգիայի
դոկումենտացիայով Չինաստանում յուրացվել է արտադրանքի 222 և յուրաց-
վում է ես 104 նոր տեսակ։

Իր հերթին, Սովետական Միությունն օգտագործում է սոցիալիստական
մյուս երկրների փորձն ու տեխնիկական դոկումենտացիան։ Օրինակ, Չինա-
կան Ժողովրդական Ռեսպուբլիկան Սովետական Միությանը տրամադրեց մե-
տաքսագործական արդյունաբերության և երկաթ-բետոնային խողովակների
արտադրության դոկումենտացիաներ։ ՍՍՌՄ-ում յուրացված է ածխի հանույ-
թի և երկաթուղային վագոնների արտադրության Լեհաստանի փորձը։ Սովե-
տական արդյունաբերության մի շարք ճյուղերի զարգացման համար օգտա-
գործվում է Չեխոսլովակիայի և ԳԴՌ-ի փորձը։



Սոցիալիստական երկրների փոխհարաբերությունների զարգացման գոր-
ծում մեծ դեր է խաղում ժողովրդական տնտեսության հեռանկարային պլան-
ների կոորդինացումը։ 1958 թվականին կոորդինացվեցին Տնտեսական Փոխ-
օգնության խորհրդի անդամ-պետությունների տնտեսական զարգացման հե-
ռանկարային պլանները մինչև 1965 թվականը։ 1960 թվականին կմշակվի սո-
ցիալիստական երկրների տնտեսական զարգացման առաջին ընդհանուր պլա-
նը մինչև 1975 թվականը։ Այդ պլանի իրագործումը խոշոր քայլ կլինի դեպի
կոմունիզմ սոցիալիստական երկրների առաջընթացում։

Սոցիալիստական երկրների միջև տնտեսական փոխհարաբերությունների
լավագույն ձևերից մեկը փոխադարձ շահավետության հիման վրա իրակա-
նացվող առևտուրն է։ Համաշխարհային սոցիալիստական շուկան ունի կազ-
մակերպված, պլանային բնույթ։ Սոցիալիզմի երկրների ապրանքաշրջանա-
ռության զարգացման հիմքում ընկած են երկարաժամկետ համաձայնագրերը։
Համաշխարհային սոցիալիստական շուկայի բնորոշ գծերից մեկն այն է, որ
նրա մասնակիցների մեջ ապրանքաշրջանառությունն անընդհատ աճում է։
Առևտրի միջոցով Սովետական Միությունը սոցիալիստական մյուս երկրներն է
արտահանում մետալուրգիական, մեքենաշինական, լեռնահանքային, քիմիա-
կան, տեքստիլ, սննդի և արդյունաբերական մյուս ճյուղերի համար ժամանա-
կակից սարքավորումներ, գյուղատնտեսական զանազան մեքենաներ, հան-
քաքար, սև և գունավոր մետաղներ, տեքստիլային հումք և այլ ապրանքներ։

Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան արտահանում է բրինձ, գունա-
վոր մետաղներ և այլ ապրանքներ։ Լեհաստանը համարվում է քարածուխ,
կոքս, ցինկ, գլանվածք, սև մետաղներ, մեքենաներ, նավեր, զանազան գործ-
վածքներ արտահանող։ Չեխոսլովակիան արտահանում է արդյունաբերական,
էներգետիկայի և տրանսպորտային սարքավորումներ։ Համաշխարհային սո-
ցիալիստական շուկայում կարևոր տեղ են գրավում նաև չեխոսլովակյան այն-
պիսի ապրանքներ, ինչպիսիք են՝ կոշիկը, գործվածքեղենը, ապակե և ճենա-
պակե իրերը։ Առևտրի ծավալը սոցիալիստական լագերի բոլոր երկրների միջև
1950—1957 թվականներին ավելացավ 2,6 անգամ։ ՍՍՌՄ ժողովրդական տըն-
տեսության զարգացման յոթնամյա պլանով սոցիալիստական երկրների հետ
սովետական արտաքին առևտրի շրջանառությունը 1965 թվականին, 1958
թվականի համեմատությամբ, կաճի ավելի քան մեկ ու կես անգամ։

Պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշի ներքո սոցիալիստական
երկրների տնտեսական համագործակցությունը տալիս է իր հիանալի պտուղ-
ները։ 1958 թվականին սոցիալիստական երկրներում արդյունաբերական ար-
տադրությունը, 1937 թվականի համեմատությամբ, ավելացավ հինգ անգամ։
ՉԺՌ-ում 1950—1958 թվականներին արդյունաբերական արտադրությունն ա-
վելացավ մոտավորապես 10 անգամ։ Նախապատերազմյան մակարդակի հա-
մեմատությամբ, 1958 թվականին արդյունաբերական արտադրանքը Լեհաստա-
նում աճեց ավելի քան 5,5 անգամ, Չեխոսլովակիայում՝ 3,3 անգամ, ԳԴՌ-
ում՝ ավելի քան 2,5 անգամ, Ռումինիայում՝ գրեթե 4 անգամ, Հունգարիա-
յում՝ ավելի քան 4 անգամ, Բուլղարիայում՝ մոտավորապես 9 անգամ, Ալբա-
նիայում՝ 18 անգամ։ Կորեական Ժողովրդական Դեմոկրատական Ռեսպուբլի-
կան 1949 թվականի համեմատությամբ արդյունաբերական արտադրությունն
ավելացրեց 3,5 անգամ։

Սոցիալիզմի լագերի բոլոր երկրներն էլ պրոլետարական ինտերնացիոնա-

*լիզմի դրոշի ներքո բուռն վերելք են ապրում, իսկ Հարավսլավիան, որը դուրս է եկել սոցիալիստական երկրների համերաշխ ընտանիքից, այլ պատկեր է ներկայացնում։ Տնտեսական միևնույն տվյալներ ունեցող սոցիալիստական երկրների հետ համեմատած, Հարավսլավիան արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման տեմպերով բավականին ետ է մնում։*

*Պրոլետարական ինտերնացիոնալիզմով է տոգորված նաև սոցիալիստական երկրների կուլտուրական համագործակցությունը։ Իրավահավասարությունը, յուրաքանչյուր ժողովրդի կուլտուրայի նկատմամբ խոր հարգանքը և կուլտուրական վերելքի համար անշահախնդիր օգնությունը պրոլետարական ինտերնացիոնալիզմի այն սկզբունքներն են, որոնք դրսևորվում են սոցիալիստական երկրների կուլտուրական համագործակցության մեջ։*

*Սոցիալիստական երկրների կուլտուրական համագործակցությունն իրականացվում է սոցիալիստական ազգերի համաժողովրդական կուլտուրան փոխադարձորեն պրոպագանդելու և նվաճումները միմյանց հաղորդելու միջոցով։ Ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրա ունեցող սոցիալիստական երկրների համագործակցությունը կրում է ստեղծագործական բնույթ։ Փոխադարձաբար միմյանց կուլտուրան հարստացնելու միջոցով սոցիալիստական ազգերն իրենց ավանդն են մուծում համաշխարհային կուլտուրայի գանձարանը։ Կուլտուրական համագործակցության վերաբերյալ սոցիալիստական երկրների միջև կնքված են ավելի քան 270 համաձայնագրեր։ Բոլոր համաձայնագրերում էլ սոցիալիստական երկրները խոշոր նշանակություն են տալիս այնպիսի հարցերին, ինչպիսիք են՝ գիտության և կուլտուրայի բնագավառների պատվիրակությունների փոխադարձ այցելությունները, գիտական և գեղարվեստական գրականության հրատարակությունների փոխանակումը, ազգային կուլտուրայի նվաճումների մասսայականացման միջոցառումները (կինոֆեստիվալներ, համերգներ, ռադիոհաղորդումներ, ցուցահանդեսների կազմակերպում և այլն), գիտա-հետազոտական աշխատանքների և արվեստի նոր գործեր տալու համար գիտության ու կուլտուրայի գործիչների ստեղծագործական համագործակցությունը։ Գոյություն ունեն նաև մի շարք պայմանագրեր և համաձայնագրեր ուսուցման, տուրիզմի զարգացման և այլ հարցերի վերաբերյալ։ Սոցիալիստական երկրները միմյանց օգնում են գիտական կադրերի պատրաստման գործում։ ՍՍՌՄ-ի բարձրագույն ուսումնական հաստատություններում ուսանում են ժողովրդական դեմոկրատիայի երկրների 12 հազար ուսանող և 2 հազար ասպիրանտ, իսկ սոցիալիստական մյուս երկրներում՝ սովետական ուսանողներ։*

*Սոցիալիստական երկրները լայնորեն համագործակցում են նաև ռազմական գործում, սոցիալիզմի լագերը իմպերիալիստական ոտնձգություններից պաշտպանելու ուղղությամբ։ Այդ նպատակին է ծառայում 1955 թվականին կնքված Վարշավայի պայմանագիրը։*

*Ներկա պայմաններում պրոլետարական ինտերնացիոնալիզմի բնորոշ գծերից մեկը բոլոր երկրների աշխատավորների կողմից խաղաղության, սոցիալիզմի և դեմոկրատիայի լագերի պաշտպանությունն է։ Սոցիալիզմի լագերին պաշտպանելն ու օժանդակելը տարբեր երկրների աշխատավորների ինտերնացիոնալ պարտքն է։*

*Պրոլետարական ինտերնացիոնալիզմով միավորված ազատասեր ժողովուրդների պայքարը խաղաղության, սոցիալիզմի ու դեմոկրատիայի համար*



*քանի գնում ավելի հզոր է դառնում։ Պատահական չէ, որ իմպերիալիզմի ու ռեակցիայի սև ուժերն ամեն տեսակ հանցավոր մեքենայություններ են կազմակերպում սոցիալիստական երկրների ինտերնացիոնալ միասնության դեմ։ Այդ նպատակով ծնունդ առավ «ազգային կոմունիզմը», որը ո՛չ միայն մարքս-լենինյան թեորիան ռևիզիայի ենթարկելու նոր փորձ է, այլև բացահայտ բուրժուական նացիոնալիզմ։ «Ազգային կոմունիզմի» պրոպագանդան իմպերիալիստներին պետք է իրագործելու համար «բաժանիր և տիրիր» հինավուրց սկզբունքը։ Կոմունիզմի թշնամիները փորձում են շովինիզմով և բուրժուական նացիոնալիզմով թունավորել սոցիալիզմի լագերը, սոցիալիստական երկրներին հակադրել միմյանց։*

*«Պրոլետարական պարտիայի կողմից ազգային առանձնահատկությունների անտեսումը,— ասված է կոմունիստական և բանվորական պարտիաների Դեկլարացիայում,— նրան կտրում է կյանքից, մասսաներից, անպայման վնաս է հասցնում սոցիալիզմի գործին և ընդհակառակը, այդ առանձնահատկությունների դերի չափազանցումը և ազգային առանձնահատկությունների պատրվակով սոցիալիստական ռևոլյուցիայի ու սոցիալիստական շինարարության վերաբերյալ մարքսիզմ-լենինիզմի համընդհանուր ճշմարտությունից նահանջելը նույնպես անպայման վնաս է հասցնում սոցիալիզմի գործին»։*

*Ներկա պայմաններում կոմունիստական ու բանվորական պարտիաները պրոլետարական ինտերնացիոնալիզմի հիման վրա հանդես են գալիս համատեղ գործողություններով և վճռական հակահարված են տալիս մարքսիզմ-լենինիզմի սկզբունքները ռևիզիայի ենթարկելու բոլոր փորձերին։ Խոսելով ժամանակակից ռևիզիոնիզմի դեմ պայքարելու և միջազգային կոմունիստական շարժման միասնության ամրապնդման մասին, Ն. Ս. Խրուշչովը ՍՄԿՊ XXI համագումարին տված զեկուցման մեջ մատնանշեց. «Մենք միշտ հետևել ենք և այսուհետև էլ աննահանջ կհետևենք Մարքսի, Էնգելսի, Լենինի ինտերնացիոնալ մեծ ուսմունքին։ Մենք կանգնած ենք եղել և կանգնած ենք այն դիրքում, որ չի կարելի ցրվել իրենց ազգային «տները», «բնակարանները» և ներփակվել իր կեղևի մեջ։ Մենք անհրաժեշտ ենք համարում ամեն կերպ ուժեղացնել սոցիալիստական լագերի հզորությունը, էլ ավելի ամրապնդել միջազգային կոմունիստական շարժման միասնությունը... մեր շարքերի համախմբվածության և ամրության նկատմամբ հոգատարությունը յուրաքանչյուր կոմունիստական ու բանվորական պարտիայի ինտերնացիոնալ բարձրագույն պարտքն է։* Բանվոր դասակարգի ազգային գործի հաջողությունը աներևակայելի է առանց նրա բոլոր ջոկատների ինտերնացիոնալ համերաշխության»:

*Սոցիալիստական սիստեմի ուժի ու միասնության հետագա ամրապնդումը, սոցիալիստական երկրների փոխադարձ աջակցությունը համապատասխանում է ո՛չ միայն սոցիալիստական երկրների ժողովուրդների, այլ նաև ամբողջ աշխարհի աշխատավորների, բոլոր դեմոկրատական և առաջադիմական ուժերի կենսական շահերին։*

*Սովետական Միության և ամբողջ համաշխարհային սոցիալիստական սիստեմի տնտեսական ու քաղաքական հզորացման գործում հսկայական նշանակություն ունի ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանը։ Այդ հոյակապ պլանի կատարման շնորհիվ Սովետական Միությունը բնակչության մեկ շնչին ընկնող արդյունաբերական արտադրանքով առաջին տեղը կգրավի Եվրոպայում, իսկ դրանից հինգ տարի հետո Սով-*

տական երկիրը առաջ կանցնի նաև ԱՄՆ-ից: 1965 թվականին սոցիալիստական երկրները կտան համաշխարհային արդյունաբերական արտադրանքի կեսից ավելին: Դրանով իսկ կապահովվի սոցիալիզմի բացարձակ գերազանցությունը կապիտալիզմի նկատմամբ: ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանը բաց է անում սոցիալիստական պետությունների տնտեսական և գիտա-տեխնիկական համագործակցության զարգացման նոր, իրոք հոյակապ հեռանկարներ. այն կնպաստի սոցիալիզմի համաշխարհային սիստեմի բոլոր առավելությունների է՛լ ավելի լիակատար բացահայտմանը, կարագացնի տնտեսական առաջադիմությունը յուրաքանչյուր սոցիալիստական երկրում:

Որքան ամուր և համախմբված լինի սոցիալիստական լագերը, այնքան բարձր կլինի նրա միջազգային հեղինակությունը, այնքան զորեղ կլինի նրա ազդեցությունը միջազգային կոմունիստական շարժման վրա:

Սոցիալիստական երկրների կոմունիստական պարտիաների փորձի փոխանակումը և նրանց սերտ համագործակցությունը հնարավորություն են տալիս ավելի լավ ձևով օգտագործելու սոցիալիստական սիստեմի առավելությունները, լուծելու ինչպես ներքին, այնպես էլ միջազգային խնդիրները:

Պրոլետարական ինտերնացիոնալիզմի հիման վրա սոցիալիստական երկրների կոմունիստական պարտիաները հետևողական պայքար են մղում համաշխարհային սոցիալիստական սիստեմի միասնությունն ամրապնդելու համար: Սոցիալիստական երկրների կոմունիստական ու բանվորական պարտիաների ներկայացուցիչների խորհրդակցության Դեկլարացիայում ընդգծված է, որ «Սոցիալիզմի երկրների եղբայրական հարաբերությունների և բարեկամության ամրապնդման համար անհրաժեշտ է կոմունիստական ու բանվորական պարտիաների մարքս-լենինյան ինտերնացիոնալիստական քաղաքականություն, անհրաժեշտ է բոլոր աշխատավորներին դաստիարակել ինտերնացիոնալիզմը հայրենասիրության հետ զուգորդելու ոգով, վճռաբար պայքարել բուրժուական նացիոնալիզմի և շովինիզմի մնացուկների հաղթահարման համար»:

Ընդհանրացնելով սոցիալիզմի երկրներում պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշի ներքո նոր կյանքի կառուցման հարուստ փորձը, ՍՄԿՊ XXI համագումարը պարզ պատասխան տվեց նաև այն հարցին, թե այսուհետև ինչպես առաջ կընթանա սոցիալիստական երկրների զարգացումը: Համագումարը նշեց, որ ավելի քիչ հավանական է այն դրությունը, երբ սոցիալիստական երկրներից մեկը հասնի կոմունիզմին, իրագործի արտադրության ու բաշխման կոմունիստական սկզբունքներ, իսկ մյուս երկրները դեռ մնան սոցիալիզմի կառուցման նախնական փուլերում: Տեսականորեն ավելի ճիշտ կլինի ենթադրել, որ սոցիալիստական բոլոր երկրներն էլ այս կամ այն չափով միաժամանակ կթևակոխեն կոմունիստական հասարակարգի բարձրագույն փուլը:

Կոմունիստական ու բանվորական պարտիաները ելնում են այն ճշմարտությունից, որ ինչքան ավելի միասնական է սոցիալիստական պետությունների ընտանիքը, այնքան ավելի հաջող կընթանա սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցումը:

---

# ԷԺԱՆԱՑՆԵԼ ԲՆԱԿԱՐԱՆԱՅԻՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆԸ

Գ. ԿԱՆԵՑՅԱՆ

Շինարարությունը մեր երկրում գնալով ավելի լայն ծավալ է ընդունում. ամեն տարի կառուցվում են հազարավոր նոր բնակելի տներ, ակումբներ, դպրոցներ, թատրոններ, գործարաններ և հասարակական ու արդյունաբերական նշանակություն ունեցող այլ շենքեր: Յոթնամյա պլանով նախատեսված է միայն պետական միջոցներով ՍՍՌՄ-ում կառուցել մոտ 650—660 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն:

Շինարարության այս վիթխարի ծավալը պահանջում է խնայել շինարարական նյութերը, անընդհատ մեքենայացնել աշխատատար պրոցեսները, կրճատել կառուցման ժամկետը և ամենագլխավորը՝ ամեն կերպ իջեցնել կառուցումների արժեքը: Մեր ռեսպուբլիկայում, այս ուղղությամբ զգալի աշխատանք է կատարված: Բավական է ասել, որ եթե 1955 թվականին Հայաստանում մեկ քառակուսի մետր բնակելի տարածության միջին արժեքը կազմում էր 1 800 — 2 000 ռուբլի, իսկ առանձին դեպքերում՝ 2 800 — 3 000 ռուբլի, ապա 1958 թվականին այն չգերազանցեց 1450 — 1600 ռուբլուց: Չնայած դրան, բնակարանային շինարարության արժեքը, այնուամենայնիվ, դեռ բարձր է: Այդ հանգամանքը շինարարներից պահանջում է ուղիներ փնտրել նորակառույցների, հատկապես բնակարանային շինարարության էժանացման համար:

Բնակարանային շինարարության արժեքը զգալի չափով կախված է նրանից, թե ինչ տեղամասում է կառուցվում շենքը, ինչպիսին են կառուցվածքների խտությունը և յուրահատկությունները, շինարարական հրապարակը կամ ապագա բնակելի տունը ապահովվա՞ծ է ճանապարհներով, ջրմուղ-կոյուղու ցանցով, ջեռուցման ու գազամատակարարման, ինչպես նաև անձրևատար կոմունիկացիաներով և այլն:

Որպես կանոն, ավելի արդյունավետ է բնակարանային շենքերը կառուցել ազատ տարածություններում, որպեսզի անհրաժեշտ չլինի քանդել հին տները, որը զգալիորեն թանկացնում է նորակառույցների արժեքը և, անկասկած, չի նպաստում բնակարանային տարածության մակերեսի ընդարձակմանը: Օրինակ, Երևանի Ամիրյան փողոցի նոր բնակելի շենքերը քաղաքի բնակարանների աճի ուղղությամբ համարյա ոչ մի նշանակություն չունեցան՝ քանդված հին տների բնակիչներին տեղավորելու հետևանքով, իսկ Ստալինյան պողոտայի և Կարմիր Բանակի փողոցների անկյունի նոր շենքերը ամենևին չընդարձակեցին քաղաքի բնակարանային ֆոնդը, որովհետև այդտեղի հին, քանդվող տների մակերեսը ավելի էր, քան նոր կառուցված բնակարանների մակերեսը: Նույն փողոցի վրա Շինարարության մինիստրության № 4 տրեստի նորակառույց բնակելի տան մակերեսի ավե-

լի քան 70 տոկոսը հատկացվեց այդ շենքի տեղի նախկին տների բնակիչներին։

Երևանի գաջի գործարանի ընդլայնման հետևանքով մոտակա 2 տարում անհրաժեշտ է քանդել 144 բնակելի տուն, որ կառուցվել են վերջին 10 — 15 տարվա ընթացքում։

ՍՍՌՄ Պետշինի տվյալների համաձայն, նախորդ հնգամյակներում մեզ մոտ բնակարանային շինարարության արժեքը 7 — 8 տոկոսով թանկացել է։ Դրա պատճառը նաև այն է, որ բնակելի տները կառուցվել են այնպիսի վայրերում, ուր ստիպված են եղել քանդել հին շենքերն ու կառուցվածքները։ Այստեղից հետևում է, որ բնակելի շենքերը առայժմ պետք է կառուցել ազատ հողամասերում և այն էլ ամբողջական թաղամասերով։ Այս դեպքում շինարարության արժեքը զգալի չափով կիջնի, և կավելանա բնակելի մակերեսը։

Բնակարանային շինարարության զգալի էժանացման կարելի է հասնել նաև մտածված, կանոնավոր, երկրաչափական ձևի կառուցումների տեղադրումով, հատկապես ազատ նախագծման միջոցով, երբ անհրաժեշտ է խիստ հաշվի առնել և օգտագործել տեղի ռելիեֆը։

Ի տարբերություն թաղամասային զանգվածային կառուցումների, ինչպես նաև առանձին շենքերի ոչ ազատ պլանավորման (կամ տեղադրման, երբ տեղը զգալիորեն թեք է), շենքերի 30—40 տոկոսը ստիպված են լինում տեղադրել հորիզոնականներին զուգահեռ, որը պահանջում է հսկայական լրացուցիչ հողային աշխատանք, ավելորդ ծավալների կառուցում, ինչպես նաև ավելորդ ճարտարապետական ձևավորումներ (աստիճաններ, հենապատեր, տեռասներ և այլն), որոնք թանկացնում են շինարարությունը։ Այդպես նախագծված կառուցումների օրինակ է Շահումյանի շրջանում կառուցվող բնակելի թաղամասը։ Առանձին շենքերին վերաբերող շատ օրինակներ կարելի է բերել Երևան քաղաքից, որտեղ, դժբախտաբար, դեռ շատ են այդ կարգի նախագծումները։ Հաճախ հաշվի չառնելով կառուցվող վայրի ռելիեֆը՝ շենքը նախագծում են միայն շինարարության հարթ հրապարակի համար, իրականում տեղի բարդ ռելիեֆը նախագծին հարմարեցնելու նպատակով կատարում են ավելորդ ծախսեր։ Այս արհեստական հարմարեցումը նախագծին՝ պահանջում է հսկայական աշխատատար պրոցեսներ ու ծախս, երբեմն ավելորդ հողային աշխատանքներ և հաճախ շենքը ձևավորող բազալտե հենապատերի արժեքը գերազանցում է կառուցվող շենքի քարային աշխատանքների արժեքի 50 տոկոսը։ Երևանի Բարեկամության փողոցի վրա նոր կառուցված Կոմունալ բանկի, Աշխատանքային ռեզերվների վարչության և էլեկտրատրեստի ցանցային շրջանի բնակելի տների (հեղինակ՝ ճարտարապետ Տ. Բայայան) ռելիեֆը ուղղելու և բակի կողմից մուտք բաց անելու համար 6100 խորանարդ մետր ժայռային աշխատանքներ են կատարվել, ստեղծվել է նոր արհեստական ռելիեֆ, որի հենապատի կառուցման համար կատարված են 1087 խորանարդ մետր շարի և 750 քառակուսի մետր բազալտե երեսպատման աշխատանքներ։ Եթե վերլուծենք նշված բնակելի տների մակերեսների թանկացման գործոնները, կստացվի հետևյալը. Կոմունալ բանկի բնակելի տան նախահաշվային արժեքը կազմում է 1,744 380 ռուբլի, որից՝ 199 հազար 100 ռուբլին (կամ շենքի ընդհանուր արժեքի 11,7 տոկոսը) կազմում են վերոհիշյալ ծախսերը. այս շենքի մեկ քառակուսի մետր բնակելի մակերեսը արժե 2315 ռուբլի. եթե հանենք ռելիեֆի ուղղման համար արված ավելորդ ծախսերը, որ մեկ քառակուսի մետր բնակելի մակերեսի համար կազմում են մոտ 264 ռուբլի, կստացվի 2051 ռուբլի։ Աշխատանքային ռեզերվների բնակելի տան արժեքը նման աշխատանքների պատճառով թանկացել է 162 հազար ռուբլով, այսինքն՝ մեկ քառակուսի մետր բնակելի մակերեսի արժեքը թանկացել է 168 ռուբլով։ Էլեկտրատրեստի ցանցային շրջանի բնակելի տան արժեքը թանկացել է 130 հազար հինգ հարյուր ռուբլով, կամ 10,8 տոկոսով, որի հետևանքով մեկ քառակուսի մետր բնակելի մակերեսը թանկացել է 302 ռուբլով։



Որոշ դեպքերում բնակարանային շինարարությունը տեղաբաշխելիս, շինարարական հրապարակների ընտրության վրա լուրջ ուշադրություն չեն դարձնում, հաշվի չեն առնում նրանց ինժեներական և գեոլոգիական պայմանները, կառուցվող վայրում գոյություն ունեցող կառուցվածքների հեռանկարային զարգացումը, ինչպես նաև կառուցվող մագիստրալի, փողոցի կամ վայրի հեռանկարները։ Այդ պատճառով էլ ո՛չ միայն աճում է շենքի արժեքը, այլև կրճատվում է եղած բնակելի ֆոնդը։ Օրինակ, Երևանում, Հրազդանի աջ ափին կառուցվում են մի շարք շենքեր և, որովհետև հաշվի չեն առել տեղի գեոլոգիան, ստիպված են հիմնակետերը խորացնել ավելի քան 5 մետր, այսինքն՝ նորմալ շենքի ընդհանուր քարային աշխատանքների ծավալին ավելացնել 60 տոկոսից ավելի քարային աշխատանքներ, որպեսզի հասնեն համապատասխան գրունտի և ապա կառուցեն շենքը։ Սրան պետք է ավելացնել նաև ծանր հողային աշխատանքը, որը հիմնականում կատարվում է միայն ձեռքով (խոսքը ակոսներ փորելու մասին է)։ Նշված փաստի օրինակ է Շինարարության մինիստրության № 5 տրեստի այդ տեղամասում կառուցվող բնակելի տան շինարարությունը։ Այս շենքի հիմնատակի խորացման հետևանքով, սովորական 1,2 — 1,5 մետրի փոխարեն խորացված է 6,0 մետր։ Հողային աշխատանքների ծավալը կազմում է 6420 խոր. մետր, 700 — 800 խոր. մետրի փոխարեն (նույն շենքը նորմալ պայմաններում կառուցելիս)։ Սրա հետ մեկտեղ քարային աշխատանքների ծավալը 320 — 350 խոր. մետրից հասել է 1957 խոր. մետրի։ Այս բոլորին ավելացնենք նաև այն, որ անհրաժեշտ է եղել հիմքերում կառուցել 135 խոր. մետր երկաթբետոնե գոտի։ Այս ամենը թանկացնում է շինարարությունը մոտ 245 հազար ռուբլով։

Շինարարության արժեքի և, հատկապես, ինքնարժեքի իջեցման համար շատ մեծ նշանակություն ունի շինարարական տեղամասի, վայրի լրիվ ապահովվածությունը, ստորերկյա կոմունիկացիաներով՝ ջրամատակարարման, կոյուղու, հեռախոսի, գազի ջերմամատակարարման, էլեկտրական կալեկտորներով և մագիստրալներով։

Որպես կանոն մինչև շինարարական աշխատանքներն սկսելը պետք է պատրաստ լինեն նշված ինժեներական կառուցումները, ինչպես և գլխավոր փողոցները և դեպի շինարարությունը տանող ճանապարհները։

Սակայն, դժբախտաբար, մեզ մոտ այս բանի վրա լուրջ ուշադրություն չեն դարձնում։ Սկսվում է շենքի կառուցումը և ապա՝ ավարտելուց հետո, մաս-մաս կառուցվում են ինժեներական կառուցումները։ Այս դեպքում՝ նախ՝ թանկանում է շինարարական աշխատանքների արժեքը, քանի որ հիմնական կոմունիկացիաների բացակայությունը շինարարին ստիպում է

կառուցել ժամանակավոր, մինիմում ջրի և էլեկտրականության մատակարարման գծեր, որոնք հետագայում քանդվում են, չնայած, որ այդ աշխատանքների ծախսերը, որպես լրացուցիչ (չնախատեսված) ծախսեր, բարդվում են տվյալ շենքի ինքնարժեքի վրա և բարձրացնում այն։ Երկրորդ, երբ կոմունիկացիաները կառուցվում են շենքն ավարտելուց հետո, շատ աշխատանքներ (հատկապես հողային), որ կարելի էր նախօրոք կատարել մեքենաների կամ պայթեցման միջոցով, հաճախ ստիպված են լինում կատարել ձեռքով, որով և բարձրանում է բնակելի շինարարության ինքնարժեքը։ Բազմաթիվ օրինակներից կարելի է դարձյալ նշել Հրազդանի աջ ափում կառուցվող բնակելի զանգվածների կառուցման աշխատանքները։

Աշխատավորների դեպուտատների Երևանի քաղաքային Սովետի գործկոմի որոշմամբ 1959—1965 թվականներին Երևանի բնակելի շինարարության հիմնական տեղամասը Հրազդանի աջ ափն է, որից արդեն որոշ հիմնարկ-ձեռնարկություններ հողամասեր են ստացել բնակելի շենքերի կառուցման համար։ Սակայն այստեղ, ինչպես նաև Ծերեթելի և Զարբախ փողոցների կառույցներում դեռ մինչև այսօր չկան ո՛չ էլեկտրականություն, ո՛չ կոյուղի, ո՛չ ջրամատակարարման աղբյուրներ և ոչ էլ ճանապարհներ։ Այստեղի նորակառույցների աշխատողները ստիպված են իրենք պատրաստել էլեկտրասնուցման համար փոքրիկ տրանսֆորմատորներ, իսկ ջուրը տեղափոխել ավտոմեքենաներով։ Այս բոլորից հետո, իհարկե, կառուցվող բնակելի տների ինքնարժեքը անպայման ավելի բարձր կլինի նախահաշվային արժեքից, քանի որ նախահաշվում նման մատակարարումներ (ջուր և էլեկտրաէներգիա) երբեք չեն նախատեսվում։

Բացի այս, հաճախ այսպիսի վայրերում կառուցվող մագիստրալների արժեքը (որը երբեմն ավելի է, քան նորմալ պայմաններում կառուցվող բնակելի տան արժեքը), բարդվում է առաջինը կառուցվող բնակելի տների արժեքի վրա, որը ճիշտ չէ և կրկնակի չափով արհեստականորեն թանկացնում է բնակելի շինարարության արժեքը։ Որպեսզի հետագայում նորակառույցներին միացվող կոմունիկացիաները չփչացնեն, չքանդեն պատրաստի փողոցները, անհրաժեշտ է դրանք կառուցելիս (համաձայն գոյություն ունեցող նախագծերի) դրանց վրա կառուցել հորեր, թողնելով ճյուղեր հետագայում միացնելու համար. և եթե հետագայում այդ փողոցում շենքեր կառուցվեն, այլևս անհրաժեշտ չի լինի քանդել մայթերն ու փողոցները, խանգարել քաղաքի երթևեկությունը նորակառույցի կոմունիկացիաները միացնելու համար։ Այսպիսով, նախ կէժանանա բնակելի շենքի արժեքը և բացի այդ չեն լինի ասֆալտի խայտաբղետ կարկատանները։

Բնակելի շինարարության արժեքի իջեցման համար մեծ դեր է խաղում նաև նախագծում ծավալային-պլանավորման հաջող լուծումը, ինչպես՝ առանձին ծավալների ճիշտ տեղադրումը։ Ծավալների խնայողական պլանավորման շնորհիվ բնակելի տան մեկ քառակուսի մետր բնակելի մակերեսը, համեմատած մինչև այժմ օգտագործվող տիպային նախագծերի հետ, էժան կլինի մոտ 10 տոկոսով։

Այն բնակելի շենքերում, ուր նկուղային հարկի կառուցում չի նախատեսվում, մեկ քառակուսի մետր բնակելի մակերեսը, համեմատած նկուղային հարկ ունեցող բնակելի տների հետ, 4 — 5 տոկոսով էժան է նստում։ Սակայն մեր նախագծողները սխալ են մեկնաբանում այս բնակելի



մակերեսների արժեքի իջեցման փաստերը։ Վերջերս նրանք իրենց նախագծերից հանել են նկուղային հարկը և այն փոխարինել, այսպես կոչված, տեխնիկական հարկով (ընդհատակով)։ Վերջինս նույն նկուղային հարկն է, միայն 1,5 — 1,7 մետր բարձրությամբ։ Այսպիսով, նկուղային հարկի ընդհանուր աշխատանքների 60 — 70 տոկոսը կատարվում է։ Սովորական նկուղային հարկը օգտագործելի կարելի է համարել, եթե բարձրությունը 20 — 30 սմ բարձր է նշվածից, այսինքն՝ 1,90 — 2,00 մետր է։

Կառավարության ցուցմունքի համաձայն, այսուհետև բնակելի սենյակների բարձրությունը 3,0 մետրի փոխարեն պետք է նախագծել և կառուցել միայն 2,5 մետր։ Այս միջոցառումը էժանացնում է բնակելի մակերեսի արժեքը մոտավորապես 5 — 6 տոկոսով։

Զգալի խնայողություն կարելի է հասնել նաև կրճատելով բնակելի տների օժանդակ սենյակների ավելորդ մակերեսները, բայց կրճատել այնպես, որ չազդի բնակարանային հարմարանքների վրա։ Որոշ շենքերում կարելի է կառուցել նաև առանձին լողարան՝ փոքրիկ բաղնիք, կրճատելով բոլոր բնակարաններում կառուցվող վաննայի սենյակները. այդ լողարանից կարող են օգտվել տվյալ շենքի բոլոր բնակիչները. այս հնարավորություն կտա առանց դժվարության և մեծ ծախսերի միշտ ունենալ տաք ջուր։ Այս բաղնիքներին կից կարելի է կառուցել նաև ոչ շատ մեծ լվացքատուն, որը նույնպես կբարելավի բնակիչների կեցության պայմանները և, միաժամանակ, զգալիորեն կիջեցնի բնակելի մակերեսի արժեքը։

Շինարարության արժեքի իջեցման համար վճռական դեր են խաղում շինանյութերի տեսակներն ու օգտագործվող կոնստրուկցիաների ընտրությունը։ Կոնստրուկցիաների, ինչպես և շինանյութերի ընտրությունը կատարելիս պետք է ելնել այն հիմնական խնդրից, որ մեքենայացվեն կառուցումների բոլոր պրոցեսները, ընդ որում, այս դեպքում պետք է հաշվի առնել տեղական կոնկրետ պայմանները և նյութա-տեխնիկական բազան։

Մեզ մոտ, Հայաստանում, հիմնականում անհրաժեշտ է լուրջ փոփոխություններ կատարել պատերի կառուցվածքների կոնստրուկցիաների մեջ։ Շարի այն եղանակը՝ «միդիս»-ը, որն ընդունված է մեզնում, վերին աստիճանի հետամնաց է, շատ աշխատատար և հնարավոր չէ մաքսիմում չափով մեքենայացնել։ Հիմնական աշխատանքները (ինչպես քար տաշելը, շարելը) կատարվում են ձեռքով։ Գոյություն ունեցող բոլոր տեսակի շարերից շարի այս եղանակը պահանջում է անհամեմատ ավելի թաց պրոցեսներ, որոնք, իրենց հերթին, ձգձգում են շինարարության ավարտման ժամկետը և, հետևաբար, թանկացնում նրա արժեքը։ Բացի այդ, «միդիս»-ի շարվածքը համարվում է երրորդ կարգի շարվածք, որը Հայաստանի պայմաններում, առանց սեյսմիկ լուրջ միջոցառումների կիրառման, չի թույլատրվում օգտագործել, իսկ հակասեյսմիկ միջոցառումները պահանջում են երկաթի ու բետոնի լրացուցիչ ծախս, որը նույնպես զգալի չափով թանկացնում է շինարարության արժեքը։

Մեր ռեսպուբլիկայի շինարարության համար պատի կոնստրուկցիաների ռեալ էժանացումը պահանջում է, առաջին հերթին, հրաժարվել «միդիս» տիպի շարից, այն փոխարինելով պատի խոշոր պանելներով և կանոնավոր բլոկներով։ Կանոնավոր ձևի քարերից շարը կարելի է կատարել ինչպես բնական, այնպես էլ արհեստական բլոկներից. սրանք, իրենց հերթին,

կարող են լինել մանր կամ խոշոր: Արհեստական բլոկներ կարելի է պատրաստել մեր տուֆի հանքերում դարեր շարունակ կուտակված քարի մանրուքից, կամ ավելի թեթև շինանյութերից, ինչպիսիք են՝ պեմզան, վուլկանային շլակը, պերլիտը և այլն, որոնց պաշարները մեր ռեսպուբլիկայում անսպառ են: Կանոնավոր ձևի քարերից ու բլոկներից շարը «միդիս»-ի (և անգամ աղյուսի շարի) նկատմամբ ունի մի շարք առավելություններ: Ահա դրանցից մի քանիսը: Նախ, այս տիպի շարի դեպքում ձեռքի աշխատանքը հասնում է մինիմումի՝ ինչպես քարի մշակման, այնպես էլ պատի շարի պրոցեսներում: Նշանակում է, այս եղանակը հնարավորություն է տալիս պատի շարը հնարավորին չափ մեքենայացնել: Հնարավոր կլինի նաև զգալի չափով պակասեցնել պատի հաստությունը, այսինքն՝ կթեթևանա պատի, հետևաբար՝ շենքի քաշը, որն իր հերթին կնպաստի շենքի սեյսմոկայունությանը: Այս եղանակով կառուցված շենքերում զգալիորեն կթեթևացվեն կառուցվածքի միջոցառումները սեյսմիկ պահանջների նկատմամբ: Կկրճատվեն շենքի վրա (ավելի շուտ շարի ժամանակ) կատարվող թաց պրոցեսները, որով և կկրճատվի շենքի կառուցման ժամկետը:

Պատերի կոնստրուկցիաների էժանացման լավագույն եղանակներից մեկն էլ պատերի ամբողջական պանելների օգտագործումն է, որը մեծ տարածում է գտել Միության մի շարք խոշոր քաղաքներում և առավել չափով մեքենայացվում է շինարարությունը. մեր ռեսպուբլիկայի թեթև շինանյութերից կարելի է պատրաստել նման խոշոր պանելներ և հետամնաց «միդիս»-ը փոխարինել պատի լիակատար ինդուստրիալ կոնստրուկցիայով:

Կոնստրուկցիաների գծով շենքերի էժանացման համար մեծ նշանակություն ունի նաև միջնորմների կոնստրուկցիաների կատարելագործումը, այսինքն՝ գոյություն ունեցող բազմատեսակ մանր էլեմենտներից կազմվող միջնորմները, որոնք, բացի մեծաքանակ աշխատատար պրոցեսներից, պահանջում են նաև լրացուցիչ շինանյութ, գաջ կամ ցեմենտի շաղախ՝ շարելու և ծեփելու համար, փոխարինել միջնորմների պանելներով: Սրանք պատրաստվում են հատուկ գործարաններում, գլանման եղանակով: Նման պանելները չեն պահանջում ծեփային աշխատանքներ, տեղադրում են շենքերում վերամբարձների միջոցով (ամբողջական պատերի մեծությամբ), զերծ են թաց պրոցեսներից և ավելի քան երկու անգամ էժան են ներկա բոլոր տեսակի միջնորմներից: Շինարարության մինիստրությունը ձեռնարկել է Երևանում կառուցել նման պանելների արտադրման գործարան, որը տարեկան կարտադրի 400 000 քառակուսի մետր, կամ մոտ 25 000 հատ ամբողջական պանելներ, որոնք լրիվ կբավարարեն Երևան քաղաքի շինարարության պահանջները: Անհրաժեշտ է նշել նաև այն կարևոր հանգամանքը, որ նման պանելների հաստությունը ընդամենը 8 սանտիմետր է, իսկ ներկայումս կառուցվող միջնորմների հաստությունը՝ ծեփի հետ մեկտեղ, 15-ից 17 սմ է. սա նշանակում է, որ երբ սովորական եղանակի միջնորմների կոնստրուկցիաները փոխարինվում են գլանվող ամբողջական պանելներով, ընդարձակվում է նաև օգտակար մակերեսը:

Դռների, պատուհանների էժանացման համար անհրաժեշտ է ավելի շատ օգտագործել Ֆինլանդիայից ստացված պատուհանների և պատշգամբների, դռների օրինակները, այսինքն՝ միատեղ (спареное) պատուհանների և պատշգամբների, դռների բլոկները: Սրանք ներկայումս մեր կրկնակի



փեղկերով պատուհանների և դռների համեմատությամբ 35 տոկոսի փայտանյութի խնայողություն են տալիս: Այս ուղղությամբ մեզ մոտ բավականին գործ է արված, սակայն լիարժեք արդյունքների հասնելու համար անհրաժեշտ է ամբողջությամբ վերափոխել նախկին կրկնակի պատուհանների փեղկերը և ֆիլյոնկաներով դռները փոխարինել վերոհիշյալներով: Սովետական Միության Պետշինի կողմից հրապարակված մի քանի տվյալները ցույց են տալիս, թե բնակելի շինարարության մեկ քառակուսի մետր բնակելի մակերեսը կառուցելիս ինչպիսի խնայողության կարելի է հասնել, եթե ճիշտ և խնայողաբար օգտագործվեն հիմնական շինանյութերը և կիսաֆաբրիկատները, ինչպես նաև ճիշտ ընտրվեն բնակելի շինարարության կոնստրուկցիաները:

Պատի կոնստրուկցիաների և շինանյութերի գծով՝ 1-ից մինչև 3,5 տոկոս, ծածկերի և հատակների կոնստրուկցիաների և շինանյութերի գծով՝ 0,7-ից մինչև 7,9 տոկոս, աստիճանավանդակների կոնստրուկցիաների և շինանյութերի գծով՝ 0,35-ից մինչև 0,45 տոկոս, միջնորմների կոնստրուկցիաների և շինանյութերի գծով՝ 0,2-ից մինչև 0,8 տոկոս, դուռ-պատուհանների կոնստրուկցիաների գծով՝ 0,7-ից մինչև 1,8 տոկոս: Եթե ճիշտ օգտագործվեն ժամանակակից էֆեկտիվ կոնստրուկցիաները, տեղական շինանյութերը, հաշվի առնելով տեղական պայմանների յուրահատկությունները, տվյալ շինարարության նույն պայմաններում տեղի կունենա շինարարական աշխատանքների ռեալ էժանացում, որը մեկ քառակուսի մետր բնակելի մակերեսի համար կկազմի 10—15 տոկոս: Այստեղ անհրաժեշտ է նշել նաև այն հանգամանքը, որ կոնստրուկցիաների արժեքի իջեցման տեսակետից մեծ դեր է խաղում նրանց պատրաստման եղանակը՝ տեխնոլոգիան: Կոնստրուկցիաների պատրաստման տեխնոլոգիայի բարելավումից է կախված նրա արժեքի իջեցումը: Առայժմ կոնստրուկցիաների և կիսաֆաբրիկատների պատրաստման ոչ լրիվ մեքենայացման հետևանքով դեռ շատ դեպքերում ինքնարժեքը թողարկման գներից բարձր է լինում: Շենքի ընդհանուր արժեքի զգալի մասն են կազմում շինանյութերի տեղափոխումը, ինչպես նաև նրանց տեղադրման համար ծախսվող տրանսպորտի և մեխանիզմների ծախսերը: Շենքի քաշի իջեցման հետ մեկտեղ պակասում են նաև նշված ծախսերը: ՍՍՌՄ-ում, շենքի ծավալի միջին ծանրություն-քաշը (այսինքն՝ մեկ խորանարդ մետր շենքի քաշը) տատանվում է 270 կիլոգրամից 550 կիլոգրամի միջև: Ուրեմն, փոխադրականի և հավաքման-տեղադրման համար մի դեպքում երկու անգամ ավելի քիչ է ծախսվում, քան մյուս դեպքում: Այս ծախսը կազմում է շենքի ընդհանուր արժեքի ավելի քան 9—10 տոկոսը:

Բնակելի մակերեսի մեկ քառակուսի մետրի արժեքը 10 — 12 ռուբլով կարելի է իջեցնել՝ կառուցելով կենտրոնացված թաղային ընդհանուր կաթսայատուն, փոխանակ ամեն շենքի տակ առանձին-առանձին կաթսայատներ կառուցելու: Այս ուղղությամբ 1952 թվականին Երևանի քաղաքային Սովետը ձեռնարկեց մի արժեքավոր գործ: Նախքան նոր կառուցվելիք Կիևյան փողոցի բնակելի տների նախագծմանն անցնելը հանձնարարվեց նախագծել և ապա սկսել կենտրոնական կաթսայատան կառուցումը, որը սպասարկելու էր այդ փողոցի և նրան կից բոլոր բնակելի տները՝ ավելի քան երկու կիլոմետր երկարությամբ: Այս կաթսայատան շինարարությունը սկսվեց 1952 թվականի վերջին, սակայն հաջորդ երեք տարիներին,

չֆինանսավորվելու պատճառով, ընդհատվեց։ Այնուհետև այս օբյեկտը ֆինանսավորվում է աննշան գումարներով, որոնք կազմում են կառուցվածքի արժեքի ոչ ավելի, քան 5 — 7 տոկոսը։ Եթե այսպես շարունակվի, այդքան արժեքավոր գործը կավարտվի ոչ շուտ, քան տասը-տասներկու տարում, երբ արդեն ամբողջ փողոցի և նրան կից փողոցների բնակելի շենքերի շինարարությունը ավարտված կլինի։ Այս ամենի հետևանքով Կիևյան փողոցում կառուցված բազմաթիվ բնակելի տների նկուղային հարկերում հարմարեցվեցին, կամ բակերում կառուցվեցին ժամանակավոր կաթսայատներ, որոնց թիվը առ այսօր արդեն հասնում է 14-ի. ամեն մի նոր կառուցվող բնակելի տան հետ կառուցվում է և նրա ժամանակավոր կաթսայատունը, որը թանկացնում է բնակելի տան արժեքը։

Անհրաժեշտ է նշել, որ շինարարության նախահաշվային արժեքը որոշող ներկայումս գործող մեթոդը անտեսում է շինարարության ինքնարժեքի վրա ազդող մի շարք հանգամանքներ։ Դրանցից են՝ կառուցվածքների հարկերի օպտիմալ ընտրությունը և կառուցվող տների տեսակների քանակի սահմանափակումը, հիմնական շինարարական կոնստրուկցիաների, դետալների և սարքավորումների կրկնությունը, կառուցվածքների ռացիոնալ տեղաբաշխումը և տեղամասերի ժամանակին նախապատրաստումը, խնայողական մեխանիզմների և աշխատանքի ընտրությունը, որոնք կապահովեն բնակելի շենքերի շահագործման հանձնելը հավասարապես ամբողջ տարվա ընթացքում, և, վերջապես, բնակելի տների մեծ զանգվածների հոսքային եղանակով կառուցումը։

Բնակելի շինարարության արժեքի իջեցման համար կարևոր նշանակություն ունի նաև շենքի կառուցման ժամկետի կրճատումը, որը կախված է մի շարք կարևոր միջոցառումներից։ «Գլավմոսստրոյի» գործունեությունը ցույց է տվել, որ շինարարության կառուցման ժամկետի կրճատումը մեկ ամսով տալիս է շինարարության ինքնարժեքի մոտ 1,3 տոկոսի իջեցում։

Շինարարության արժեքի իջեցման համար մեծ նշանակություն ունի նաև աշխատանքի ճիշտ կազմակերպումը, որից կախված են շինարարության ժամկետի կրճատումը և մի շարք այլ կարևոր հանգամանքներ։ Ժամանակակից աշխատանքի ճիշտ կազմակերպման ամենաառաջավոր եղանակը արագընթաց հոսքային եղանակն է, որը պահանջում է աշխատանքի կազմակերպման հատուկ մշակված նախագիծ ու նրա բացարձակ ճշգրիտ իրականացում։ Դժբախտաբար այդ եղանակը մեզ մոտ շատ քիչ է կիրառվում, քանի որ ինչպես շինարարները, այնպես էլ պլանավորող ու մատակարարող կազմակերպությունները այս գործին նայում են մատների արանքով։ Շինարարական աշխատանքների հոսքային մեթոդի կիրառումը կապահովի շինարարության ռիթմը և բնակելի մակերեսների հավասարապես ավարտումը տարվա ընթացքում, որը կառուցողներին հնարավորություն կտա ունենալ համեմատաբար կայուն քանակությամբ բանվորներ։

Վերջերս մեծ թափ է ստանում խտացրած գրաֆիկով աշխատանքը, որը հնարավորություն է տալիս լիկվիդացնել մինչև այժմ գոյություն ունեցող սեզոնային (?) մակերեսներ պահանջող շինարարական հրապարակները։ Նախագծի և կառուցման տեխնոլոգիայով նախատեսված շինարարական աշխատանքների մաքսիմում մեքենայացման, ինչպես և մատակարարման մանրամասն մշակված հատուկ գրաֆիկի շնորհիվ նշված ժամին շենք են



բերվում հավաքման համար պատրաստի կոնստրուկցիաներ և մեքենայից վերամբարձ կռունկների միջոցով անմիջապես դրվում նախագծված տեղում։ Այս եղանակը մաքսիմում չափով կրճատում է շինանյութերի և կիսաֆաբրիկատների հորիզոնական և ուղղահայաց տեղափոխումը, որը նվազեցնում է մեխանիզմների օգտագործման, ինչպես նաև շենքի կառուցման համար պահանջվող ժամկետը։ Այսպիսի շենքերի վրա աշխատում է ընդամենը 12 — 16 մոնտաժող բանվոր։ Նույն ծավալի շենքերը կառուցելիս այդ նույն աշխատանքները կատարելու համար սովորաբար աշխատում է ոչ պակաս քան 60 — 100 բանվոր։

Բնակելի շենքի ինքնարժեքի իջեցման համար մեծ նշանակություն ունի շինարարական աշխատանքների որակը։ Փորձերը ցույց են տվել, որ անորակ աշխատանքներն ուղղելու համար հաճախ ծախսվում են ավելի շատ միջոցներ, քան, ասենք, այդ աշխատանքի արժեքն է։ Անորակ աշխատանքի շտկումը, ինչպես նաև աշխատանքի անբարեխիղճ կատարումը պատճառ են դառնում մեծ քանակով լիարժեք շինանյութի փչացման, որը ստիպված են շենքից հեռացնել որպես «շինարարական աղբ»։ Շինարարական աղբը թանկագին շինանյութերի խառնվածքն է, որը շենքի արժեքի վրա արդեն նստած է եղել որպես ծախս. լրացուցիչ ծախսով էլ այն հեռացվում է շենքից, որի մեկ խորանարդ մետրը նստում է 180 — 200 ռուբլուց ոչ պակաս։ Այս բոլորի հիմնական պատճառներից մեկն այն է, որ մեր աշխղեկներից շատերը, որոնք անմիջապես ղեկավարում են շինարարական աշխատանքները, չունեն համապատասխան տեխնիկական կրթություն, չեն համապատասխանում իրենց պաշտոնին և, որ ավելի կարևորն է, նրանցից շատերը անփույթ են իրենց պարտականությունների կատարման մեջ և զուրկ պատասխանատվության զգացումից։

Ինչպես տեսնում ենք, բազմաթիվ ուղիներ և հնարավորություններ կան բնակելի շինարարության արժեքի իջեցման համար։ Դրանք գործի վերածելու համար անհրաժեշտ է, որ շինարարական կազմակերպություններն ու նրանց ղեկավարները հաշվի առնեն այս ամենը և, ելնելով տվյալ կառույցի ու տեղի պայմաններից, արդյունավետ օգտագործեն իրենց տրամադրված բոլոր միջոցները, ստեղծագործական մոտեցում ցուցաբերեն աշխատանքի խելացի կազմակերպման, կոնստրուկցիաների ու շինանյութերի ճիշտ ու խնայողական օգտագործման ուղղությամբ։ Բարեխիղճ աշխատանքը կապահովի շինարարության ինքնարժեքի իջեցումը և կբարձրացնի նրա որակը։

# «ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՈՒՐՎԱԳԾԵՐ»-Ի ՄԱՍԻՆ

*Վերջերս Հայաստանի Կոմունիստական պարտիայի Կենտկոմը քննության առավ «Հայաստանի Կոմունիստական պարտիայի պատմության ուրվագծեր»-ի հարցը։*

*Իր ընդունած որոշման մեջ ՀԿՊ Կենտկոմը նշեց, որ ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի Հայկական ֆիլիալի կողմից պատրաստված և 1958 թվականին հրատարակված այդ աշխատությունը Հայաստանի Կոմունիստական պարտիայի պատմության սիստեմատիկ շարադրման առաջին փորձն է, և որպես այդպիսին՝ նշանակալի երևույթ ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպության կյանքում։ ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի Հայկական ֆիլիալը և հեղինակային կոլեկտիվը, ասված է որոշման մեջ, որոշակի աշխատանք են կատարել Հայաստանի պարտիական կազմակերպությունների պատմության ու գործունեության վերաբերող փաստական նյութի հավաքման ու սիստեմավորման ուղղությամբ։ «Ուրվագծեր»-ի հեղինակները կարողացել են Հայաստանի Կոմպարտիայի պատմությունը շարադրել ՍՄԿՊ պատմության հետ սերտորեն շաղկապված և ցույց տալ, որ Հայաստանի պարտիական կազմակերպությունների գործունեությունն անբաժանելի է Ռուսաստանում սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի և ՍՍՌՄ-ում սոցիալիզմի կառուցման համար՝ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի մղած ընդհանուր պայքարից։*

*Միաժամանակ ՀԿՊ Կենտկոմը արձանագրեց, որ թերի մշակման և թույլ տրված սխալների հետևանքով «Հայաստանի Կոմունիստական պարտիայի պատմության ուրվագծեր»-ը պարտիական կազմակերպությունների պատմության վերաբերյալ իսկական գիտական աշխատության նշանակություն չստացավ։ «Ուրվագծեր»-ի ուսումնասիրությունը և քննարկումը պարտիական ակտիվի և գիտական հասարակայնության կողմից, բացահայտեց այդ աշխատության մեջ եղած լուրջ թերություններն ու սխալները։ ՍՄԿՊ Կենտկոմին կից ՄԼԻ-ի Հայկական ֆիլիալը (նախկին դիրեկտոր Ա. Ն. Մնացականյան) և «Ուրվագծեր»-ի հեղինակները՝ Վ. Ավետիսյանը, Գ. Մնեյանը, Գ. Ղարիբջանյանը, Ա. Հակոբյանը և Ա. Մնացականյանը, չկարողացան լուծել իրենց առջև դրված խնդիրները։ Մի շարք սխալներ, որ «Ուրվագծեր»-ի որոշ հեղինակներ անցյալում թույլ էին տվել իրենց աշխատություններում, տեղ են գտել «Հայաստանի Կոմունիստական պարտիայի պատմության ուրվագծեր»-ի մեջ։*

*«Հայաստանի Կոմունիստական պարտիայի պատմության ուրվագծեր»-ը, ասված է այնուհետև Կենտկոմի որոշման մեջ, ամբողջությամբ առած, գրված է տեսական ու գաղափարական ցածր մակարդակով և չի համապատասխանում պարտիայի պատմության վերաբերյալ լուրջ գիտական հետա-*



*զոտություններին ներկայացվող բարձր պահանջներին։ «Ուրվագծեր»-ի հեղինակները մակերեսայնորեն են վերաբերվել պատմական փաստերի ընտրությանն ու վերլուծությանը։ Բազմաթիվ պնդումներ չեն հաստատվում փաստերով և լոկ դեկլարատիվ բնույթ են կրում։ Աշխատության մեջ չկա պատմական իրադարձությունների ու փաստերի մարքս-լենինյան խոր վերլուծություն ու ընդհանրացում, չի տրված մեր երկրի զարգացման յուրաքանչյուր էտապում պարտիայի գլխավոր գծի համար Հայաստանի Կոմունիստական պարտիայի մղած պայքարի նշանակության հստակ գնահատականը։ «Ուրվագծեր»-ում կարևոր նշանակություն ունեցող բազմաթիվ հարցեր տեսականորեն չեն ընդհանրացվել, իսկ մի շարք հարցեր հեղինակների կողմից կամ շրջանցվել են կամ սխալ են լուսաբանվել։ Խոր և հստակ չեն պարզաբանվել այնպիսի հարցեր, ինչպիսիք են՝ մասսաների նվաճման և նացիոնալիստական պարտիաների ազդեցությունից նրանց զերծ պահելու համար Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների պայքարի դժվարությունները, 1920 թվականի մայիսյան ապստամբության պարտության պատճառները, Հայաստանում բանվորների ու գինվորների դեպուտատների Սովետների ստեղծումն ու նրանց դերը, տարբեր քաղաքական պարտիաների ու խմբերի գործունեությունը՝ Սովետական իշխանության հաստատման համար Հայաստանի Կոմունիստական պարտիայի մղած պայքարի ժամանակաշրջանում և այլ հարցեր։*

*«Ուրվագծեր»-ում արծարծվել են Հայաստանի Կոմպարտիայի պատմության հետ ուղղակի առնչություն չունեցող հարցեր, ընդ որում չի տրված դրանց սպառիչ պատասխանը, իսկ ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների գործունեությանը վերաբերող այլ հարցեր մոռացության են տրված։*

*ՀԿՊ Կենտկոմը նշեց, որ «Ուրվագծեր»-ում առանձնապես ցածր է Հայաստանում Սովետական իշխանության հաստատման և Հայաստանի Կոմունիստական պարտիայի՝ սովետական ժամանակաշրջանի պատմությանը նվիրված գլուխների շարադրման տեսական մակարդակը։ «Ուրվագծեր»-ում տեսական ցածր մակարդակով են լուսաբանված այնպիսի հարցեր, ինչպիսիք են՝ Սովետական իշխանության հաստատման համար Հայաստանի Կոմունիստական պարտիայի մղած պայքարի պայմանները, մասնավորապես Ադրբեջանում Սովետական իշխանության հաղթանակի նշանակությունը, Կոմունիստական պարտիայի քաղաքականությունը գյուղում և բանվոր դասակարգի ու գյուղացիության դաշինքի հարցերը, երկրի ինդուստրացման ու գյուղատնտեսության կոլեկտիվացման քաղաքականության կենսագործումը և շատ այլ հարցեր։ Երբեմն էլ այդ հարցերը լուսաբանելիս թույլ են տրվել սխալներ։*

*Մի շարք դեպքերում, առանձին պարտիական կազմակերպությունների և անձնավորությունների գործունեությունը լուսաբանելիս թույլ է տրվել սուբյեկտիվիստական մոտեցում, որը և հանգեցրել է իրականության աղավաղմանը։ «Ուրվագծեր»-ում չի տրված հայկական բուրժուա-նացիոնալիստական կազմակերպությունների գաղափարախոսության քաղաքական էության հստակ բնութագիրը, պարզորոշ կերպով ցույց չի տրված դրա նկատմամբ մեր պարտիայի մարքսիստական-լենինյան գաղափարախոսության հակադիր լինելը և անհաշտելիությունը։ Գրքում պակասում է մարտական, հարձակո-*

ղական ոգին, նրանում փորձ է արված մեղմացնել Հայաստանի Կոմունիստական պարտիայի պայքարի սրությունը նացիոնալիզմի ռեցիդիվների և այդ ուղղությամբ արված շեղումների դեմ, որ թույլ են տվել Հայաստանի Կոմունիստական պարտիայի մի քանի ղեկավար գործիչներ 1922—1928 թվականներին։

Հայաստանի Կոմունիստական պարտիայի կազմակերպական և քաղաքական գործունեության հարցերը «Ուրվագծեր»-ում լուսաբանված են մակերեսորեն, դեկլարատիվ և ֆորմալ ձևով։ Հայաստանի պարտիական կազմակերպության հսկայական արդյունավետ աշխատանքը մնում է ստվերի տակ։ Աղոտ, սխեմատիկ և առանց խոր գիտական վերլուծության է ցույց տրված կարևոր իրադարձություններով լի՝ ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպության կյանքը հնգամյակների տարիներին, Հայրենական Մեծ պատերազմի և խաղաղ շինարարության հետպատերազմյան տարիներին, առանձնապես վերջին տարիների ընթացքում և ՍՄԿԿ XX համագումարից հետո, երբ իրագործվեց արդյունաբերության և գյուղատնտեսության նոր, հզոր վերելքը։

«Ուրվագծեր»-ում առանձնապես անբավարար են լուսաբանված ՍՄԿԿ և Հայաստանի Կոմպարտիայի համագումարները, որոնք կարևոր ուղենիշ են հանդիսանում պարտիայի կյանքում։ «Ուրվագծեր»-ում թույլ են տրվել անփույթ ձևակերպումներ, կան անճշտություններ թվական տվյալների մեջ։ Քիչ չեն նաև լեզվական վրիպումները, ոճական անճշտությունները։

«Հայաստանի Կոմունիստական պարտիայի պատմության ուրվագծեր»-ի խմբագիրներ ընկ. ընկ. Հ. Մարգարյանը, Ա. Մնացականյանը և Խ. Բարսեղյանն անպատասխանատվություն են ցուցաբերել ՀԿԿ Կենտկոմի 1957 թ. սեպտեմբերի 27-ի որոշման կատարման հարցում՝ տպագրության հանձնելով լուրջ թերություններ և սխալներ պարունակող «Ուրվագծեր»-ը։

Կենտկոմը սխալ է համարում «Հայաստանի Կոմունիստական պարտիայի պատմության ուրվագծեր»-ի մասին «Սովետական Հայաստան» թերթում Վ. Համազասպյանի միակողմանի, ոչ օբյեկտիվ և ընթերցողներին ապակողմնորոշող գրախոսականի հրապարակումը։

Հաշվի առնելով, որ «Հայաստանի Կոմունիստական պարտիայի պատմության ուրվագծեր»-ն իր տեսական և գաղափարական մակարդակով չի համապատասխանում պարտիայի պատմության վերաբերյալ լուրջ գիտական հետազոտություններին ներկայացվող բարձր պահանջներին և նրանում կան լուրջ թերություններ ու սխալներ, ՀԿԿ Կենտրոնական Կոմիտեն իր ընդունած որոշման մեջ անհրաժեշտ համարեց՝ առաջիկա տարիներում ստեղծել Հայաստանի Կոմունիստական պարտիայի պատմության գիտական լիարժեք աշխատություն։ Այդ նպատակով հանձնարարվել է ՍՄԿԿ Կենտկոմին կից ՄԼԻ-ի Հայկական ֆիլիալին՝ միջոցառումներ մշակել Հայաստանի Կոմպարտիայի պատմության նոր աշխատության ստեղծման համար, այդ գործին ներգրավելով հեղինակային լայն կոլեկտիվ՝ առավել պատրաստված պատմաբաններին, փիլիսոփաներին, տնտեսագետներին, իրավաբաններին։

Կենտկոմը ՄԼԻ-ի Հայկական ֆիլիալի և հեղինակային կոլեկտիվի ուշադրությունը հրավիրեց այն բանի վրա, որպեսզի հանգամանորեն հայտաբերվեն, գիտականորեն մշակվեն ու ընդհանրացվեն պարտիական-պատմական փաստաթղթերն ու նյութերը, խոր գիտական լուսաբանման ենթարկվեն պատմական իրադարձությունները, փաստերն ու երևույթները։ Միաժամանակ անհրաժեշտ համարվեց մինչև նոր աշխատության հրապարակումը կազմակերպել նրա պատրաստի գլուխների և մակետի նախնական լայն քննարկում։

---



# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԱՊԱՐԱՏԻ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՈՒՄԻՑ ՀԵՏՈ

Հ. ԻԿԻԼԻԿՅԱՆ

ՍՄԿԿ XXI համագումարը խնդիր դրեց՝ կազմակերպական և քաղաքական աշխատանքը բարձրացնել պարտիական կազմակերպությունների առջև դրված նոր, վիթխարի խնդիրների մակարդակին, կատարելագործել պարտիական ղեկավարությունը տնտեսության բոլոր բնագավառներում։

ՀԿԿ Արթիկի շրջանային կոմիտեի ապարատի վերակառուցումից հետո վերացվեցին պրոպագանդայի ու ագիտացիայի, կազմակերպական և ընդհանուր բաժինները։ Դրանց փոխարեն ավելացվեց անմիջական կազմակերպիչների և կատարողների թիվը այն մարդկանց հաշվին, որոնք զբաղված էին «ղեկավար հրահանգներ» տալով։

Եթե առաջներում պարտիական ապարատի թերություններն իրենց զգացնել էին տալիս պրակտիկ գործունեության ամեն մի քայլափոխում, ապա այժմ այդ թերությունները գնալով նվազում են, իր գործելակերպով ապարատը ավելի ճկուն և օպերատիվ է դառնում, առավել հեշտությամբ են կենսագործվում նրա առջև դրված խնդիրները։

Շրջկոմի պատասխանատու կազմակերպիչներն այժմ սպասարկում են ավելի քիչ թվով սկզբնական պարտիական կազմակերպությունների։ Այսպես, օրինակ, նախկինում, մինչև շրջկոմի ապարատի վերակառուցումը, շրջկոմի կազմակերպական բաժնում աշխատող երկու հրահանգիչներ սպասարկում էին ութսունից ավելի պարտիական կազմակերպության, յուրաքանչյուրը գործ ուներ 15 կոլտնտեսության, մեկ ՄՏ կայանի և բազմաթիվ այլ հիմնարկների ու ձեռնարկությունների հետ։ Նույնքան պարտիական կազմակերպություններում պարտիական պրոպագանդան և քաղաքական ագիտացիան ղեկավարում էին պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի վարիչը և բաժնի մեկ պրոպագանդիստը։ Այդպիսի պայմաններում, աշխատողներն իրենց կամքից անկախ, սկզբնական պարտիական կազմակերպություններին չէին կարող կոնկրետ օգնություն ցույց տալ, խորանալ կոլտնտեսությունների, ՄՏ կայանների, հիմնարկությունների և ձեռնարկությունների աշխատանքում, մոտիկից ճանաչել կոմունիստներին, պարտիական ակտիվին, կադրերին։ Հրահանգիչներն ու շրջկոմի բաժնի վարիչները սկզբնական պարտիական կազմակերպություններում լինում էին դեպքից դեպք, հանձնարարություններ տալու, կամ հաշվետու-ընտրական ժողովներին մասնակցելու համար։ Շատ դեպքերում հրահանգչի աշխատանքը պարտիական կազմակերպությունների քարտուղարների հետ սահմանափակվում էր հեռախոսային կապով, նրանցից այս կամ այն հարցի մասին տվյալներ պահանջելով, զեկուցումներ և ինֆորմացիաներ գրելով, որը գործին ու կազմակերպություններին կոնկրետ օգնություն ցույց տալու փոխարեն թղթային կույտեր էր ստեղծում։

ՀԿՊ Արթիկի շրջկոմի ապարատի վերակառուցումից հետո ավելացավ պատասխանատու կազմակերպիչների թիվը։ Դա հնարավորություն տվեց նրանցից յուրաքանչյուրին ամրացնել 2—3 կոլտնտեսային և 3—4 հիմնարկային պարտիական կազմակերպություն։

Շրջկոմի պատասխանատու կազմակերպիչը լինելով կոլտնտեսությունում, ՆՏ կայանում, հիմնարկում կամ ձեռնարկությունում՝ չի զբաղվում միայն գործերի վիճակի ուսումնասիրությամբ և շրջկոմի ղեկավարների համար ինֆորմացիաներ կամ զեկուցագրեր կազմելով։ Տեղերում կազմակերպությունների քարտուղարների հետ միասին նա կազմակերպում է թերությունների վերացման գործը, նպաստում աշխատանքների բարելավմանը, հարցերի կոնկրետ լուծմանը։

Հայտնի է, թե այս օրերին ստեղծագործ աշխատանքի ինչպիսի մեծ վերելք է ապրում մեր Հայրենիքը։ Յոթնամյակը ժամկետից շուտ կատարելու համար ծավալված համաժողովրդական շարժումը դարձել է այն կենսահաստատ ուժը, որը նպատակ ունի լուսավոր ուղիներ հարթել կոմունիզմի կառուցման համար։ Աշխատանքային մեծ խանդավառություն է տիրում նաև Արթիկի շրջանի կոլտնտեսություններում ու սովետական տնտեսություններում, արդյունաբերական ձեռնարկություններում ու մյուս տեղամասերում։ Այժմ, ավելի քան երբեք, պարտիական կազմակերպությունների առջև բացվել է ստեղծագործ աշխատանքի լայն ասպարեզ։

Ձգտելով հմտորեն գլխավորել համագումարի որոշումներով ոգեշնչված մարդկանց աշխատանքային պայքարը, պարտիայի շրջանային կոմիտեն իր պատասխանատու կազմակերպիչների և պարտիական ողջ ակտիվի միջոցով պարբերաբար ուսումնասիրում է գործերի վիճակը տեղերում, ուղղություն տալիս պարտիական-սովետական կազմակերպությունների և կոլեկտիվների գործունեությանը։

Ահա մի քանի բնորոշ օրինակներ։ Շրջկոմի պատասխանատու կազմակերպիչ Ժ. Պետրոսյանը, որն ամրացված է Պեմզաշենի և Տուֆաշենի կոլտնտեսությունների սկզբնական պարտիական կազմակերպություններին, իր ժամանակը հիմնականում անց է կացնում կոլտնտեսություններում, ուշադիր ունկնդրում է կոմունիստների ու անպարտիական ակտիվիստների կարծիքներն ու առաջարկությունները։ Վերջերս լինելով Պեմզաշենում, ընկ. Պետրոսյանը արտելի վարչության և բյուրոյի միատեղ նիստում խնդիր դրեց հետևել ույազանցիների հայրենասիրական նախաձեռնությանը՝ գյուղատնտեսական արտադրության յոթնամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համար։ Այնուհետև պատասխանատու կազմակերպիչը և արտելի ղեկավարները հանգամանորեն ուսումնասիրեցին ու բացահայտեցին այն ռեզերվներն ու հնարավորությունները, որոնց խելացի օգտագործմամբ կարելի է հասնել յոթնամյա առաջադրանքների ժամկետից շուտ կատարմանը։ Ուսումնասիրված նյութերը դրվեցին կոլտնտեսականների ընդհանուր ժողովի քննարկմանը։ Պեմզաշենցիները ջերմորեն պաշտպանեցին ույազանցիների նախաձեռնությունը և իրենց հերթին պարտավորվեցին յոթնամյա առաջադրանքները կատարել 2—3 տարում և մինչև 1963 թվականը անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնել 1,5—2 անգամ։ Մինչև 1962 թվականը յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց ապահովել ոչ պակաս 20 գլուխ կով և այդ նույն ժամանակամիջոցում փուրաժային կովի կաթնատվությունը հասցնել



1800 կիլոգրամի, 100 հեկտար հողատարածության դիմաց արտադրել 368 ցենտներ կաթ, 600 կիլոգրամ բուրդ, 86 ցենտներ միս (կենդանի քաշով)։

Այսպես, անցյալում ետ մնացող կոլտնտեսությունն այսօր դարձել է մեծ կանխագծումներ իրականացնող։ Ընթացիկ տարվա անցած երկու ամիսների արդյունքները ակնառու կերպով ցույց են տալիս, որ պեմզաշենցիները անպայման կկատարեն իրենց պարտավորությունները։

Հայրենասիրական հիանալի շարժում է սկսվել Վարդաքար, Փանիկ, Նորկյանք, Պարնի, Մեծ Մանթաշ, Նորաշեն գյուղերի կոլտնտեսություններում, Հնաբերդի և Արթիկի սովետական տնտեսություններում, որոնց աշխատավորները պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ պայքարում են կաթի, մսի, բրդի արտադրության շեշտակի վերելքի համար։

Շրջկոմի ապարատի վերակառուցումը մեծապես օգնեց՝ ապահովելու նաև արդյունաբերության օպերատիվ ղեկավարությունը։ Հայտնի է, որ Արթիկտուֆը քար է մատակարարում ո՛չ միայն մեր ռեսպուբլիկայի, այլև եղբայրական ռեսպուբլիկաների շատ շինարարական կառույցների։ Ընթացիկ յոթնամյակում 2,5—3 անգամ ավելանալու է տուֆաքարի արտադրությունը, ընդ որում սրբատաշ շինաքարի արտադրությունը 1965 թվականին այստեղ հասցըվելու է 200 հազար խորանարդ մետրի, տուֆաբլոկների արտադրությունը՝ 15 հազար խորանարդ մետրի, սովորական շինաքարինը՝ 86 հազար խորանարդ մետրի։ Սկսված է արհեստական տուֆաբլոկների գործարանի շինարարությունը, որը 1962 թվականին շահագործման կհանձնվի և երկրի կառույցների համար տարեկան կարտադրի կես միլիոն խորանարդ մետր տուֆաբլոկ և շինարարական ավազ։

Նոր պայմաններում առանձնահատուկ նշանակություն է ստանում տեխնիկական պրոգրեսի ապահովումը տուֆի արտադրության մեջ, մի բան, որը կապված է գյուտարարական-ռացիոնալիզատորական առաջարկությունների լայն արմատավորման հետ։ Ահա թե ինչու ՍՄԿՊ XXI համագումարի այն պահանջը, որ առաջիկայում էլ պետք է հետևողականորեն խթացնել գյուտարարների և ռացիոնալիզատորների շարքերը՝ հանուն սոցիալիստական արդյունաբերության տեխնիկական վերելքի, դրվեց պարտշրջկոմի ուշադրության կենտրոնում։ Շրջկոմի պատասխանատու կազմակերպիչ ընկ. Ա. Ղազարյանը, որն սպասարկում է Արթիկ-տուֆի պարտիական կազմակերպությանը, զբաղվեց այն հարցով, թե ինչպիսի վիճակում է գտնվում նորարարական և ռացիոնալիզատորական առաջարկությունների ուսումնասիրության և արտադրության մեջ արմատավորման գործը։ Պարզվեց, որ շատ առաջավոր բանվորներ, ինժեներներ և տեխնիկներ զբաղված են նորարարությամբ և բազմաթիվ արժեքավոր առաջարկություններ են արել, սակայն գիտական խորհրդի կողմից նկատվող բյուրոկրատական քաշքշուկի հետևանքով ժամանակին քննության չեն առնվում նորարարական ու ռացիոնալիզատորական առաջարկությունները, չեն ընդունվում ու ձևակերպվում արժեքավոր առաջարկները, նրանց համար աշխատանքային անհրաժեշտ պայմաններ չեն ստեղծվում։ Դրա պատճառով երկար ժամանակ ընթացք չէր տրվում նորարարներ Վ. Հակոբյանի, Հ. Խաչատրյանի և մյուսների առաջարկություններին, իսկ առանձին դեպքերում նկատվում էր անբարյացակամ վերաբերմունք նրանց նկատմամբ։ Արթիկ-տուֆում աշխատանքի շատ ծանր տեսակներ՝ քարի մեծ զանգվածները առանձին կտորների վերածելը, քարը ավտոմեքենաներն ու վագոնները բարձելը կատարվում

են ձեռքով։ Եվ, չնայած, որ այդ առաջարկությունները ուղղված էին նշված աշխատատար պրոցեսների մեքենայացման նպատակին, ո՛չ միայն Արթիկ-տուֆի, այլև Հայկական ՍՍՌ Ժողտնտխորհի Շինանյութերի արդյունաբերության վարչության ղեկավարները անտարբեր վերաբերմունք ցույց տվեցին դրանց նկատմամբ։ Պարտշրջկոմի պատասխանատու կազմակերպիչ ընկ. Ղազարյանը նպատակահարմար գտավ ուսումնասիրության արդյունքները ներկայացնել շրջկոմի բյուրոյի քննարկմանը։ Գործնական միջոցառումներ մշակվեցին Արթիկ-տուֆում նորարարական ու ռացիոնալիզատորական առաջարկությունների արմատավորման գործում տեղ գտած թերությունները վերացնելու ուղղությամբ, որը մեծ չափով օգնեց գործին։

Նորաշենի, Գեղադիրի, Մեծ Մանթաշի և Լեռնակերտի կոլտնտեսությունները, չնայած զարգացման լայն հնարավորություններին, տևականորեն ետ էին մնում։ Անհրաժեշտ եղավ լրջորեն ուսումնասիրել նրանց հնարավորությունները և դրանց կենսագործման միջոցները։ Պարզվեց, որ Նորաշենի, Մ. Մանթաշի և Գեղադիրի կոլտնտեսություններում ավելի քան 150 հեկտար տարածություն տարիների ընթացքում չի մշակվել, վեր է ածվել խոպանի, իսկ այդ կոլտնտեսությունների ղեկավարները միշտ էլ տրտնջացել են վարելահողի սակավությունից։ Այդ հարցի ուսումնասիրության արդյունքները շրջկոմի պատասխանատու կազմակերպիչներ ընկ. ընկ. Սարոյանը, Ղազարյանը և Պետրոսյանը ներկայացրին շրջկոմի բյուրոյի քննարկման։ Մշակվեցին գործնական միջոցառումներ. աշնանը այդ հողատարածությունները փշերից ու տատասկներից ազատվեցին։ Ընթացիկ տարում այդ հողերը կդրվեն ցանքի տակ։

ՍՄԿՊ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումը, XXI համագումարը խնդիր դրեցին՝ գյուղատնտեսության բնագավառում լայնորեն ընդհանրացնել ու տարածել գիտության նվաճումներն ու առաջավոր փորձը, հասնել աշխատանքի նորագույն ձևերի արմատավորման, առավել օգտավետ մեթոդների ու միջոցների կիրառման այն հաշվով, որ գյուղատնտեսության բոլոր ճյուղերից ստացվեն ավելի շատ եկամուտներ։

Շրջկոմի պատասխանատու կազմակերպիչ Ֆ. Մկրտչյանը, շատ հաճախ լինելով իրեն ամրացված Նոր-կյանք գյուղի կոլտնտեսության պարտիական կազմակերպությունում, մոտիկից ճանաչեց ո՛չ միայն ակտիվին, այլև շարքային կոլտնտեսականներին։ Նրան հետաքրքրեց կոլտնտեսության կթվորուհի Արուսյակ Ալեքսանյանի աշխատանքը։ Արուսյակը երիտասարդ կթվորուհի է, 8 տարի է, ինչ աշխատում է կովաբուծական ֆերմայում։ Անցյալ տարի իրեն ամրացված տեղական յուրաքանչյուր կովից ստացավ 2050 կգ. կաթ։ Մկրտչյանը գլխավոր զոոտեխնիկ Գ. Մինասյանի հետ ուսումնասիրեց առաջավոր կթվորուհու աշխատանքի փորձը։ Ուսանելի շատ բան կար Արուսյակի աշխատանքում։ Մկրտչյանի առաջարկությամբ շրջկոմի բյուրոն որոշեց ընդհանրացնել և շրջանի կոլտնտեսություններում ու սովետական տնտեսություններում արմատավորել նրա աշխատանքի փորձը։ Շրջկոմի պատասխանատու կազմակերպիչները զոոտեխնիկների օգնությամբ այն հաղորդեցին բոլոր կթվորուհիներին։ Առաջավոր փորձի արմատավորման նպատակով շրջկոմն անհրաժեշտ գտավ բոլոր կոլտնտեսությունների վարչությունների նախագահներին, պարտիական կազմակերպության քարտուղարներին, կովաբուծական ֆերմայի վարիչներին և զոոտեխնիկներին տանել Նոր-կյանք կոլտնտեսության կովաբուծական ֆերմա՝ ծանոթացնելու այն նորի ու առաջավորի հետ, որ կիրառվում է այդ կոլտնտեսությունում՝ կովերի կաթնատվությունը բարձրացնելու նպատակով։ Ձեռնարկված միջոցառումների հետևանքով այս տարի շրջանի կոլտնտեսություններում զգալիորեն ավելացել է կաթի արտադրությունը։



Ապարատի վերակառուցման առաջին շրջանում որոշ մարդիկ, այդ թվում և ապարատի մի քանի աշխատողներ, կարծում էին, որ բաժինների լիկվիդացումը կհասցնի քաղաքական, ագիտացիոն-մասսայական աշխատանքների թուլացման, նրա իդեական մակարդակի իջեցման։ Այդ ենթադրությունները ճիշտ դուրս չեկան։ Ավելին, պարտիայի շրջանային կոմիտեն այժմ առավել լուրջ կերպով է զբաղվում գաղափարական-քաղաքական աշխատանքներով, քան առաջ։ Պատճառը պարզ է։ Եթե նախկինում շրջկոմի ապարատում դասախոսություններ ու զեկուցումներ կարդալը, քաղդպրոցների ու խմբակների աշխատանքների ղեկավարումը կազմակերպում էին միայն պրոպագանդայի բաժնի վարիչը և այդ բաժնի մեկ պրոպագանդիստը, ապա ապարատի վերակառուցումից հետո դասախոսություններով և զեկուցումներով հանդես են գալիս շրջկոմի բոլոր 10 պատասխանատու կազմակերպիչները, որոնք ղեկավարում և օգնություն են ցույց տալիս նաև պարտիական լուսավորության աշխատանքներին։ Պարտիական լուսավորության ընթացիկ ուսումնական տարում գործն այնպես կազմակերպվեց, որպեսզի կոմունիստները ամենայն խորությամբ ուսումնասիրեն պարտիայի պատմությունը։ Պարտիայի պատմությունն ուսումնասիրող 18 խմբակում ընդգրկված են 337 կոմունիստ։ Ուշադրության կենտրոնում է կոմունիստների, տնտեսավարների տնտեսագիտական պատրաստականությունը բարձրացնելու խնդիրը։ Այդ նպատակով կոնկրետ էկոնոմիկան ուսումնասիրող 7 խմբակում ընդգրկված են 122 հոգի։ Այս տարի շրջանային կոմիտեն հատուկ ուշադրություն է հատկացրել կոլտնտեսությունների վարչությունների նախագահների հետ տարվող աշխատանքները բարելավելուն։ Շրջանային կոմիտեին կից ստեղծված է գյուղատնտեսության էկոնոմիկան ուսումնասիրող թեորիական սեմինար, որտեղ ընդգրկված են բոլոր կոլտնտեսությունների վարչությունների նախագահները, սովետական տնտեսությունների դիրեկտորները և պարտիական կազմակերպությունների քարտուղարները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների աշխատությունները ինքնուրույն կերպով ուսումնասիրում են 419 կոմունիստ։ Այսպիսով, ընթացիկ ուսումնական տարում պարտիական լուսավորության ցանցի օղակներում ընդգրկված են 1686 կոմունիստ, 161 կոմերիտական և 84 անպարտիական ակտիվիստ։

Պարտիական կազմակերպությունները ներկայումս հաջողությամբ են գլխավորում ՍՄԿՊ XXI համագումարի որոշումների և նյութերի պրոպագանդումը։ Պարտիայի շրջանային կոմիտեն մեծ օգնություն է ցույց տալիս սկզբնական կազմակերպություններին՝ ուղարկելով զեկուցողներ ու դասախոսներ։ Յոթնամյակի կոնտրոլ թվերը պատկերող ցուցահանդեսներ են կազմակերպվում ակումբներում ու գրադարաններում։ Շրջկոմն իր աշխատողների միջոցով ձգտում է, որպեսզի համագումարի նյութերի ու որոշումների պրոպագանդան լինի մարտական, մոբիլիզացնող բնույթ, սերտորեն կապված լինի ժողովրդի աշխատանքային գործերի, յոթնամյակի իրականացման համար մղվող պայքարի հետ։

Լայնորեն ծավալվում է համագումարի նյութերի ուսումնասիրությունը քաղաքական լուսավորության սիստեմում։ Յուրաքանչյուր կոմունիստ ձգտում է խորապես ըմբռնել և յուրացնել կոմունիստական հասարակարգի կառուցման

տեսական պրոբլեմները, յոթնամյա պլանի կոնկրետ խնդիրները, որպեսզի հաստատ կերպով և վստահորեն իր տեղը գրավի կոմունիզմի համար մղվող պայքարի առաջավոր դիրքերում, լինի պարտիայի գլխավոր գծի բոցաշունչ պրոպագանդիստը և ակտիվ մարտիկը։

Շրջկոմի ապարատի վերակառուցումը մեծապես նպաստեց կադրերի ընտրության-տեղաբաշխման և դաստիարակության գործի բարելավմանը։ Այժմ շրջկոմի համար ավելի մեծ հնարավորություն է ստեղծվել մոտիկից ճանաչելու մարդկանց, նրանց առաջքաշման ժամանակ ղեկավարվելու պարտիական սկզբունքներով՝ հաշվի առնելով նրանց գործնական հատկանիշներն ու քաղաքական արժանիքները։

Այժմ, երբ շրջկոմի պատասխանատու կազմակերպիչների դերն ու պատասխանատվությունը ավելի է բարձրացել, ամենից առաջ պետք է հատուկ ուշադրություն դարձնել նրանց ընտրության և նրանց հետ տարվող աշխատանքի վրա։ Շրջկոմը որպես պատասխանատու կազմակերպիչներ առաջ քաշեց անհրաժեշտ պատրաստականություն, պարտիական և տնտեսական աշխատանքի փորձ ունեցող մարդկանց։ Կարևոր է նաև նրանց օգնություն կազմակերպելու խնդիրը։ Որպես կանոն, ամիսը երկու անգամ նրանց հետ կազմակերպվում է խորհրդակցություն, որտեղ նրանք շրջկոմի քարտուղարներին պատմում են, թե ինչպես են կատարել ստացած հանձնարարությունները, որից հետո ամփոփվում են արդյունքները. այնուհետև նրանց ուշադրությունը հրավիրվում է հետագա անելիքների վրա, տրվում են նոր հանձնարարություններ։ Պատասխանատու կազմակերպիչների համար սիստեմատիկաբար կազմակերպվում են սեմինար պարապմունքներ՝ պարտիական շինարարությանը վերաբերող թեմաների շուրջը, ինչպես նաև հոգ է տարվում նրանց տնտեսագիտական գիտելիքների հարստացման մասին։

Պարտիական ապարատի վերակառուցումը ինքնանպատակ գործ չէ և ոչ էլ միայն կազմակերպական միջոցառում։ Պարտիական ապարատի վերակառուցման նպատակն է՝ բարձրացնել պարտիական ղեկավարության մակարդակը տնտեսության նկատմամբ, հաջողությամբ լուծել տնտեսական ու կուլտուրական շինարարության խնդիրները։

Արթիկի շրջանը հաջողությամբ փակեց 1958 թվականի տնտեսական տարին։ Շրջանի կոլտնտեսությունները ժամկետից շուտ կատարեցին և գերակատարեցին պետությանը միս, կաթ և բուրդ վաճառելու պլանները։ Սակայն դրանք նախնական քայլերն են այն հսկայական խնդիրների լուծման բնագավառում, որոնք առաջադրված են պարտիայի և կառավարության կողմից։ Այդ խնդիրների հաջող լուծման, գյուղատնտեսության հուժկու վերելքն ապահովելու համար անհրաժեշտ է ամեն կերպ ուժեղացնել մասսաների մեջ տարվող քաղաքական ու կազմակերպական աշխատանքը, ամեն ինչ ի սպաս դնել կյանք մտած փառահեղ յոթնամյակի կատարմանը։

---

# ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹՅՈՒՆԸ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՀԱՋՈՂՈՒԹՅԱՆ ԿԱՐԵՎՈՐ ՊԱՅՄԱՆՆ Է

ԱՇ. ՍԱՐԳՍՅԱՆ

Պարտիայի շրջկոմը քաղաքական օրգան է, որն իր գործունեության ընթացքում ելնում է պարտիայի ու պետության շահերից, ապահովում նրանց որոշումների և դիրեկտիվների անշեղ կենսագործումը։ Շրջկոմից է կախված շրջանի պարտիական ու տնտեսական շինարարության, կուլտուրական կյանքի հետ կապված հարցերի լուծումը։

Փորձը ցույց է տալիս, որ այնտեղ, ուր պարտիայի շրջկոմը աշխատում է ճիշտ մեթոդներով, նորմալ զարգանում է գյուղատնտեսական արտադրությունը, ամրապնդվում կոլտնտեսությունների ու սովետական տնտեսությունների էկոնոմիկան, բարելավվում է ՆՏ կայանների աշխատանքը։ Պարտիայի գյուղական շրջկոմի ուժը կյանքին խորամուխ լինելու, մասսաների մեջ կազմակերպական ու քաղաքական գործունեություն ծավալելու և աշխատանքում նախաձեռնություն հանդես բերելու մեջ է։

Պարտիայի շրջկոմը բազմաթիվ թելերով կապված է առաջավոր մարդկանց հետ։ Նորի ծիլերը ժամանակին տեսնելու կարողությունը, նրանց ամրապնդմանն ու զարգացմանը նպաստելը պարտիայի գյուղական շրջկոմի գործունեության կարևորագույն կողմն է. ղեկավարել գյուղատնտեսությունը՝ նշանակում է ամենից առաջ ուսումնասիրել, ընդհանրացնել և տարածել առաջավոր փորձը, գիտության նվաճումները, հայտաբերել նոր ռեզերվներ, եռանդուն կերպով հետևել առաջավորների հաջողություններին, օգնել մարդկանց՝ ստեղծագործական մտահղացումների ու խիզախումների իրականացման գործում, այնպես կազմակերպել աշխատանքը, որ նրանք չհանգստանան ձեռք բերած հաջողություններով և շարունակեն առաջ գնալ։

ՍՄԿՊ XX համագումարից հետո զգալիորեն բարելավվել է պարտիական կազմակերպական և քաղաքական աշխատանքը, կատարելագործվել են նրա ձևերն ու մեթոդները, բարձրացել կոլեգիալ ղեկավարության դերն ու նշանակությունը։ Պարտիական աշխատանքը կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում գնալով ավելի բազմակողմանի է դառնում։ Պարտիայի շրջկոմները նոր եռանդով են պայքարում ՍՄԿՊ XXI համագումարի որոշումների իրականացման համար։

Այդ տեսակետից ուսանելի է Շամշադինի, Մարտունու և այլ գյուղական շրջկոմների աշխատանքի փորձը։ Հիշյալ պարտիական շրջկոմները, որպես կանոն, նախքան որևէ կարևոր միջոցառում անցկացնելը, խորհրդակցում են գյուղի առաջավոր մարդկանց հետ, ուշադրությամբ ունկնդրում նրանց ձայնին, կշռադատում և հաշվի առնում յուրաքանչյուր արժեքավոր դիտողություն։ Աշխատանքի այսպիսի պրակտիկան նրանց հնարավորություն է տալիս հմտորեն վճռելու հանրային տնտեսության զարգացման հարցերը։

ՍՄԿՊ Կենտկոմի 1953 թվականի Սեպտեմբերյան պլենումը դրեց գյուղատնտեսության բոլոր ճյուղերի շեշտակի վերելքի հարցը։ Պարտիայի Շամշադինի շրջկոմը՝ ուղեցույց ունենալով պլենումի պատմական որոշումները, վերակառուցեց տնտեսությունը ղեկավարելու ձևերն ու մեթոդները։ Շրջկոմի կատարած աշխատանքի արդյունքը եղավ այն, որ շրջանը բռնեց վերելքի ուղին։ Եթե 1953 թվականին շրջանի կոլտնտեսությունների դրամական եկամուտը կազմում էր 19,2 միլիոն ռուբլի, ապա 1958 թվականին այն հասավ 43 միլիոն ռուբլու։

Չնայած կլիմայական անբարենպաստ պայմաններին, անցյալ տարի շամշադինցիները աճեցրին լավ բերք և մեծ չափով բարձրացրին անասնաբուծության մթերատվությունը։ Շամշադինցիները ռեսպուբլիկայում հայտնի դարձան որպես առաջավոր ծխախոտագործներ և իրենց լավ փորձով օրինակ են հանդիսանում մյուս շրջանների ծխախոտագործների համար։ Համառ աշխատանքի շնորհիվ այստեղ ծխախոտի պլանտացիաների յուրաքանչյուր հեկտարից ստացված դրամական եկամուտը տարեցտարի աճում է։

Պրակտիկայով ապացուցված է, որ տնտեսական հաջողությունները հարատև չեն կարող լինել, եթե նրանք չեն ամրապնդվում քաղաքական աշխատանքով. Վ. Ի. Լենինը շատ մեծ կարևորություն էր տալիս մասսաների գիտակցության բարձրացմանը, նա նշում էր, որ պետությունը ուժեղ է մասսաների գիտակցականությամբ, ուժեղ է այն դեպքում, երբ մասսաները գիտեն ամեն ինչ, ամեն ինչի մասին կարող են դատել և ամեն ինչ անում են գիտակցաբար։

Կենսագործելով Լենինի այս ցուցումը, Շամշադինի պարտշրջկոմը սիստեմատիկ քաղաքական դաստիարակչական աշխատանք է կատարում բնակչության շրջանում, որպեսզի մարդիկ գիտակցեն պարտիայի ու կառավարության ձեռնարկած միջոցառումների անհրաժեշտությունը, համոզվեն, որ դրանք բխում են իրենց շահերից։ Շրջանում գործում են ավելի քան 350 ագիտատոր, արտահաստիքային 26 դասախոս, լույս են տեսնում 27 պատի թերթ և 55 բրիգադային ինֆորմացիայ։

ՍՄԿՊ XXI համագումարի որոշումները մասսայականացնելու և դրանք կյանքում կենսագործելու ուղղությամբ աշխատավորությանը մոբիլիզացնելու համար պարտիայի շրջկոմը գործի է կոչել պրոպագանդիստների ու ագիտատորների մեծ կոլեկտիվ, որի անդամները սիստեմատիկորեն զեկուցումներ են կարդում, զրույցներ են անցկացնում արտադրական օբյեկտներում ու կոլտնտեսություններում։

Տնտեսական հաջողությունների բախտը որոշում են կադրերը։ Այսպես, կոլտնտեսության լավ նախագահ ունենալու դեպքում ետ մնացող կոլտնտեսությունը շրջկոմի օգնությամբ, կազմակերպական համառ աշխատանքի միջոցով կարելի է հասցնել առաջավորներին։ Պարտիայի Շամշադինի շրջանային կոմիտեն կադրերը դաստիարակում է նրանց սեփական սխալների վրա, չմոռանալով նոր մարդկանց առաջքաշման գործը։ Կադրերի թարմացումը վերջերս կատարվում է առավելապես ի հաշիվ մասնագետների։ Կոլտնտեսության նախագահներ են առաջ քաշվում այնպիսի բրիգադավարներ ու ֆերմայի վարիչներ, որոնք աչքի են ընկել բարեխիղճ աշխատանքով, արդարացրել են իրենց։

Շրջկոմը կադրերի ընտրության հետ մեկտեղ սիստեմատիկաբար զբաղ-



վում է նաև նրանց որակավորման և տեսական գիտելիքների բարձրացմամբ։ Շրջանում կազմակերպված է առաջավոր փորձի դպրոց, որտեղ հաճախում են կոլտնտեսությունների նախագահներ, ֆերմաների վարիչներ, բրիգադավարներ և շատ առաջավոր կոլտնտեսականներ։ Առաջավոր փորձի դպրոցում մեծ մասամբ ուսումնասիրում են, թե որ կոլտնտեսությունն ի՞նչ հաջողություններ ունի և գործը ինչպե՞ս է կազմակերպել առաջավոր դառնալու համար։ Այս միջոցառումը, անշուշտ, մեծ չափով նպաստում է այս կամ այն կոլտնտեսության աշխատանքի առաջավոր մեթոդները մյուս կոլտնտեսություններում կիրառելու գործին։

Աշխատանքի լավ փորձ ունի նաև ՀԿՊ Մարտունու շրջանային կոմիտեն։

Բրիգադան և ֆերման կոլտնտեսային արտադրության վճռական օղակներն են. դրա համար էլ շրջկոմը պարտիական սկզբնական կազմակերպությունների և կոլտնտեսությունների վարչությունների հետ միասին ուշադրությամբ ուսումնասիրեց բրիգադավարների, ֆերմաների վարիչների կազմը։ Հարկ եղավ ազատվել ֆերմաների անգործունյա վարիչներից և բրիգադավարներից, նրանց փոխարեն առաջ քաշվեցին ընդունակ, գրագետ և աշխատասեր մարդիկ։ Աշխատանքի մեջ վճռական բեկում մտցնելու նպատակով դաշտավարական բրիգադներն ուղարկվեցին ավելի քան 200 կոմունիստ և կոմերիտական. շուրջ 200 կոմերիտական և երիտասարդ աշխատանքի անցան անասնաբուծության բնագավառում։ Արտադրության մեջ աշխատող կոմունիստների և կոմերիտականների ճիշտ տեղաբաշխումը շրջկոմին հնարավորություն տվեց դաշտավարական 18 բրիգադայում և անասնաբուծական 13 ֆերմայում ստեղծել պարտիական խմբեր։

Պարտիայի շրջկոմը հատուկ ուշադրություն է հատկացնում տնտեսապես ետ մնացող կոլտնտեսություններին։

Չկար մի պլենում կամ ակտիվի նիստ, որտեղ չխոսվեր Երանոս գյուղի կոլտնտեսության ետ մնալու մասին։ Շրջանային կոմիտեն օգնեց Երանոս գյուղի կոլտնտեսային պարտիական կազմակերպությանը՝ բարելավելու աշխատանքի կազմակերպումը, բարձրացնելու կադրերի պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ։ Ցածր բերք ստանալու և աշխօրերը շռայլելու համար բրիգադավարները ազատվեցին աշխատանքից։ Գործից ազատվեց նաև կովաբուծական ֆերմայի վարիչը, որը պարզապես աչքակապությամբ էր զբաղվում։ Տասը կոմունիստ ուղարկվեցին արտադրություն՝ շարքային աշխատանք կատարելու։ Ժամանակին կազմակերպվեցին դաշտերի պարարտացման և բերքահավաքի աշխատանքները։ ՆՏ կայանի օգնությամբ կոլտնտեսությունը ժամանակին և բարձր որակով կատարեց 1958 թվականի գյուղատնտեսական աշխատանքները։ Նախորդ տարիների համեմատ 1958 թվականին հացահատիկի արտադրությունն ավելացավ 3 հազար, կարտոֆիլինը՝ 2,400, ծխախոտինը՝ 270 ցենտներով, կաղամբի բերքատվությունը հեկտարից հասավ 300 ցենտների։ Ավելացավ նաև անասնաբուծական մթերքների արտադրությունը։ Կոլտնտեսականները 1958 թվականին աշխօրերի դիմաց ստացան բավականաչափ հացահատիկ, յուղ, պանիր, այլ մթերքներ և դրամ։

1958 թվականին Մարտունու շրջանում աճեցվեց լավ բերք, ժամանակին կատարեցին բերքահավաքը, և մեծ չափով բարձրացավ հանրային անասնաբուծության մթերատվությունը։

Շրջկոմը մոբիլիզացնելով շրջանի աշխատավորությանը՝ զգալի աշխատանք է կատարել տրակտորահարմար հողերի մեծ տարածություններ ստեղծելու և դրանք քարերից մաքրելու նպատակով: Կոլտնտեսությունները 4000 հեկտար հողատարածություն մաքրել են քարերից, 6500 հեկտարի վրա անց են կացրել ջրատար առուներ:

Մարտունու շրջանը, որը ռեսպուբլիկայում ետ մնացող շրջաններից էր, արդեն անցնում է առաջավորների շարքը:

Սակայն դեռևս կան նաև այնպիսի շրջկոմներ, որոնք կոնկրետ, խոր և բանիմաց կերպով չեն ղեկավարում կոլտնտեսությունների, ՆՏ կայանների ու սովետական տնտեսությունների աշխատանքը: Եղեգնաձորի շրջանում (խոսքը վերաբերում է մինչև 1958 թվականի վերջերին) տարիներ շարունակ ստանում էին գյուղատնտեսական կուլտուրաների ցածր բերք, դանդաղ էր աճում հանրային անասնաբուծության մթերատվությունը: Այգեգործության զարգացման վրա անհրաժեշտ ուշադրություն չէր դարձվում: Հացահատիկային կուլտուրաների բերքահավաքի և ծխախոտի տերևաքաղը կատարվում էր անկազմակերպ, թույլ էին տրվում հացահատիկի և ծխախոտի հումքի մեծ կորուստներ: Կոլտնտեսություններում կային աշխատանքային կարգապահության խախտման բազմաթիվ դեպքեր:

Շրջանային պարտիական վերջին կոնֆերանսը իրավացիորեն նշեց, որ գյուղատնտեսության նկատմամբ շրջկոմի ցույց տված ղեկավարությունը հիմնված չէր տնտեսական խոր հաշվարկման, կոլտնտեսությունների և ՆՏ կայանների գործունեության վերլուծման և ընդհանրացման, ռեզերվների հայտաբերման ու օգտագործման վրա:

Շրջկոմը, շրջսովետի գործկոմը, ՆՏ կայանը հարկ եղածին պես չգիտեին կոլտնտեսությունների էկոնոմիկան, այն բարձրացնելու հնարավորություններն ու ուղիները, որի հետևանքով շրջանի մի շարք կոլտնտեսություններ կազմակերպորեն և տնտեսապես ետ էին մնում: Կոլտնտեսությունները շատ մեծ հնարավորություններ ունեին այգեգործության և խաղողագործության զարգացման համար, բայց սկզբնական կազմակերպությունները և կոլտնտեսությունների վարչությունները հարկ եղած ուշադրությունը չէին հատկացնում դրանց օգտագործմանը: Ինչպես 1957, այնպես էլ 1958 թվականին չկատարվեց այգետնկման պլանը:

Շրջկոմը անբավարար էր զբաղվում նաև անասնապահության զարգացման հարցերով, որի հետևանքով էլ շրջանը չկատարեց անասնապահության զարգացման պետական առաջադրանքները:

Լուրջ թերություններ ու բացեր կային գյուղատնտեսական արտելի կանոնադրության կենսագործման, աշխատանքի կազմակերպման, վարձատրման ու կարգապահության գործում: Վերնաշեն, Սալի, Աղքենդ գյուղերի կոլտնտեսություններում շատ կոլտնտեսականներ օգտվում էին իրենց համար սահմանված արտոնություններից, բայց իրենք կոլտնտեսություններում չէին աշխատում: Շրջանում 1400-ից ավելի կոլտնտեսականներ չեն կատարել աշխօրերի պարտադիր մինիմումը: Պարտիական սկզբնական կազմակերպությունները կոլտնտեսային արտադրության նկատմամբ թույլ էին կենսագործում իրենց վերահսկողության ֆունկցիան:

Պարտիայի շրջկոմի նոր ղեկավարությունը պետք է վճռականապես հաղ-



թահարի աշխատանքի հին ոճը և բարելավի ղեկավարությունը պարտիական կազմակերպությունների նկատմամբ:

Նոյեմբերյանի շրջանի պարտիական կոնֆերանսում պատգամավորները նշեցին, որ շրջանը մեծ հնարավորություններ ունի գյուղատնտեսության, առանձնապես այգեգործության և խաղողագործության զարգացման համար: Բայց այդ հնարավորությունները վատ են օգտագործվում: Այգեգործությունից և խաղողագործությունից ստացվող եկամուտները նախորդ տարիների համեմատությամբ ո՛չ միայն չեն ավելացել, այլ նույնիսկ իջել են: Շրջկոմը լիովին չէր օգտագործում այն լայն հնարավորությունները, որ շրջանը ունի գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու համար: Այսպես, օրինակ, շատ քիչ է կովերի գլխաքանակը հանրային հոտում, մեծ է ստերջության տոկոսը, անցյալ տարի անասունների զգալի անկում է տեղի ունեցել: Շրջկոմի նախկին բյուրոն շրջանի գյուղատնտեսության ետ մնալը հաղթահարելու համար միջոցառումներ մշակելու և իրագործելու փոխարեն ժամանակի մեծ մասը վատնել է անսկզբունք վեճերի ու խմբծանքների քննարկման վրա, սխալներ է թույլ տվել կադրերի ընտրության հարցում: Շրջկոմը ղեկավար աշխատողներին չի դաստիարակել շրջանի առջև դրված խնդիրների կատարման համար բարձր պատասխանատվության, թերությունների նկատմամբ անհանդուրժողականության ոգով:

Հաջող ղեկավարության գլխավոր պայմանը ո՛չ միայն շրջկոմի ապարատի եռանդուն, ջանասեր աշխատանքն է, այլև պարտիական, սովետական, տնտեսական և հասարակական կազմակերպությունների, աշխատավորության բոլոր ուժերը շարժման մեջ դնելու կարողությունը:

Վ. Ի. Լենինը սովորեցնում էր. «Որպեսզի միայն խոսքով չդառնանք մասսաների պարտիա, մենք պետք է ավելի ու ավելի լայն մասսաների մասնակից դարձնենք բոլոր պարտիական գործերին» (հ. 7, էջ 131):

Եթե վատ է աշխատում կոմերիտական շրջանային կոմիտեն, իսկ պարտիայի շրջկոմը չի զբաղվում կոմերիտմիության շրջկոմի աշխատանքով, նշանակում է՝ թուլացել է պարտիական ազդեցությունը երիտասարդության նկատմամբ, բարձիթողի է արված երիտասարդության կոմունիստական դաստիարակության գործը: Պարտիական կազմակերպությունները, օրինակ, անմիջական պատասխանատվություն են կրում տեղական Սովետների գործունեության համար: Սակայն դա չի նշանակում, որ պետք է աշխատել նրանց փոխարեն և հանձն առնել նրանց ֆունկցիաները: Անհրաժեշտ է նշել, որ պարտիայի առանձին շրջկոմներ Սովետների ղեկավարման գործում թույլ են տալիս ավելորդ միջամտություն, փոխարինում են նրանց տնտեսական և այլ հարցեր լուծելիս, մոռանում են պարտիայի այն կարևորագույն ցուցումը, որ՝ «Շփոթել պարտիական կոլեկտիվների ֆունկցիաները պետական օրգանների, այն է՝ Սովետների ֆունկցիաների հետ, ոչ մի դեպքում հարկավոր չէ... իր որոշումները պարտիան պետք է անցկացնի սովետական օրգանների միջոցով, Սովետական Կոնստիտուցիայի շրջանակներում: Պարտիան ջանում է ղեկավարել Սովետների գործունեությունը, բայց չփոխարինել նրանց» (ՍՄԿՊ-ն... բանաձևերում, I մաս, էջ 565):

Աղինի շրջանի կոլտնտեսություններում խիստ ընկած էր կարգապահությունը: 1958 թվականի տնտեսական տարում շատ կոլտնտեսականներ չէին կատարել աշխօրերի պարտադիր մինիմումը: Իսկ մի մասն էլ ոչ մի աշխօր

չէր վաստակել։ Խոշոր և մանր եղջերավոր անասունների անկման տոկոսը շրջանի կոլտնտեսություններում զգալի չափերի էր հասնում։ Ուշադրությունից դուրս է մնացել թռչնաբուծությունը։ Սակայն այս հարցերից և ոչ մեկը քննության չի առնվել շրջսովետի գործկոմի նիստերում ու սեսիաներում։ Երբ հարց էր տրվում շրջսովետի գործկոմի աշխատողներին, թե ինչո՞ւ են այդ կարգի հարցերը անուշադրության մատնված, նրանք պատասխանում էին. «Շրջկոմը մեզ հերթ չի տալիս»։ Եվ իրոք, այդ այդպես էր։ Փոխանակ օգնելու և ուղղություն տալու շրջսովետի գործկոմին և նրա բաժիններին, շրջկոմը ամբողջությամբ իր վրա էր վերցրել շրջգործկոմի ֆունկցիաները։

Պարտիայի շրջանային կոմիտեի ճիշտ ղեկավարությունը Սովետների նկատմամբ իրականացնելու համար ամենից առաջ անհրաժեշտ է սովետական օրգանները ապահովել փորձված, քաղաքականապես պատրաստված աշխատողներով, որոնք ընդունակ լինեն անցկացնել պարտիայի գիծը։ Շրջկոմի դերն է՝ սովետական ղեկավար կադրերին համբերությամբ դաստիարակել հանձնարարված գործի համար խիստ պատասխանատվության, սովետական ապարատի աշխատանքում եղած թերությունների նկատմամբ անհաշտ վերաբերմունքի, պետական կարգապահության ամրապնդման ոգով։

Պարտիայի շրջկոմները պետք է ակտիվացնեն Սովետներում եղած պարտիական խմբերի աշխատանքը, բարձրացնեն նրանց դերն ու պատասխանատվությունը։

Պարտիական շրջկոմի աշխատանքը, ամենից առաջ, մարդկանց հետ կատարվող աշխատանք է, ժողովրդի մեջ կատարվող աշխատանք։

Պարտիական աշխատողը քաղաքական աշխատող է։ Ամեն օր նա հանդիպում, լուծում է պարտիական, տնտեսական և իդեոլոգիական աշխատանքի ամենաբազմազան հարցեր, որը պահանջում է նրանից լավ ըմբռնել դրանց էությունը և ճիշտ ուղղություն տալ զանազան կազմակերպությունների ու հիմնարկների գործունեությանը։ Իսկ դրա համար նրան անհրաժեշտ է բազմակողմանի պատրաստություն։

Պարտիական գյուղական շրջկոմների համար այժմ չկա ավելի կարևոր բան, քան ՍՄԿՊ XXI համագումարի պատմական որոշումների անշեղ կենսագործումը։ Շրջկոմները պետք է ցուցաբերեն մասսաներին համախմբելու և կազմակերպելու իրենց ողջ հմտությունը, զարգացնեն նրանց ստեղծագործական նախաձեռնությունն ու ակտիվությունը, նրանց տանեն իրենց հետևից, որպեսզի կոլտնտեսային ու սովետական տնտեսությունների արտադրության զարգացման գործում նոր հաջողությունների հասնեն։

Գյուղատնտեսության առջև կանգնած նոր, վիթխարի խնդիրների լուծումը շրջկոմների առջև մեծ պահանջներ է դնում՝ ամեն կերպ բարձրացնել պարտիական սկզբնական կազմակերպությունների մարտունակությունը, նրանց դերը կոմունիստական շինարարության բոլոր բնագավառներում։

Պարտիայի շրջկոմը ամեն կերպ պետք է զարգացնի պարտիական մասսաների ակտիվությունը, նրանց բոլոր ջանքերը ուղղի՝ պայքարելու պարտիայի ու կառավարության որոշումների կատարման համար։ Կոմունիստները կոչված են օրինակ ծառայելու աշխատանքում, նրանք պետք է տիրապետեն սեփական գործի տեխնիկային, ակտիվորեն պաշտպանեն այն ամենը, ինչ նոր է, առաջավոր, անհաշտ վերաբերմունք ունենան թերությունների,



ինքնահանգստացման, հնամոլության ու լճացման դրսևորումների նկատմամբ։

Գյուղական շրջկոմների համար գյուղատնտեսական արտադրության հետագա վերելքի վճռական պայմանը գյուղատնտեսության ղեկավարման մակարդակի բարձրացումն է։ Այժմ գյուղատնտեսությունը անընդհատ վերելք է ապրում։ Օր օրի ավելանում է հացահատիկի և անասնապահական մթերքների արտադրությունը։ Աճել ու ամրապնդվել է գյուղատնտեսության աշխատողների հավատը իրենց ուժերի նկատմամբ։ Նրանք ներկայումս այնպիսի լուրջ հարցեր են լուծում, որոնք հնարավոր չէր դնել նախորդ տարիներին։

Այժմ գյուղական շրջկոմների առաջ խնդիր է դրվում գործն այնպես կազմակերպել, որ յուրաքանչյուր կոլտնտեսություն և սովետական տնտեսություն ուշի ուշով հաշվի առնի իր հնարավորությունները 1959 թվականին՝ յոթնամյակի առաջին տարում, գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և անասնաբուծության մթերատվությունը զգալիորեն բարձրացնելու համար։

Պլանները կազմելիս հարկավոր է բազմակողմանիորեն հաշվի առնել կոլտնտեսությունների և սովետական տնտեսությունների ռեզերվներն ու հնարավորությունները։ Նրանց արտադրական պլաններում պետք է արտացոլվեն այն բոլոր միջոցառումները, որոնք կապահովեն գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության հետագա բարձրացում։ Անհրաժեշտ է առավել մեծ ուշադրություն հատկացնել կերի կայուն բազայի ստեղծմանը, եգիպտացորենի ցանքատարածությունների ընդարձակմանը, անասունների գլխաքանակի ավելացմանը, խոզաբուծության և թռչնաբուծության զարգացմանը։

Շրջկոմը պետք է ապահովի յուրաքանչյուր կոլտնտեսության, սովետական տնտեսության, ՆՏ կայանի կոնկրետ գործնական ղեկավարումը, ամեն կերպ պաշտպանի մասսաների նախաձեռնությունը, բարձրացնի գյուղատնտեսության աշխատողների, այդ թվում նաև ղեկավար կադրերի նյութական շահագրգռվածությունը գյուղատնտեսական արտադրության ընդլայնման գործում։

Պարտիայի շրջկոմը պետք է գլխավորի և լայնորեն ծավալի համաժողովրդական սոցիալիստական մրցությունը, է՛լ ավելի բարձրացնի կոլտնտեսային գյուղի աշխատավորության ստեղծագործական նախաձեռնությունը, այն ուղղելով ՍՄԿՊ XXI արտահերթ համագումարի կողմից առաջադրված խնդիրների իրականացման նպատակին։

Պարտիական կոմիտեները պարտավոր են անընդհատ կատարելագործել իրենց աշխատանքի ոճը, միշտ փնտրել ու գտնել նոր ձևեր, վճռականորեն հրաժարվել հնից, քարացածից, իր դարն ապրածից։

---

## ՈՒՇԱԳՐԱՎ ՓՈՐՁ

### Լ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Աշտարակի շրջանի Աշտարակ գյուղի կոլտնտեսության սկզբնական պարտիական կազմակերպության ՍՄԿՊ պատմությունն ուսումնասիրող խմբակը ՍՄԿՊ պատմության չորրորդ գլխի ուսումնասիրությունն ավարտելուց հետո սկսել է պարտիայի XXI համագումարում ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման և համագումարի մյուս նյութերի ուսումնասիրությունը։ Համագումարի նյութերի ուսումնասիրությունը գաղափարական-թեորիական բարձր մակարդակով անցկացնելու համար պրոպագանդիստ ե. Օհանյանը յուրաքանչյուր պարապմունքին նախապատրաստվում է բազմակողմանիորեն։ Նա ուսումնասիրում է ընկեր Խրուշչովի զեկուցումը, համագումարի բանաձևը և համագումարում արտասանված այն ճառերը, որոնք վերաբերում են տվյալ թեմային։ Սակայն դրանով չի ավարտվում նրա աշխատանքը։ Նա ընթերցում և կոնսպեկտավորում է նաև Հայաստանի Կոմպարտիայի XX համագումարի նյութերը, օգտվում պրոպագանդիստական աշխատանքին վերաբերող մեթոդական գրականությունից, ուսումնասիրում է «Լենինը պրոպագանդայի և ագիտացիայի մասին» ժողովածուն և սիստեմատիկաբար կատարելագործում իր պրոպագանդիստական վարպետությունը։ Պարապմունքի ժամանակ Օհանյանը օգտագործում է ՍՄԿՊ XXI համագումարը պատկերող ցուցադրական նյութեր, քարտեզ, պլակատներ, փաստաթղթեր, ակումբում ստեղծված «Ինչի համար է պայքարում մեր կոլտնտեսությունը յոթնամյակում» ցուցահանդեսը և այլ դիտողական նյութեր։ Ընկ. Օհանյանը կազմում է պարապմունքի պլան, որտեղ ցույց է տալիս պարապմունքի գլխավոր նպատակը, որոշում ունկնդիրների ինքնուրույն աշխատանքի համար տրվելիք առաջադրանքը և մշակում անցկացվելիք զրույցի հարցերը։ Օժանդակ դիտողական նյութերը դասավորում է այն հաջորդականությամբ, ինչ հաջորդականությամբ պատմելու է անցած նյութը։ Նա ուշադիր կերպով հետևում է թերթերում և ամսագրերում հրապարակված նյութերին։ Այս ամենի շնորհիվ համագումարում առաջ քաշված հարցերի պարզաբանումը կենդանի հետաքրքրություն է առաջացնում ունկնդիրների մեջ, ոգևորում նրանց պարտիայի առաջադրած խնդիրների կատարման համար մղվող պայքարում։

Պարապմունքի ընթացքում Օհանյանը միշտ խույս է տալիս նյութը դասախոսական ձևով շարադրելու պրակտիկայից, վերացականությունից, շաբլոնից, պարապմունքն անց է կացնում ակտիվ զրույցի միջոցով։ Ամենամատչելի մեթոդներով պարզաբանելով ՍՄԿՊ XXI համագումարի վիթխարի նախագծումների իմաստը, նա օգնում է ունկնդիրներին, որպեսզի խորապես ըմբռնեն այն և յուրաքանչյուր ունկնդիր ճիշտ որոշի իր տեղը պարտիայի կողմից առաջ քաշված այդ հոյակապ պլանների կենսագործման համար մղվող պայքարում։

Խմբակը ՍՄԿՊ XXI համագումարի նյութերի ուսումնասիրության համար նախատեսել է 10 պարապմունք։ Առաջին պարապմունքը նվիրված էր «ՍՍՌՄ զարգացման նոր ժամանակաշրջանը՝ կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը» թեմային։ Ընկ. Օհանյանը նյութը հաղորդեց հետևյալ պլանով.

1. ՍՍՌՄ հաջողությունները արդյունաբերության բնագավառում։
2. ՍՍՌՄ գյուղատնտեսության զարգացումը վերջին հինգ տարիներում։
3. Աշխատավորների նյութական և կուլտուրական մակարդակի բարձրացումը։
4. Գիտության զարգացումը ՍՍՌՄ-ում։
5. ՍՍՌՄ-ում սոցիալիզմի լիակատար և վերջնական հաղթանակը սովետական ժողովրդի մեծագույն նվաճումն է։
6. Սոցիալիզմի նյութատեխնիկական բազան կոմունիզմի ծավալուն կառուցման հզոր հիմքն է։

Պրոպագանդիստը ներածական զրույցում հակիրճ կերպով նկարագրեց ՍՄԿՊ XXI համագումարի ժամանակաշրջանը և ցույց տվեց նրա համաշխարհային պատմական նշանակությունը։ Այնուհետև նշեց այն հիմնական փոփոխությունները, որ տեղի են ունեցել մեր ժողովրդի կյանքում, արդյունաբերության, գյուղատնտեսության, կուլտուրայի և գիտության ասպարեզում վերջին հինգ տարիների ընթացքում։ Օհանյանը խոսելով պարապմունքի պլանում նախատեսված յուրաքանչյուր հարցի մասին, այն անմիջապես կապում է Հայաստանի, Աշտարակի շրջանի և իրենց կոլտնտեսության առջև դրված խնդիրների հետ։

Պարապմունքի վերջում պրոպագանդիստը ունկնդիրներին տնային ինքնուրույն աշխատանք է տալիս և նշում ուսումնասիրվող թեմայի հիմնական և օժանդակ աղբյուրները։

Պարտիական լուսավորության ցանցի որ օղակում էլ ընդգրկված լինեն ունկնդիրները, պետք է ինքնուրույն աշխատեն ՍՄԿՊ XXI համագումարի նյութերի ուսումնասիրության վրա։ Պրոպագանդիստի գլխավոր խնդիրն է՝ օգնել ունկնդիրներին իրենց ինքնուրույն աշխատանքում, նրանց մեջ պատվաստել ՍՄԿՊ XXI համագումարի նյութերի և, ընդհանրապես, գրքի վրա աշխատելու ունակություն։ Այդ նպատակով Օհանյանը դեռևս ուսումնական տարվա սկզբին, երկու պարապմունքներում շարադրելով տվյալ օրվա նոր հանձնարարվող նյութը, միաժամանակ զրույց ունեցավ այն մասին, թե ինչպես պետք է գրքի վրա ինքնուրույն աշխատել, իսկ երբ խմբակը սկսեց ուսումնասիրել ՍՄԿՊ XXI համագումարի նյութերը, պրոպագանդիստը նորից խոսեց այն մասին, թե հատկապես ինչպես պետք է ուսումնասիրել ընկեր Խրուշչովի զեկուցումը, համագումարի բանաձևը, մեր ղեկավար ընկերների և եղբայրական կոմունիստական ու բանվորական պարտիաների ներկայացուցիչների համագումարում արտասանած ճառերը, ինչպես նաև ՀԿՊ XX համագումարի նյութերը։ Նա չմոռացավ նշել, որ դրանց վրա ինքնուրույն աշխատանքը միայն այն դեպքում կարող է արդյունավետ լինել, երբ գիտակցաբար է յուրացվում նյութը, ընթերցողը կարողանում է իր սովորածը կապել իրենց կոլտնտեսության արտադրության առօրյա խնդիրների հետ և յուրացրած գիտելիքները գործադրել կյանքում։

Պարապմունքը հաճելի, հետաքրքիր անցկացնելու, չձանձրացնելու հա-

մար պրոպագանդիստը պետք է խոսի գեղեցիկ, գրական լեզվով, ունենա
հարուստ բառապաշար և օգտագործի իր լսարանին համապատասխան բա-
ռեր, չպետք է կեղծի ձայնը, ձայնին տա արհեստական ելևէջներ, որ միշտ
տհաճ է ունկնդիրների համար։ Չպետք է շատ կրկնվեն այնպիսի բառեր, ինչ-
պես՝ «ուրեմն», «սակայն», «այսպիսով» և այլն։ Չպետք է հաճախ օգտա-
գործել օտարազգի բառեր, իսկ օգտագործելիս պետք է անպայման տալ
դրանց բացատրությունը։ Շատ վատ է, երբ առանձին պրոպագանդիստներ ա-
ղավաղում են հանրահայտ, ունկնդիրներին քաջ ծանոթ բառերը և անունները.
դա շեղում է ունկնդիրների ուշադրությունը. նրանց մոտ ընկնում է պրոպա-
գանդիստի հեղինակությունը։ Կարելի է ասել, որ Օհանյանը աշխատում է
միշտ հեռու մնալ այս ամենից։

Պարապմունքի ժամանակ նա չի դառնում կոնսպեկտի գերին. որովհետև
երբ պրոպագանդիստն անընդհատ նայում է կոնսպեկտին, նրա զրույցը դառ-
նում է հոգնեցուցիչ, ուշադրությունը ցրվում է, խախտվում է խմբակի ղեկա-
վարի և ունկնդիրների միջև եղած կոնտակտը, նվազում պարապմունքի նկատ-
մամբ ունկնդիրների հետաքրքրությունը։ Օհանյանին հաջողվում է ունկնդիր-
ների մեջ ակտիվ հետաքրքրություն առաջացնել թեմայի նկատմամբ. նրանք
ձգտում են ավելի խոր հասկանալ ուսումնասիրվող նյութը, այդ մասին են
վկայում ունկնդիրների՝ նյութին վերաբերող այն բազմաթիվ հարցերը, որոնց
հանգամանորեն պատասխանում է Օհանյանը։

Ընկ. Օհանյանի խմբակում կան ունկնդիրներ, որոնք չեն կարողանում
ինքնուրույն կերպով կոնսպեկտավորել հանձնարարված նյութը։ Այդպիսի ուն-
կընդիրներին պրոպագանդիստը սովորեցնում է կարդացած նյութի պլանը
կազմելու եղանակը, որից հետո կոնսպեկտավորելը, թեզիսներ կազմելը։ Ուն-
կընդիրների ինքնուրույն աշխատանքը լավ ղեկավարելու և նրանց օգնելու
համար նա միշտ պարպմունքի սկզբում աչքի է անցկացնում ունկնդիրների
կոնսպեկտները, անում իր դիտողությունները, որը բարձրացնում է նրանց
պատասխանատվությունը։

Ընկ. Օհանյանը իր աշխատանքը ունկնդիրների հետ չի սահմանափակում
միայն պարապմունքով. ուսուցման ժամերից դուրս նա միշտ իր ունկնդիրնե-
րի հետ հանդիպում է կոլտնտեսության այգիներում, անասնապահական ֆեր-
մաներում և ակումբում։ Նա լավ է ճանաչում իր ունկնդիրներին, գիտե նրանց
քաղաքական և կուլտուրական պահանջմունքները, տեղյակ է արտադրա-
կան աշխատանքում ունեցած նրանց հաջողություններին ու թերություններին։
Ընկ. Օհանյանը կազմակերպում է կոլեկտիվ դիտումներ. իր ունկնդիրների
հետ միասին նա դիտել է Երևանի Պետական թատրոնի, օպերայի, երաժշտա-
կան կոմեդիայի շատ ներկայացումներ, պարտիայի պատմության և մեր երկ-
րում կոմունիստական շինարարության հետ կապված կինոնկարներ։ Այժմ, երբ
շրջկոմի քաղլուսկաբինետում դասախոսություններ են լինում ՍՄԿՊ XXI հա-
մագումարին վերաբերող թեմաներով, Օհանյանը մասնակցում է այդ դասա-
խոսություններին իր ունկնդիրների հետ միասին։

Պրոպագանդիստի աշխատանքի կարևորագույն մասը զրույց անցկացնելն
է. ընկերական զրույցի, դիսկուսիայի ժամանակ ավելի դյուրըմբռնելի է
դառնում ուսումնասիրվող նյութը։ Ինքնուրույն աշխատանքով ձեռք բերված
գիտելիքները այստեղ սաուգվում, ճշտվում, խորացվում և ամրապնդվում են։
Իդեական բարձր մակարդակով անցկացվող կենդանի զրույցը ակտիվացնում



է ունկնդիրներին, բարձրացնում նրանց հետաքրքրությունը մարքս-լենինյան
ուսմունքի նկատմամբ։

Զրույցի հաջողության կարևորագույն պայմանը նրա ճիշտ պլանավորումն
է։ Ընկ. Օհանյանը զրույցը պլանավորում է օգտագործելով տարբեր ստեղծա-
գործական մեթոդներ։ Պարապմունքներից մեկում նրա զրույցի թեման էր՝
«ՍՍՌՄ գյուղատնտեսության զարգացումը յոթնամյակում»։ Ահա այդ թեմայի
վերաբերյալ նրա անցկացրած զրույցի պլանը։

1. 1959—1965 թթ. յոթնամյա պլանով ՍՍՌՄ և Հայկական ՍՍՌ գյուղա-
տնտեսության զարգացման հիմնական խնդիրները։

2. Հացահատիկի արտադրության աճը։

3. Անասնաբուծության բնագավառում առաջիկա յոթնամյակի հիմնական
խնդիրները։

4. Աշխատանքի բարձր արտադրողականության ապահովումը արդյունա-
բերության և գյուղատնտեսության մեջ՝ կոմունիզմի կառուցման կարևորա-
գույն պայմանն է։

5. Գյուղատնտեսական աշխատանքների հետագա մեքենայացումը։

6. Գյուղատնտեսության արտադրական ռեզերվների հայտաբերումը և
օգտագործումը հանրային տնտեսության հետագա զարգացման համար։

Զրույցի ժամանակ մեծ ուշադրություն հատկացվեց հատկապես սոցիա-
լիստական գյուղատնտեսության նոր, հզոր վերելքի ապահովման համար
գյուղատնտեսության բնագավառի աշխատողների խնդիրներին։ Կոմունիստ
ունկնդիրներ Խ. Աղումյանի, Հ. Գևորգյանի, Վ. Արամյանի, Կ. Գրիգորյանի
ելույթները վկայում են, որ նրանք լավ հասկանալով հարցերի տեսական կող-
մը, կարողանում են այն ճիշտ վերլուծել և կապել իրենց առօրյա խնդիրների
հետ։

— Ինչպիսի՞ խնդիրներ ունի ձեր կոտնտեսությունը յոթնամյակի առա-
ջին տարում,—հարցնում է պրոպագանդիստը ունկնդիր Խ. Աղումյանին։

— Մեր կոլտնտեսականները,—պատասխանում է Աղումյանը,—պարտա-
վորություն են վերցրել յոթնամյակը կատարել հինգ տարում։ Այդ նպատակով
յոթնամյակի առաջին՝ վճռական տարում պլանով նախատեսված 924 ցենտ-
ների խաղողի դիմաց պետք է արտադրեն 1340 ցենտներ խաղող։ Անցյալ տար-
վա 600 ցենտներ մսի փոխարեն այս տարի պետք է արտադրենք 1000 ցենտ-
ներ միս։ Ստանձնած պարտավորությունների կատարման հաջողությունը,—
շարունակում է Աղումյանը,—կապված է մեր այսօրվա աշխատանքի հետ,
այդ նպատակով այս տարի մենք արդեն այգիներն ենք տեղափոխել 3000
տոննա գոմաղբ և խառն աղբ։

— Ինչպիսի՞ ռեզերվներ կան Աշտարակի կոլտնտեսությունում,— հարցնում
է պրոպագանդիստը,— որոնց օգտագործմամբ կոլտնտեսությունը կկատարի
իր առջև դրված խնդիրները։

— Մեր կոլտնտեսությունն ունի զարգացման մեծ հեռանկարներ,— պա-
տասխանում է ունկնդիր Կ. Ավագյանը,— մեզ մոտ կան շատ ռեզերվներ,
որոնք դեռևս չեն օգտագործվում։ Այսպես, օրինակ, կոլտնտեսությունում ու-
նենք շատ այգիներ, որոնք լիարժեք չեն, պակաս է վազերի քանակը, նույն
տարածության վրա կատարվում են բոլոր տեսակի աշխատանքները, սակայն
այդ տարածության որոշ մասերում ցածր բերք է ստացվում։ Դրա համար էլ
այս տարի պետք է հատուկ ուշադրություն դարձնել անդալիզների միջոցով

վաղերի քանակի ավելացման վրա, լուծել նաև այգիների երիտասարդացման հարցը։ Այս տարի պետք է կատարենք առնվազն 6000 անդալիզ։ Արտադրական լավագույն ռեզերվ է նաև այն, որ Արզնի—Շամիրամ ջրանցքի բազայի վրա կոլտնտեսության նախկին չոռոգվող հողերի վրա կարելի է աճեցնել լաբային սիստեմի խաղողի նոր այգիներ և շատ տեխնիկական կուլտուրաներ։

Պրոպագանդիստի այն հարցին թե ի՞նչ է նշանակում պայքարել կոմունիզմի կառուցման համար, ունկնդիր Թ. Ավետիսյանը տվեց սպառիչ պատասխան և շատ տեղին մեջբերում արեց ընկեր Խրուշչովի 1959 թվականի փետրվարի 24-ին իր ընտրողների ժողովում արտասանած ճառից, որտեղ ասված է.

«Կոմունիստական հասարակարգի կառուցումը ինչ-որ վերացական բան չէ։ Դա պայքար է յուրաքանչյուր կոմբինատի, գործարանի, ֆաբրիկայի, ցեխի, սովետական տնտեսության, կոլտնտեսության ստեղծագործական կոլեկտիվի, յուրաքանչյուր բանվորի, կոլտնտեսականի, ինժեներա-տեխնիկական կամ գիտական աշխատողի, մեր հասարակության յուրաքանչյուր աշխատավորի կողմից արտադրական պլանի կատարման ու գերակատարման համար»։

Հաջող ելույթներ ունեցան նաև ունկնդիրներ Վ. Արամյանը, Կ. Գրիգորյանը, Հ. Գևորգյանը և ուրիշներ։

Խմբակում կան ունկնդիրներ, որոնք զրույցի ժամանակ բառ առ բառ կրկնում են այն, ինչ գրված է գրքում կամ կոնսպեկտում. չեն կարողանում ինքնուրույն շարադրել նյութը։ Այդպիսիների նկատմամբ պրոպագանդիստը ցուցաբերում է անհատական մոտեցում, նրանց սովորեցնում է իրենց բառերով շարադրել մտքերը, ցույց տալիս, թե ինչպես պետք է օգտվել կոնսպեկտից։

Ընկ. Օհանյանը զրույցի ժամանակ տեսադաշտից բաց չի թողնում ոչ մի ունկնդրի, տարբեր հարցերով նրանց բոլորին ներգրավում է զրույցի մեջ։ Նա աշխատում է հասնել այն բանին, որ ունկնդիրներն իրենք ամփոփեն նյութը, ինքնուրույն եզրակացությունների հանգեն և միայն այն ժամանակ, երբ ունկնդիրները չեն կարողանում ամբողջությամբ լուսաբանել հարցը, ինքն է կատարում այդ։

Պարապմունքի այս մեթոդը մեծ չափով նպաստում է ՍՄԿՊ XXI համագումարի նյութերի խոր յուրացմանը, գործնական խնդիրները տեսականի հետ կապելուն, յոթնամյակի խնդիրները հաջողությամբ իրականացնելու համար կոլտնտեսականների ուժերը մոբիլիզացնելուն։

---



# ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԵՎ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԱԶՄԱԿԵՐՊԱԿԱՆ ԿԱՌՈՒՑՎԱԾՔԻ ՄԱՍԻՆ*

Շատ ընթերցողներ դիմել են «Партийная жизнь» ամսագրի խմբագրությանը, խնդրելով բացատրել կոլտնտեսությունների և սովետական տնտեսությունների պարտիական կազմակերպությունների կազմակերպական կառուցվածքի մի քանի հարցեր։ Նրանց հետաքրքրում է, օրինակ, թե ո՞ր դեպքում են բրիգադայում, ֆերմայում և առանձին տեղամասերում ստեղծվում պարտիական կազմակերպություններ և ո՞ր դեպքում՝ պարտիական խմբեր. կարելի՞ է արդյոք սովետական տնտեսությունում կամ կոլտնտեսությունում ստեղծել պարտիական կոմիտե և այլն։

Կոլտնտեսությունների և սովետական տնտեսությունների պարտիական կազմակերպությունների կազմակերպական ճիշտ կառուցվածքը այժմ ստանում է կարևոր նշանակություն։ Գյուղատնտեսության հետագա հզոր վերելքը կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում պահանջում է մոբիլիզացնել գյուղատնտեսության բոլոր աշխատողների ուժերը, մշտապես բարձրացնել գյուղական պարտիական կազմակերպությունների կազմակերպական և դաստիարակչական աշխատանքի մակարդակը։ Զգալի չափով բարձրանում է կոլտնտեսային և սովետական տնտեսությունների սկզբնական պարտիական կազմակերպությունների դերը։ Ուստի, չափազանց կարևոր է, որ կազմակերպական կառուցվածքը նպաստի այդ կազմակերպությունների մարտունակությանը և ինքնագործունեության բարձրացմանը, կոմունիստների ակտիվության և նախաձեռնության զարգացմանը։

## ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԵՎ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԽՈՇՈՐ ՊԱՐՏԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՆԵՐ ՍՏԵՂԾԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Վերջին տարիներին գյուղատնտեսության շեշտակի վերելքի, կոլտնտեսային կարգի հետագա ամրապնդման, սովետական տնտեսությունների զարգացման ուղղությամբ պարտիայի և կառավարության միջոցառումների իրականացման շնորհիվ շատ կոլտնտեսություններ և սովետական տնտեսություններ դարձան խոշոր, բազմաճյուղ տնտեսություններ։ Նրանցում ստեղծված են կոմպլեքսային բրիգադաներ, կամ խոշոր արտադրական տեղամասեր, որտեղ աշխատում են մեծ թվով կոլտնտեսականներ և բանվորներ, զգալի չափերի են հասնում հողային տարածությունները, գյուղատնտեսական տեխնիկան և անասնաբուծությունը։ Այդպիսի կոլտնտեսություններում և սովետական տնտեսություններում, որպես կանոն, կան խոշոր պարտկազմակերպություններ։ Կենտրոնական տեղամասից բրիգադաների և բաժանմունքների հեռու լինելու պատճառով մեծ դժվարություններ են ստեղծվում պարտիական աշխատանքը կազմակերպելու գործում (ընդհանուր պարտժողովների հրավիրման, պարտշարքերի ընդունելության, կոմունիստների անձնական գործերի քննարկման և

---

* Որոշ համառոտումներով արտատպում ենք «Партийная жизнь» ամսագրի 1959 թ. № 4-ից։

այլ դեպքերում)։ Այդ պայմաններում անհրաժեշտ դարձավ գտնել կոլտնտեսությունների և սովետական տնտեսությունների խոշոր պարտիական կազմակերպությունների ավելի նպատակահարմար կազմակերպական կառուցվածք։

Վերջերս ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեն ընդունեց որոշում «Կոլտնտեսությունների և սովետական տնտեսությունների խոշոր պարտիական կազմակերպություններում պարտկոմիտեներ ստեղծելու մասին»: Գյուղատնտեսական արտադրության մեջ կոլտնտեսությունների և սովետական տնտեսությունների պարտկազմակերպությունների դերի, բրիգադներում, ֆերմաներում և բաժանմունքներում պարտիական-կազմակերպական աշխատանքի, ինչպես նաև կոլտնտեսականների և սովետական տնտեսությունների բանվորների շրջանում մասսայական-քաղաքական աշխատանքի ուժեղացման նպատակով ՍՄԿՊ Կենտկոմը թույլատրեց մարզկոմներին, երկրկոմներին, միութենական ռեսպուբլիկաների կոմպարտիաների կենտկոմներին՝ անհրաժեշտության դեպքում 50 և ավելի կոմունիստից բաղկացած կոլտնտեսային և 100 կոմունիստից ավելի անդամ ունեցող սովետական տնտեսությունների պարտկազմակերպություններում ստեղծել պարտիական կոմիտեներ, ֆերմաների, բրիգադների և բաժանմունքների պարտիական կազմակերպություններին տալով սկզբնական կազմակերպության իրավունք։

ՍՄԿՊ Կենտկոմը սահմանեց, որ այդպիսի կոմիտեներ պետք է ստեղծել այն դեպքում, երբ ֆերմաները և բրիգադները գտնվում են կոլտնտեսությունների և սովետական տնտեսությունների կենտրոնական հողամասից շատ հեռու։ Որոշման մեջ ընդգծվում է, որ կոլտնտեսությունների և սովետական տնտեսությունների պարտկոմիտեների աշխատանքը, որպես կանոն, պետք է վարեն ոչ ազատված քարտուղարները։ Պարտիական կոմիտեների վարձու քարտուղարների հաստիքներ կարող են սահմանվել բացառիկ դեպքերում, ռեսպուբլիկայի, մարզի, երկրամասի կոլտնտեսությունների և սովետական տնտեսությունների պարտիական կազմակերպությունների ազատված աշխատողների հաստիքների սահմաններում։ Այդ ցուցումը բխում է մեր պարտիայի այն ընդհանուր գծից, որի նպատակն է ամեն կերպ ծավալել կոմունիստների ինքնագործունեությունն ու նախաձեռնությունը, կրճատել և էժանացնել վարձու ապարատը։

Կոլտնտեսության, սովետական տնտեսության պարտիական կոմիտեն ընտրվում է ընդհանուր պարտիական ժողովում, փակ (գաղտնի) քվեարկությամբ, մեկ տարի ժամկետով։ Պարտիական կոմիտեն կոլեկտիվ ղեկավարության օրգան է. ընդհանուր պարտիական ժողովների միջև ընկած ժամանակաշրջանում նա ստուգում և ուղղություն է ցույց տալիս ֆերմաների, բրիգադների և բաժանմունքների պարտկազմակերպությունների գործունեությանը, քննարկում և հաստատում է նրանց որոշումները՝ պարտիայի մեջ ընդունելու և նրա շարքերից հեռացնելու մասին, լսում է նրանց քարտուղարների (բյուրոների) հաշվետվությունները, ժամանակին անցկացնում ընդհանուր պարտիական ժողովներ, իր աշխատանքի մասին ինֆորմացիա տալիս կոլտնտեսության և սովետական տնտեսության կոմունիստներին։

## ԲՐԻԳԱԴԱՆԵՐԻ, ՖԵՐՄԱՆԵՐԻ ԵՎ ԲԱԺԱՆՄՈՒՆՔՆԵՐԻ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Եթե կոլտնտեսության և սովետական տնտեսության պարտիական կազմակերպությունում կա 50-ից ավելի կոմունիստ, ապա ՍՄԿՊ Կանոնադրության համաձայն, յուրաքանչյուր առանձին դեպքում, պարտիայի շրջկոմի հաստատմամբ, բրիգադներում և բաժանմունքներում կարող են ստեղծվել պարտիական կազմակերպություններ, ինչպես ցեխային պարտկազմակերպությունները՝ արդյունաբերական ձեռնարկություններում։ Դրանց ստեղծման մասին կոլտնտեսության և սովետական տնտեսության պարտկազմակերպությունը ընդունում է որոշում և այն ներկայացնում պարտիայի շրջկոմի հաստատմանը։

Բրիգադային, բաժանմունքային պարտիական կազմակերպությունների



խնդիրները, իրավունքներն ու պարտականությունները պայմանավորված են նրանով, որ դրանք հանդիսանում են կոլտնտեսության, սովետական տնտեսության պարտիական կազմակերպության մի մասը և կոչված են օգնելու վերջիններիս՝ լուծելու այն խնդիրները, որոնք ՍՄԿՊ Կանոնադրությամբ դրվում են սկզբնական պարտիական կազմակերպությունների վրա։

Զբաղվելով, առաջին հերթին, տվյալ բրիգադայի, ֆերմայի, բաժանմունքի հարցերով, կոմունիստները պետք է իրենց համարեն կոլտնտեսության, սովետական տնտեսության ընդհանուր պարտիական կազմակերպության անդամներ, չպարփակվեն բրիգադայի, ֆերմայի, բաժանմունքի գործերի մեջ, այլ հետաքրքրվեն ամբողջ կոլեկտիվի կյանքով, բոլոր ուժերը գործադրեն կոլտնտեսության, սովետական տնտեսության առջև կանգնած խնդիրների լուծման համար։ ՍՄԿՊ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումը, ՍՄԿՊ XXI համագումարը հատկապես ընդգծեցին, որ կոլտնտեսությունների և սովետական տնտեսությունների պարտիական կազմակերպությունները մեծ ուշադրությամբ պետք է հետևեն մասսաների շրջանում տարվող քաղաքական և կազմակերպական աշխատանքի բարձրացմանը, տնտեսության հարցերի լուծման գործում մասսաների ավելի ակտիվ մասնակցության ապահովմանը, աշխատանքի արտադրողականության բարձրացմանը և արտադրանքի ինքնարժեքի իջեցմանը։ Բրիգադային, բաժանմունքային պարտիական կազմակերպությունները պետք է լինեն կոլտնտեսության և սովետական տնտեսության պարտկազմակերպության հենարանը այդ խնդիրների լուծման գործում։

Համաձայն կոլտնտեսության վարչության, սովետական տնտեսության ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ վերահսկողության իրավունքի, որը տրված է սկզբնական պարտիական կազմակերպությանը. բրիգադայի, ֆերմայի, բաժանմունքի պարտիական կազմակերպությունը ակտիվորեն խորամուխ է լինում տնտեսության ղեկավարման հարցերում։ Բրիգադայի, ֆերմայի, բաժանմունքի կոմունիստների ժողովը կարող է քննարկել ամեն մի արտադրական հարց, լսել բրիգադավարին, ֆերմայի վարիչին, երաշխավորել այս կամ այն խնդրի լուծման, թերությունների վերացման համար առանձին միջոցառումներ։ Բրիգադայի, ֆերմայի, բաժանմունքի պարտիական կազմակերպությունը, հասկանալի է, որ չի կարող չեղյալ հայտարարել բրիգադավարի, ֆերմայի վարիչի կարգադրությունները, փոփոխել բրիգադայի, ֆերմայի աշխատողներ և այլն։ Այն հարցերը, որոնք բրիգադային, բաժանմունքային պարտիական կազմակերպությունը չի կարող լուծել, բարձրացվում են կոլտնտեսության կամ սովետական տնտեսության պարտիական կազմակերպության առջև։

Բրիգադայի, ֆերմայի պարտիական կազմակերպությունը նպաստում է կոլտնտեսային դեմոկրատիայի զարգացմանը, հետևում, որպեսզի սիստեմատիկաբար անցկացվեն կոլտնտեսականների ժողովներ, գործնականորեն քննարկվեն բրիգադայի, ֆերմայի աշխատանքին վերաբերող հարցերը, հաշվի առնելով, որ համակոլտնտեսային գործերը լուծում է կոլեկտիվ օրգանը՝ կոլտնտեսականների ընդհանուր ժողովը և կոլտնտեսության վարչությունը։

Բրիգադայի, ֆերմայի, բաժանմունքի պարտկազմակերպությունն իր տեղամասում ղեկավարում է ագիտացիոն-մասսայական աշխատանքը, ուղղություն տալիս կոմերիտական կազմակերպության աշխատանքին։

Այն կոլտնտեսություններում և սովետական տնտեսություններում, որտեղ ստեղծվում է պարտիական կոմիտե, բրիգադների, ֆերմաների և բաժանմունքների պարտիական կազմակերպություններին տրվում է սկզբնական կազմակերպության իրավունք։ Առանձին ընկերներ գտնում են, որ այդ դեպքում իբր թե բրիգադային, բաժանմունքային պարտիական կազմակերպությունը դառնում է ինքնուրույն սկզբնական պարտիական կազմակերպություն։ Դա ոչ ճիշտ պատկերացում է։ Սկզբնական պարտիական կազմակերպությունը մնում է կոլտնտեսության, սովետական տնտեսության պարտկազմակերպությունը, իսկ բրիգադային, բաժանմունքային կազմակերպությունները հանդիսանում են նրա մասերը և ենթարկվում կոլտնտեսության, սովետական տնտեսության

տով։ Հաշվետու-ընտրական ժողովը տալիս է պարտկազմակերպչի աշխատան-
քի գնահատականը։ Պարտկազմակերպիչն իր աշխատանքի մասին պետք է
հաշիվ տա պարտիական խմբի կոմունիստներին ո՛չ միայն հաշվետու-ընտրա-
կան ժողովում, այլև պարբերաբար, առանձին հարցերի մասին։
Պարտկազմակերպիչը հոգում է պարտխմբի կոմունիստներին պարտիա-
կան ակտիվ կյանքի մեջ ներգրավելու համար, պաշտպանում և զարգացնում
է նրանց նախաձեռնությունը, հասնելով այն բանին, որ յուրաքանչյուրը կատա-
րի իրեն տրված հանձնարարությունը։ Պարտիական խմբի կազմակերպիչն ունի
օրագիր, որտեղ գրանցում է, թե կոմունիստներն ինչ են որոշել, ում ինչ հանձ-
նարարություն է տրվել և այլն։ Պարտկազմակերպիչը պարտիական անդամա-
վճար չի գանձում։

## ԲՐԻԳԱԴԱՅԻՆ, ԲԱԺԱՆՄՈՒՆՔԱՅԻՆ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԵՎ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԽՄԲԵՐԻ ՂԵԿԱՎԱՐՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Բրիգադների, ֆերմաների և բաժանմունքների պարտիական կազմա-
կերպությունների և պարտիական խմբերի աշխատանքն անմիջականորեն ղե-
կավարում է կոլտնտեսության, սովետական տնտեսության պարտիական բյու-
րոն (պարտկոմիտեն)։ Նրանց աշխատանքին վերաբերող հարցերը կարող են
քննարկվել պարտիական ընդհանուր ժողովներում, պարտկոմիտեի, պարտ-
բյուրոյի նիստերում։ Բրիգադային, բաժանմունքային պարտիական կազմա-
կերպությունների քարտուղարների և պարտկազմակերպիչների հետ առաջին
հերթին աշխատում է կոլտնտեսության, սովետական տնտեսության պարտ-
կազմակերպության քարտուղարը, որը նրանց հրահանգում է, օգնում պար-
տիական աշխատանքի կազմակերպման գործում։ Պարտբյուրոն (պարտկոմի-
տեն) ժամանակին արձագանքում է այն բոլոր հարցերին, որոնք առաջ են քա-
շում բրիգադային, բաժանմունքային պարտկազմակերպությունները և պարտ-
խմբերը, աջակցում է նրանց նախաձեռնությանը, անցկացնում պարտկազմա-
կերպիչների և քարտուղարների խորհրդակցություն ինչպես փորձի փոխանակ-
ման, այնպես էլ այս կամ այն հարցի առթիվ խորհուրդներ իմանալու նպա-
տակով։
Պարտիայի շրջկոմը կոլտնտեսությունների և սովետական տնտեսություն-
ների պարտիական կազմակերպությունների աշխատանքը ղեկավարելիս պետք
է հաշվի առնի պարտիական խմբերի և կազմակերպությունների առկայություն-
նը բրիգադաներում, ֆերմաներում, բաժանմունքներում։
Հենվելով պարտիական ակտիվի, հատկապես արտահաստիքային հրա-
հանգիչների վրա, շրջկոմը սերտ կապ է պահպանում բոլոր արտադրական
տեղամասերի հետ, զբաղվում է պարտկազմակերպիչների և քարտուղարների
դաստիարակությամբ, անցկացնում նրանց համար սեմինարներ։ Պարտիայի
շրջկոմի աշխատողները պետք է օգնություն ցույց տան պարտկազմակերպիչ-
ներին և քարտուղարներին անմիջականորեն բրիգադայում, ֆերմայում, բա-
ժանմունքում։

---



# ՍՈՎԵՏՆԵՐԻ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅԱՆ ԿԱՐԵՎՈՐ ԽՆԴԻՐԸ

Բովանդակալից ու բազմազան է աշխատավորների դեպուտատների Գորի-
սի շրջանի տեղական Սովետների առօրյան։ Լինելով պետական իշխանության
տեղական օրգաններ, նրանք ակտիվորեն մասնակցում են տնտեսության կա-
ռավարմանը, հոգ տանում աշխատավորների բարեկեցության ու կուլտուրայի
բարձրացման, տեղական ռեսուրսների օգտագործման, բնակարանային ու
կուլտուր-կենցաղային շինարարության պլանների կատարման մասին, զար-
գացնում ու պաշտպանում են ներքևից եկող ստեղծագործական նախաձեռնու-
թյունը։
Մեր լայնածավալ Հայրենիքի գեղատեսիլ անկյուններից մեկն է Գորիսը,
ուր գործի է վերածվում Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավա-
րության կողմից առաջ քաշված խնդիրը՝ 10—12 տարիների ընթացքում լիո-
վին բավարարել բնակչության բնակարանային պահանջը։ Այս ուղղությամբ
Գորիսի շրջանի Սովետները, հատկապես վերջին երկու տարում, հսկայական
աշխատանք են կատարել։ Քաղաքի բարեկարգման համար ամեն տարի ծախս-
վում է 800 հազարից մինչև մեկ միլիոն ռուբլի գումար։ Բացի այդ, քաղաքի
աշխատավորների նախաձեռնությամբ հաճախակի կազմակերպվում են շա-
բաթօրյակներ, բացվում են նոր փողոցներ, բարեկարգվում են հասարակական
զբոսավայրերը։ Այդ աշխատանքները գտնվում են քաղաքային Սովետի ուշա-
դրության կենտրոնում։ Դեպուտատները այդ գործում հանդես են բերում անձ-
նական օրինակ, իսկ քաղաքային Սովետի ճարտարապետներ՝ Ս. Հարություն-
յանը և Թ. Օրդյանը հետևում են, որ նոր կառուցումները լինեն ճարտարապե-
տական տեսակետից կատարյալ և որակով։ Շնորհիվ պլանավորված և հետևո-
ղական աշխատանքի Գորիսը դարձել է Հայաստանի գեղեցիկ քաղաքներից
մեկը։ Բարձրաբերձ լեռների և ցից-ցից ժայռերի գոգավոր ստորոտում, ծովի
մակերևույթից 1350 մետր բարձրության վրա փռված Գորիսում շախմատի
տախտակի սյունակների նման ուղիղ ձգվում են ասֆալտապատ ու գեղեցիկ
փողոցները, որոնց երկու կողմերում վեր են բարձրանում հասարակական-
պետական և բնակելի երկհարկանի թիթեղածածկ գողտրիկ առանձնատները՝
իրենց տնամերձ պարտեզներով։
Ավելի է գեղեցկացել Գորիսը վերջին երկու տարվա ընթացքում։ Քոլի տակ
և Տախտակներ կոչվող երբեմնի սելավուտներն այժմ դարձել են քաղաքի ամե-
նագեղեցիկ թաղամասերը։ Շատ բնակելի շենքեր են կառուցվել նաև քաղաքի
մյուս փողոցներում։ Աշխատավորների շաբաթօրյակների միջոցով բացված Շա-
հումյան փողոցում վերջերս կառուցվել է քաղաքի տրիկոտաժի ֆաբրիկայի
բանվորների բնակելի նոր շենքը, Մարքսի անվան փողոցի վրա վեր են խոյա-
ցել քաղաքային 70 մահճակալանոց հիվանդանոցի, շրջկոոպի և անտառտնտե-
սության բանվոր ծառայողների նորակառույց բնակելի շենքերը։ Վերջին եր-

կու տարում նոր բնակարաններ են կառուցել 400-ից ավելի քաղաքացիներ՝
45 հազար քառակուսի մետր տարածությամբ։ Այժմ կառուցվում է և շուտով
շահագործման կհանձնվի նաև 85 բնակելի շենք՝ բոլոր հարմարություններով։

Քաղաքում կառուցվում են նաև հասարակական, կուլտուր-լուսավորական
ու կենցաղային շենքեր։ Լենինի հրապարակի շուրջը անցյալ տարի բարձրա-
ցան պարտշրջկոմի, կինոթատրոնի գեղեցիկ շենքերը։ Կառուցվում են տե-
ղարդկոմբինատի պավիլիոնը, երաժշտական և երկու միջնակարգ դպրոցների
շենքերը։ Վերջին երկու տարում շահագործման են հանձնվել Գորիսգէսի գրա-
սենյակի, շրջսովետի գործկոմի, ճանապարհաշինարարության բաժնի, հայառի
Գորիսի բաժանմունքի և շատ ուրիշ նորակառույց շենքեր։

Գորիսի հյուսիս-արևմտյան անտառալանջի՝ Վանքի տափ կոչվող հողա-
մասում կսկսվեն կառուցող կոլեկտիվների հասարակական-վարչական և բնա-
կելի բազմաթիվ շենքերի շինարարությունը, իսկ Տաթև գյուղի ստորոտում՝
Տաթևգէսի շենքերի կառուցումը։ Այստեղ արտադրական նոր շենքեր կկառու-
ցեն Հայկական ՍՍՌ-ի ժողտնտխորհը, Կապի մինիստրությունը, Առողջապա-
հության մինիստրությունը և այլ կազմակերպություններ։ Նախապատրաստա-
կան միջոցառումներ են մշակվում Գորիսում միկրո-էլեկտրաշարժիչների մեծ
գործարանի, կահույքի ֆաբրիկայի, կրի, պեմզաբլոկի, պահածոների գործա-
րանների կառուցման համար։ Մեծ չափով կընդարձակվեն տրիկոտաժի ֆաբ-
րիկայի, տեղարդկոմբինատի, գարեջրի գործարանի, զորգագործական արտելի,
փայտամշակման գործարանի ցեխերը և կբացվեն նորերը։ Շատ նոր բնակելի
շենքեր կկառուցեն նաև քաղաքի բանվոր ծառայողները, որոնք այդ նպատա-
կով պետությունից ստացել են մոտ մեկ միլիոն ռուբլի երկարատև վարկ։

Քաղաքային Սովետը հսկայական աշխատանք է ծավալել Գորիս քաղա-
քը բարեկարգելու և ասֆալտապատելու ուղղությամբ։ Վերջին երեք տարում
քաղաքում ասֆալտապատված են 71 հազար քառակուսի մետր փողոցներ։
Այս տարի կասֆալտապատվեն նոր փողոցներ։ Կարգի են բերվում քաղաքի
ծայրամասային փողոցների մայթերը, զբոսայգիների և քաղաքացիների պար-
տեզների ցանկապատերը։

Շրջանային Սովետը վերջերս քննարկեց բնության պաշտպանության
հարցը Գորիսի շրջանում և գործնական միջոցառումներ մշակեց քաղաքի ու
շրջանի բուսականությունը, այգիները, ջրամբարները, հուշարձանները, կեն-
դանական աշխարհը (ֆաունան) պաշտպանելու և նորերը ստեղծելու համար։
Գործի վերածելով այդ որոշումը՝ քաղաքի փողոցներում և այգիներում միայն
անցյալ տարի քաղաքացիները տնկել են ավելի քան 14 հազար ծառ, քաղաքի
հյուսիս-արևելյան շրջակայքը անտառապատելու նպատակով տեղի անտառա-
յին տնտեսության գրասենյակը 10 հեկտարի վրա տնկեց նոր անտառ։

Քաղաքում, ինչպես նաև գյուղերում կառուցվել են աղբյուր-հուշարձան-
ներ՝ նվիրված Հայրենական Մեծ պատերազմում զոհված հերոսների հիշատա-
կին։ Ո՞վ չի հիանում քաղաքի կենտրոնում տեղական բազալտ երկնագույն
քարից վերջերս կառուցված գեղեցիկ յոթնակնյա աղբյուր հուշարձանով, որը
նվիրված է Հայրենական Մեծ պատերազմում զոհված գորիսցի մարտիկների
հիշատակին։

Շրջանային, քաղաքային և գյուղական Սովետները մշտապես կիրառում
են Մ. Ի. Կալինինի այն պահանջը, որ քաղաքի բարեկարգման բոլոր մանրա-



մասները պետք է նախապես քննարկել բնակիչների հետ, այդ աշխատանքնե-
րում ընդգրկել հնարավորին չափ լայն մասսաներ։

Քաղաքի բարեկարգման 1958 թվականի աշխատանքների պլանը քաղա-
քային Սովետը կազմել է դեռ 1957 թվականին։ Այդ պլանի նախագծի քննարկ-
մանը ակտիվորեն մասնակցեցին քաղաքացիները և շրջսովետի ու քաղսովետի
դեպուտատները։

Իրագործելով ընտրողների նակազները, շրջսովետի և քաղսովետի դեպու-
տատները շատ բան են արել աշխատավորների կուլտուր կենցաղային պայ-
մաններն ավելի բարելավելու համար։ Երբեմնի ծանրաքայլ ուղտերի և ավա-
նակների փոխարեն այժմ գորիսցիներն աշխատանքի կամ ցանկացած տեղերն
են գնում մարդատար մեքենաներով, տաքսի ավտոմեքենաներով և ավտո-
բուսներով. ամեն օր ավտոբուսները երթևեկում են դեպի հարևան շրջանները՝
Գորիս—Ղափան, Գորիս—Սիսիան, Գորիս—Ստեփանակերտ մարշրուտով, իսկ
ինքնաթիռը ուղևորներ ու ծանրոցներ է տեղափոխում Գորիսից—Երևան, Երև-
վանից—Գորիս։

Այս բոլորը, անշուշտ, մեծ գործի առաջին քայլերն են միայն։ Շինարա-
րական աշխատանքները չեն սահմանափակվում միայն Գորիս քաղաքում.
լայնորեն ծավալվում են նաև շրջանի գյուղերում։ Գյուղական Սովետները,
նրանց մշտական գործող հանձնաժողովներն ու դեպուտատներն այս գործում
ակտիվ նախաձեռնություն են հանդես բերում։ Նրանք սիստեմատիկաբար
քննարկում են գյուղերի բարեկարգման հարցը, համապատասխան կազմա-
կերպությունների միջոցով կոլտնտեսականներին մատակարարում շինանյու-
թեր՝ բնակարանների, հանրային և կուլտուր-լուսավորական շենքերի կառուց-
ման համար։

Շատ կոլտնտեսականներ կառուցում են երկհարկանի, լուսավոր տներ
իրենց բոլոր հարմարություններով։ Ահա, օրինակ, Վերիշենը։ Սա Հին Գորիսն
է, որտեղ մեծ մասամբ մարդիկ ապրում էին քարանձավներում. այժմ ոչինչ չի
մնացել հնից։ Վարարակն գետի ափն ի վեր ձգվում է կենտրոնական փողոցը,
որի երկու կողմերում վեր են բարձրանում բազալտե երկհարկանի, թիթեղա-
պատ տանիքով տները, որոնք չեն տարբերվում Գորիս քաղաքի շենքերից։

Գյուղական Սովետի կուլտուր-լուսավորական մշտական գործող հանձնա-
ժողովի նախաձեռնությամբ կոլտնտեսությունում կառուցվել և շահագործման
են հանձնվել գյուղի միջնակարգ դպրոցի գեղեցիկ ու լուսավոր շենքը, ընդար-
ձակ դասասենյակներով և լաբորատորիայով, նոր ակումբի, կոլտնտեսության
և գյուղական Սովետի գրասենյակների, բժշկական կետի, խանութի, պահես-
տի և անասնապահական շենքեր։

Վերիշեն գյուղից ոչնչով ետ չի մնում նաև Խանածախը։ Գյուղական Սո-
վետն իր սեսիաներից մեկում քննարկեց գյուղի վերակառուցման և կոլտնտե-
սական-շինարարներին շինանյութերով օգնելու հարցը, որը նախապատրաս-
տել և սեսիայի քննարկման էր մտցրել գյուղսովետի շինարարության և բարե-
կարգման մշտական հանձնաժողովը, (նախագահ Գ. Ասծատրյան)։ Սեսիան
որոշեց յուրաքանչյուր ամսվա 1-ը հայտարարել սանիտարական օր և մաքրել
բոլոր փողոցները, բակերը, հրապարակները, կարգի բերել դրանք։ Միաժա-
մանակ որոշվեց կոլտնտեսականների միջոցով անցկացնել դաշտամիջյան նոր
ճանապարհ, 3 կիլոմետրի վրա նոր ջրատար առու և գյուղում տնկել յոթ հա-
զար ծառ։

Խանածախցիներն ապրում են կուլտուրական և բարեկեցիկ կյանքով: Ահա
նրանցից մեկը՝ շարքային կոլտնտեսական Կոստանդ Բաղդասարյանը: Նա
շատ վաղուց է թողել իր պապերի խղճուկ հյուղակը, կառուցել երկու սենյակա-
նոց բնակարան: Սակայն ընտանիքը մեծացել էր, երեխաները հասակ էին
առել. անհրաժեշտ էր նոր տուն կառուցել: Եվ նրա բազմանդամ ընտանիքը
գործի անցավ: Մեկ տարի էլ չանցած, բարձրացավ նրա նոր, կամարակապ
տունը:

Խանածախում կառուցվում են շատ հանրային շենքեր: Նորակառույց
ակումբի շենքն ունի 300 տեղանոց մի դահլիճ՝ ընդարձակ բեմով, ճեմասրա-
հով և այլ հարմարություններով. այստեղ, բացի ակումբի ինքնագործ խմբե-
րից, հաճախակի ելույթ են ունենում ռեսպուբլիկայի երաժշտական կոլեկ-
տիվները:

Ակումբն ունի գրադարան-ընթերցարան, ունի իր սեփական ռադիոհան-
գույցը՝ մոտ 200 ռադիոկետով: Նախկին խանածախցին անձամբ պետք է Գո-
րիս գար և ծրարը գցեր փոստարկղը: Այժմ գյուղն ունի փոստի բաժանմունք.
«յոթը սարով, յոթը ձորով աշխարհից կտրված» գյուղում այժմ գործում է նաև
հեռախոսային կապը, որը հնարավորություն է տալիս խանածախցիներին
կապվելու շրջանի գյուղերի, Գորիսի ու Երևանի, Մոսկվայի և միության այլ
քաղաքների հետ: Գյուղում կա խնայողական դրամարկղ, որտեղ իրենց խնա-
յողությունները են պահ տալիս գյուղացիները: Նորակառույց շենքերում են
տեղավորված գյուղի ունիվերմագը, կոշիկի վերանորոգման արհեստանոցը,
դարբնոցը, սայլաշինական ցեխը, վարսավիրանոցը, կոլտնտեսության գրա-
սենյակը, հացի փուռը, մանկամսուրը, մանկապարտեզը, միջնակարգ դպրոցը
և անասնապահական ֆերմաները:

Ջանդեզուրցին շատ է տառապել հիվանդություններից և կարոտ մնացել
բժշկական օգնության: Խանածախցու մտքով անգամ չէր անցնի, որ բժիշկը
կարող է լինել իրենց գյուղում և այցելել հիվանդին: Հիվանդին նրանք տա-
նում էին Երևան, Կիրովաբադ, Թբիլիսի, Բաքու և այլ քաղաքներ, հաճախ
վերադառնալով առանց նրա, արդյունքը կոկորդում խեղդած: Իսկ այսօր Խա-
նածախն ունի իր բժշկական կայանը, հիվանդանոցը՝ 15 մահճակալով, բժըշ-
կական լավ մասնագետներով:

Երբեմնի նավթի ճրագի փոխարեն այժմ գյուղը լուսավորված է փողոց-
ներում և բնակարաններում վառվող էլեկտրական լամպերով:

Բոլորովին նոր տեսք է ստացել նաև Քարահունջ գյուղը. հենց վերջերս
այստեղ շահագործման հանձնվեցին գյուղական ունիվերսալ խանութի և ա-
կումբի շենքերը: Բարձրացել է քարահունջցիների կուլտուրական մակարդակը
և բարելավվել են նրանց տնտեսական պայմանները:

Վերջին երկու տարվա ընթացքում շրջանային կոոպերացիան և Հայաոթ
Գորիսի բաժանմունքը շրջանի աշխատավորությանը վաճառել են 6 միլիոն 525
հազար ռուբլու արժողությամբ տնային գործածության իրեր և 3000-ից ավելի
ռադիոընդունիչներ: Երևանի և Մոսկվայի ռադիոհաղորդավարների ձայնը
հասնում է հեռավոր Գորիսի գյուղերն ու բնակարանները:

Գորիսի շրջանում կան գյուղեր, որոնք գտնվում են խոր ձորերի փեշերին,
ժայռերի կրծքին և այդ աննպաստ բնական պայմանները թույլ չեն տալիս շի-
նարարական, բարեկարգման լայն աշխատանքներ ծավալել: Դրանցից են՝
Խնձորեսկ, Կորնիձոր, Հալիձոր, Շինուհայր, Խոտ գյուղերը: Այդ գյուղերի կոլ-



տնտեսականների պահանջով կազմվել են նոր տիպային նախագծեր և հարթ
տարածությունների վրա սկսվել է նոր գյուղերի շինարարությունը:

Խնձորեսկ գյուղն ընկած է յոթ զառիթափ ձորերի մեջ: Ժամանակին այն
անառիկ բերդ է եղել տեղացիների պաշտպանության համար:

Բայց այժմ խնձորեսկցիները ցանկանում են, որ իրենց գյուղը լինի հարթ
տեղում, ունենա գեղեցիկ փողոցներ, տներ:

Գյուղական Սովետը և կոլտնտեսության վարչությունը ընդառաջ գնացին
կոլտնտեսականների այդ ցանկությանը: Անցյալ տարի կոլտնտեսությունը
գնեց 7 կմ 5 դույմանոց չուգունե խողովակներ և մի բարձրաբերձ սարի ստո-
րոտից բխող հորդառատ աղբյուրի սառնորակ ջուրը բերեց Փրթոս կոչվող
հարթ տարածությունը: Կոլտնտեսականները իրենց դաշտերից հավաքելով կու-
տակեցին բազալտ շինաքարը: Երևանի Նախագծային ինստիտուտի մասնա-
գետներն էլ նախագծեցին նոր գյուղատեղը և անցյալ տարվա գարնանից ծա-
վալեցին շինարարական լայն աշխատանքներ: Հարյուրից ավելի կոլտնտեսա-
կաններ արդեն ավարտել են իրենց նորակառույց բնակարանների առաջին,
իսկ շատերը՝ նույնիսկ երկրորդ հարկերը: Շինարարական աշխատանքները ղե-
կավարում են գյուղսովետի դեպուտատներ՝ Շ. Մանվելյանը, Ա. Բեգլարյանը,
Հ. Ալեքսանյանը, Ա. Փանդունցը, Մ. Ալավերդյանը և ուրիշներ: Այստեղ առա-
ջին անգամ կանաչեցին տանձի և խնձորի, կեռասենու, դամբուլի և շատ այլ
պտղատու ծառերի նորատունկ շիվերը: Բազմաճյուղ ու հարուստ է այդ կոլ-
տնտեսությունը: Ոչխարների գլխաքանակն այնտեղ հասնում է 14 հազարի,
իսկ խոշոր եղջերավոր անասուններինը՝ 3000-ի: Կոլտնտեսությունը տարեկան
մի քանի միլիոն ռուբլու միայն դրամական եկամուտ է ստանում: Վերջերս,
ՄՏ կայանները վերակազմվելու կապակցությամբ, այդ կոլտնտեսությունը
Գորիսի ՄՏ կայանից գնեց ավելի քան կես միլիոն ռուբլու գյուղատնտեսական
տարբեր մեքենաներ ու գործիքներ:

Բնակարանային շինարարության հարցերով լավ է զբաղվում նաև Կորնի-
ձոր գյուղի Սովետը: Նա քննարկել է գյուղի տեղափոխման հարցը, առանձ-
նացրել նոր գյուղատեղ, բաժանել կոլտնտեսականներին և օգնում է նրանց՝
բնակարաններ կառուցելու: Նոր Կորնիձորը կառուցվում է Կալերի գլուխ կոչ-
վող հարթ տարածության վրա: Կոլտնտեսականները երկհարկանի բնակարան-
ներ են կառուցում այնտեղ, իսկ կոլտնտեսությունը՝ ակումբի, կոլտնտեսու-
թյան ու գյուղական Սովետի գրասենյակներ և այլ կառուցումներ: Գյուղական
Սովետի նախաձեռնությամբ և միջոցներով կորնիձորցիները ցանկանում են
3 ու կես կիլոմետր հեռավորությունից խմելու ջուր անցկացնել նոր գյուղա-
տեղը: Գյուղական Սովետի սեսիաներից մեկում գյուղսովետի դեպուտատները
որոշեցին նոր գյուղը «Գետի ձորի» այգիների հետ կապող արահետը, որտե-
ղով ձին հազիվ է անցնում, դարձնել խճուղի: Գյուղսովետի դեպուտատները և
գյուղի ողջ աշխատավորները ակտիվ կերպով մասնակցեցին այդ գործին,
շրջանային Սովետի ճանապարհաշինարարության բաժինն էլ օգնեց պայթու-
ցիկ նյութերով, և աշխատանքները հաջողությամբ պսակվեցին: Այժմ ավտո-
մեքենաները ազատ երթևեկում են այդ խճուղով: Կոլտնտեսությունը նոր գյու-
ղատեղում կառուցեց էլեկտրակայան, հացահատիկի նոր պահեստ, կինոթատրո-
նի նոր դահլիճ:

Գյուղական Սովետի ակտիվ նախաձեռնությամբ շինարարական լայն աշ-
խատանքներ է սկսել նաև Քարաշեն գյուղը: Վերջին երկու տարվա ընթացքում

կոլտնտեսականները նոր գյուղատեղերում իրենց համար հարմար բնակա-
րաններ են կառուցել։ Նրանց կենցաղի մեջ են մտել ռադիոն, հեռախոսը, սառ-
ցարանը, նիկելազոծ մահճակալները, սեփական գրադարանը։

Գորիսի շրջանում լայն աշխատանքներ են ծավալվում նաև ճանապարհա-
շինարարության գծով։ Շրջանի հեռավոր Առաջաձոր, Կուրթկուլաղ, Բայան-
դուր, Տանձատափ, Բարձրավան, Սևարանց, Խողնավար գյուղերը Գորիսի հետ
կապված են ո՛չ միայն հեռախոսային անխափան կապով, այլև բարեկարգ
խճուղիներով, որոնցով շարունակ երթևեկում են ավտոմեքենաները։ Այդ
խճուղիները անց են կացվել անդնդախոր կիրճերով, անանցանելի ծերպերով։
Լեռից-լեռ, ափից-ափ ձգվում են նոր կամուրջները։

Դեպուտատների և գյուղական Սովետների օգնությամբ շատ կոլտնտեսու-
թյուններ կառուցել են էլեկտրական սղոցարաններ, էլեկտրական աղացներ և
դարբնոցներ, էլեկտրականության միջոցով են աշխատում նաև սերմազտիչ,
կալսող, սիլոսահատ ու այլ մեքենաներ։

Որոտան գետի վրա Տաթևի հիդրոէլեկտրակայանի կառուցումից հետո
Շինուհայր, Հալիձոր և Խոտ գյուղերի նորաշեն ավանները կդառնան կոլտնտե-
սային գյուղեր։ Տեղ, Խոզանավար, Ազատաշեն և շատ այլ գյուղերում հար-
յուրավոր կոլտնտեսականներ իրենց համար կկառուցեն բարեկարգ ու հարմա-
րավետ բնակարաններ։

Կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերի հաշվին շատ գյուղերում
կկառուցվեն նոր դպրոցների, մանկամսուրների, մանկապարտեզների, բաղ-
նիքների, ակումբների, գրադարանների, կուլտուրայի տների, կինոթատրոն-
ների նոր շենքեր։

Կանցկացվեն նոր խճուղիներ, ջրատար առուներ, կկառուցվեն խմելու ջրի
հազարավոր ծորակներ, արհեստական լճակներ և այլն։ Տաթևգէսի հզոր
էլեկտրակայանը կէլեկտրիֆիկացնի կոլտնտեսային արտադրության աշխա-
տատար շատ պրոցեսներ։

Սակայն որոշ գյուղական Սովետներ դեռևս վատ են կատարում իրենց
պարտականությունները։ Շուռնուխի գյուղական միացյալ Սովետը անբավա-
րար աշխատանք է կատարում Շուռնուխի, Աղբուլաղ, Կուրթկուլաղ և Նոր Առա-
ջաձոր գյուղերի բարեկարգման և կուլտուր-սանիտարական վիճակի բարելավ-
ման ուղղությամբ։ Գյուղերի փողոցները, բակերը կեղտոտ են, չեն բարե-
կարգվում ճանապարհները։ Գյուղսովետի թողտվությամբ այդ գյուղերի աշ-
խատավորները անխնա կտրատում են ծառերը և օգտագործում որպես վառե-
լափայտ։ Իսկ գյուղսովետը գրեթե ոչինչ չի ձեռնարկում այս ուղղությամբ,
բարձիթողի է արել գյուղերի և ճանապարհների եզրերը ծառազարդելու գործը։

Ջորաշենի գյուղական Սովետը չի խորանում գյուղի էկոնոմիկայի մեջ,
քիչ է աջակցում կոլտնտեսության գյուղատնտեսական պլանների կատարմա-
նը, սեսիաներում, գործկոմի նիստերում չի քննարկում գյուղի կուլտուր-լուսա-
վորական հիմնարկների աշխատանքների բարելավման հարցերը։ Այդ պատ-
ճառով էլ անմխիթար վիճակում են գյուղի դպրոցը, բուժկայանը, ակումբը,
գրադարանը։ Գյուղական Սովետի դեպուտատների մի մասը ակտիվորեն չի
մասնակցում սովետական շինարարության հարցերի քննարկմանը։ Ջանձրալի
են անցնում գյուղսովետի սեսիաներն ու գործկոմի նիստերը։

Իր պարտականությունները վատ է կատարում նաև Տաթևի գյուղական
Սովետը։ Այստեղ բացարձակապես անգործության են մատնված մշտական



գործող հանձնաժողովները։ Քիչ աշխատանք է կատարում գյուղի բարեկարգ-
ման գծով։ Անհրաժեշտ է, որ վերոհիշյալ Սովետները վերանայեն իրենց աշ-
խատանքները և ջանք չխնայեն ընտրողների արդարացի պահանջները հաջո-
ղությամբ կատարելու համար։

Գորիսի շրջանի աշխատավորների դեպուտատների Սովետները պաշտպա-
նելով աշխատավորների նախաձեռնությունները, ամեն ինչ կանեն ավելի
բարեկարգելու և գեղեցկացնելու մեր բնակավայրերը, Գորիսը և նրա շրջանը
դարձնելու մեր մեծ Հայրենիքի գեղատեսիլ վայրերից մեկը։

Ք. ՊԵՏՐՈՍՅԱՆ

Գորիսի շրջսովետի գործկոմի նախագահ

## ԻՋԵՎԱՆԻ ԷԿՈՆՈՄԻԿԱՆ ՅՈԹՆԱՄՅԱԿՈՒՄ

Սովետական ամբողջ ժողովրդի հետ միասին Իջևանի շրջանի աշխատա-
վորները մեծագույն խանդավառությամբ ընդունեցին 1959—1965 թվական-
ների ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի
վերաբերյալ ՍՄԿՊ XXI համագումարի որոշումները։ Յոթնամյա պլանով մեր
երկիրը նոր, աննախընթաց հաջողությունների կհասնի կոմունիզմի կառուց-
ման ճանապարհին։

Անշեղորեն ընթանալով Կոմունիստական պարտիայի գծած ուղիով, շըր-
ջանի աշխատավորները աչքի ընկնող հաջողությունների են հասել արդյու-
նաբերության, գյուղատնտեսության, կուլտուրայի զարգացման ու մյուս բնա-
գավառներում։

Շրջանի արդյունաբերությունը, հատկապես վերջին հինգ տարում, զար-
գացել և ընդարձակվել է։ 1953—1959 թթ. գրեթե կրկնապատկվել է արդյու-
նաբերության համախառն արտադրանքը։ Կազմակերպվել են արդյունաբե-
րական այնպիսի նոր ձեռնարկություններ, ինչպիսիք են՝ Սևքարի փայտա-
մշակման կոմբինատը, Իջևանի ավտովերանորոգման և մեխանիկական ար-
հեստանոցները։

Իջևանը հարուստ է արդյունաբերական բարձրարժեք անտառանյութերով
և այդ բազայի վրա շրջանում զարգացել է անտառային արդյունաբերու-
թյունը։ Անտառային արդյունաբերության տարեկան համախառն արտադրան-
քը կազմում է մոտ 28 միլիոն ռուբլի։ Միայն Իջևանի փայտամշակման
գործարանը երկրին տարեկան տալիս է 13,5 միլիոն ռուբլու արտադրանք։
Հնգամյակի տարիներին գործարանում ստեղծվել են դիկտի, ֆաներայի,
պարկետի, ատաղձագործական սալիկների նոր ցեխեր։ Այդ ցեխերի գործար-
կումով Իջևանի փայտամշակման գործարանի համախառն արտադրանքը
ավելացել է 3 անգամ։ Ներկայումս Իջևանում գործում են 16 արդյունաբե-
րական և շինարարական ձեռնարկություններ, որոնց տարեկան համախառն
արտադրանքը կազմում է ավելի քան 55 միլիոն ռուբլի։

Վերջին 5 տարիների ընթացքում էական տեղաշարժեր են կատարվել
գյուղատնտեսության բնագավառում։

ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումը, ինչպես և XX համագումարը,
մշակեցին գյուղատնտեսության բոլոր ճյուղերի շեշտակի վերելքի ծրագիր։
Սեպտեմբերյան պլենումի մշակած պատմական միջոցառումների կենսագոր-

*ծումը թույլ տվեց կարճ ժամանակում հաղթահարել գյուղատնտեսության ետ մնալը և ամրապնդել կոլտնտեսությունների ու սովետական տնտեսությունների էկոնոմիկան։ Շրջանում զգալիորեն ավելացել է ինչպես գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը, այնպես էլ անասնաբուծական մթերքների արտադրությունը։ Գրեթե մեկ ու կես անգամ ավելացել են կոլտնտեսությունների և սովետական տնտեսությունների դրամական եկամուտները։*

*Թե ինչպիսի վերելք է ապրել շրջանի գյուղատնտեսությունը 1953—1958 թվականներին, երևում է հետևյալից. 1958 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, շրջանում ավելի է արտադրվել կաթ՝ 11.200 ցենտներ, ֆուրաժային մեկ կովի կաթնատվությունը բարձրացել է 510 կիլոգրամով, պետությանն ավելի է վաճառվել 13.280 ցենտներ կաթ, 3750 ցենտներ միս, 48.413 ձու, 360 ցենտներ բուրդ։*

*Ինչպես հայտնի է, գյուղատնտեսության արտադրության գլխավոր ցուցանիշը համարվում է մթերքների արտադրության մակարդակը՝ հողային տարածությունների համապատասխան։ 1958 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, անասնաբուծական մթերքների արտադրությունը հարյուր հեկտար հողատարածության դիմաց աճել է հետևյալ չափերով.*

| | 1953 թ. | 1958 թ. | Աճը |
|---|---|---|---|
| Կաթ (ցենտներներով) . . . . | 54,3 | 120,0 | 2 2 անգամ |
| Միս կենդ. քաշով (ցենտներներով) . . | 18.2 | 27,4 | 1,5 » |
| Բուրդ (կիլոգրամներով) . . . . | 142,0 | 240,0 | 1,7 » |
| Ձու (հատով) . . . . . | 1850 | 3421 | 1,8 » |

*Անասնաբուծական մթերքների արտադրության գործում շրջանի մի շարք կոլտնտեսություններ ավելի բարձր ցուցանիշների են հասել։ Այսպես, օրինակ, 100 հեկտար հողատարածության դիմաց Ենոքավանում արտադրվել է կաթ 266, Թալայում՝ 259, Գետաշենում՝ 215, Ծաղկաշենում՝ 196 ցենտներ։ Ենոքավանի, Թալայի և Ռևազլուի կոլտնտեսությունները անցած հինգ տարիներին մսի արտադրությունը ավելացրել են 2—2,5 անգամ, կամ 1958 թվականին հարյուր հեկտար հողատարածության դիմաց ստացել են 40—66 ցենտներ միս։*

*Չնայած հողակլիմայական անբարենպաստ պայմաններին, 1958 թվականին շրջանում միջին հաշվով հեկտարից ստացվեց 9,3 ցենտներ հացահատիկի բերք, 1953 թվականի 5,7 ցենտների դիմաց։ Զգալի են հաջողությունները նաև եգիպտացորենի ցանքատարածությունների ընդարձակման և բերքատվության բարձրացման բնագավառում։ Եթե 1953 թվականին շրջանում մշակվում էր ընդամենը 62 հեկտար եգիպտացորեն և հեկտարից ստացվում էր 14,3 ցենտներ հատիկ, ապա 1958 թվականին մշակվել է 947 հեկտար և յուրաքանչյուր հեկտարից ստացվել է 25,5 ցենտներ հատիկ։ Եգիպտացորենի տարածությունների ավելացումը մեծ չափով նպաստեց կերի բազայի ամրապնդմանը։ 1953 թվականի 9345 տոննայի դիմաց անցյալ տարի պատրաստվեց 13.020 տոննա սիլոս, որից 6315 տոննան եգիպտացորենի կանաչ մասսայից։*



*Եգիպտացորենի մշակության գործում հատկապես լավ ցուցանիշների են հասել Ենոքավանի, Թալայի, Հախկխլուի, Ռևազլուի կոլտնտեսությունները և Իջևանի սովետական տնտեսությունը, որոնք իրենց մշակած ամեն մի հեկտարից ստացել են 35—68 ցենտներ հատիկի բերք և 250—350 ցենտներ կանաչ մասսա։*

*Ավելացել է նաև կարտոֆիլի, բանջարեղենի արտադրությունը։ 1953 թվականին արտադրված 29.845 ցենտներ կարտոֆիլի և 2153 ցենտներ բանջարեղենի փոխարեն 1958 թվականին արտադրվել է 37.153 ցենտներ կարտոֆիլ և 5054 ցենտներ բանջարեղեն։*

*Շրջանում լուրջ աշխատանք կատարվեց այգեգործության զարգացման ուղղությամբ։ Եթե կոլտնտեսությունները 1953 թվականին ունեցել են ընդամենը 46 հեկտար խաղողի և 298 հեկտար պտղատու այգիներ, ապա 1958 թվականին արդեն ունեին 228 հեկտար խաղողի և 463 հեկտար պտղատու այգիներ։*

*Շրջանի կոլտնտեսությունները և սովետական տնտեսությունները նկատելի հաջողությունների են հասել ծխախոտի հումքի արտադրության ասպարեզում։ Թեև 1953 թվականի համեմատությամբ մոտ 200 հեկտարով նվազել են ծխախոտի պլանտացիաների տարածությունները, սակայն զգալի չափով բարձրացել են բերքատվությունը և այդ կուլտուրայից ստացվող դրամական եկամուտը։ Եթե 1953 թվականին ծխախոտի յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը կազմել է 12,1 ցենտներ, իսկ ամբողջ դրամական եկամուտը՝ 12,6 միլիոն ռուբլի, ապա 1958 թվականին յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը կազմեց 15,4 ցենտներ և դրամական եկամուտը հասավ 20 միլիոնի։*

*Իջևանի շրջանում միայն առաջին քայլերն են արված գյուղատնտեսության շեշտակի վերելքի վերաբերյալ ՍՄԿՊ Կենտկոմի և XX համագումարի որոշումների կենսագործման ասպարեզում։ Երբ 1958 թվականի ցուցանիշները համեմատում ենք 1953 թվականին եղած արդյունքների հետ, պարզ է դառնում, որ լուրջ զգալի աշխատանք է կատարվել, սակայն երբ դրանք համեմատում ենք միության, ռեսպուբլիկայի միջին ցուցանիշների հետ, ապա տեսնում ենք, որ մեզ մոտ դեռևս դանդաղ է աճում գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։*

*Համագումարի բերելով անցած հինգ տարիների արդյունքները՝ շրջանի պարտիական, տնտեսական և սովետական կազմակերպությունները կոնկրետ միջոցառումներ կձեռնարկեն գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման գծով միության և ռեսպուբլիկայի առաջավոր շրջաններին հասնելու համար։ Մեր խնդիրն է՝ ամրապնդել այդ հաջողությունները, համաժողովրդական պայքար ծավալել 1959 թվականին ավելի մեծ նվաճումների հասնելու համար։*

*Իջևանի շրջանի աշխատավորները, քննարկելով ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի մասին ՍՄԿՊ XXI համագումարին ընկեր Ն. Ս. Խրուշչովի տված զեկուցումը, ջերմորեն հավանություն տվեցին պարտիայի նոր նախագծումներին և իրենց միահամուռ պատրաստակամությունը հայտնեցին դրանք կենսագործելու։*

*Յոթնամյա պլանի համաձայն շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների համախառն արտադրանքը 1965 թվականին կկազմի ավելի քան*

*115 միլիոն ռուբլի. և 1958 թվականի համեմատությամբ 54 միլիոնով կավե-
լանան կապիտալ ներդրումները։*

*Բարձր տեմպերով են զարգանալու անտառային արդյունաբերության
ձեռնարկությունները։ Վերակառուցվելու է Իջևանի փայտամշակման գործա-
րանը. այդ նպատակի համար միայն 1958 թվականին ծախսվել է մոտ 3 մի-
լիոն ռուբլի։ Վերակառուցումից հետո գործարանի համախառն արտադրանքը
կավելանա մոտ 3 անգամ։*

*1959—1962 թվականներին շրջկենտրոնում կառուցվելու է գորգագործա-
կան խոշոր կոմբինատ՝ 37 միլիոն կապիտալ ներդրումով, որը տարեկան ար-
տադրելու է 600—700 հազար քառակուսի մետր գորգ։*

*Իջևանի արդյունաբերության մեջ կարևոր տեղ ունի տեղական արդյու-
նաբերությունը։ Իջևանի տեղական արդյունաբերության կոմբինատը տարե-
կան տալիս է 2 միլիոն ռուբլու արտադրանք։ Հիմնականում աշխատելով
տեղական հումքի բազայի վրա՝ այդ ձեռնարկությունը տարեցտարի ընդար-
ձակվում է։ Կոմբինատը արտադրում է այնպիսի կարևոր շինանյութեր, ինչ-
պես՝ կղմինդրը, աղյուսը, կիրը, արդյունահանում է շինարարական քար և
ավազ։ 1959 թվականին շահագործման է հանձնվելու տեղարդ կոմբինատի
կրի գործարանը՝ տարեկան 5000 տոննա կրի արտադրությամբ։ Կազմակերպ-
վելու է պարկետի և կահույքի արտադրություն, տարեկան արտադրվելու է
40 հազար քառակուսի մետր պարկետ, իսկ կահույքի արտադրանքը կհասցվի
մեկ միլիոն ռուբլու։*

*1959 թվականին կավարտվի Աղստաֆա—Իջևան բարձր լարման էլեկ-
տրահաղորդման գծի անցկացումը, որով մեծ չափով կավելանա էլեկտրա-
էներգիայի մատակարարումը և կբավարարվի շրջանի արդյունաբերության
ու գյուղատնտեսության անընդհատ աճող էլեկտրաէներգիայի պահանջը։ Ար-
դյունաբերության հետագա զարգացմանը մեծ չափով կնպաստի նաև Ղարա-
դաղ—Երևան գազամուղի կառուցումը, որից կօգտվի նաև Իջևանը։ Բնական
գազը կօգտագործվի արդյունաբերության և կոմունալ-կենցաղային կարիքնե-
րի համար։*

*Երևան—Աղստաֆա երկաթգծի կառուցումը նույնպես մեծ նշանակու-
թյուն կունենա մեր շրջանի տնտեսության զարգացման համար, որովհետև
կոլտնտեսությունները, սովետական տնտեսությունները, արդյունաբերական
ձեռնարկությունները և մյուս կազմակերպությունները Աղստաֆա կայարանից
փոխադրումների համար յուրաքանչյուր տարի միլիոնների հասնող ծախսեր
են կատարում. այն բացասաբար է անդրադառնում տնտեսությունների և
կազմակերպությունների աշխատանքի վրա։ Երևան—Աղստաֆա երկաթգծի
գործարկումով զգալի չափով կհեշտանա ձեռնարկությունների ու կոլտնտե-
սությունների մատակարարումը։*

*Յոթնամյա պլանով առանձնապես լայն հեռանկարներ են նախագծված
շրջանի գյուղատնտեսության զարգացման համար։ Այստեղ գյուղատնտեսու-
թյան կարևոր ճյուղերից է ծխախոտագործությունը, որը, ինչպես նշեցինք
վերևում, բարձր եկամտաբեր կուլտուրա է, որի մշակությունը ամեն կերպ
պետք է զարգացվի։ Սակայն ծխախոտի արտադրությունը նախատեսվում է
ավելացնել ոչ թե ցանքատարածությունների ընդարձակման, այլ բերքատվու-
թյան բարձրացման հաշվին։ Բերքատվության բարձրացումը տեղի է ունենա-
լու ծխախոտի կուլտուրայի մշակության ագրոտեխնիկան բարելավելու, ջեր-*



*մոցային տնտեսությունը օրինակելի ձևով կազմակերպելու, չորանոցային
տնտեսության վրա լուրջ ուշադրություն դարձնելու միջոցով։ Եթե 1958 թվա-
կանին յուրաքանչյուր հեկտարից ստացվել է 15,7 ցենտներ ծխախոտի միջին
բերք, ապա 1965 թվականին այն հասնելու է 18,2 ցենտների։ 1965 թվա-
կանին շրջանի կոլտնտեսությունները և սովետական տնտեսությունները պե-
տությանը կհանձնեն 17 հազար ցենտներ ծխախոտի հումք, կամ, 1958 թվա-
կանի համեմատությամբ, համախառն բերքը կաճի 1,4 տոկոսով։ Ծխախոտի
հումքի արտադրությունն այդ չափին հասցնելու և որակը բարձրացնելու մի-
ջոցով մեր կոլտնտեսություններն ու սովետական տնտեսությունները այդ
ճյուղից կստանան 31,0 միլիոն ռուբլու եկամուտ։*

*Շրջանի հողակլիմայական պայմանները շատ նպաստավոր են անասնա-
բուծության զարգացման համար։ Վերջին մի քանի տարիների ընթացքում
այդ բնագավառում զգալի հաջողություններ կան. կոլտնտեսությունները և
սովետական տնտեսությունները իրենց եկամտի մի զգալի մասը ստանում են
անասնաբուծությունից։ Նկատի ունենալով այդ, յոթնամյա պլանով ավելաց-
վելու է կովերի գլխաքանակը. 1965 թվականին այն հասցվելու է 4826 գլխի,
որը հնարավորություն կտա կաթի արտադրությունը, 1958 թվականի համե-
մատությամբ, ավելացնել մոտ երկու անգամ, իսկ յուրաքանչյուր կովի կաթ-
նատվությունը կհասնի 1700 կիլոգրամի։ Կաթի համախառն արտադրանքը
1958 թվականի 40 հազար ցենտների փոխարեն 1965 թվականին կկազմի
80,4 հազար ցենտներ. անցյալ տարվա 10.530 ցենտների դիմաց 1965 թվա-
կանին պետությանը կհանձնվի մոտ 21 հազար ցենտներ միս։ Զգալի չափով
աճելու է նաև բրդի ու ձվի արտադրությունը։*

*Ինչպես տեսնում ենք, անասնաբուծական մթերքների արտադրությունը
աճելու է, մի կողմից՝ գլխաքանակի ավելացման, մյուս կողմից՝ մթերատվու-
թյան բարձրացման հաշվին։ Այդ նպատակով կոլտնտեսություններն ու սո-
վետական տնտեսությունները կոնկրետ միջոցառումներ են մշակել կերի ար-
տադրությունն ավելացնելու համար։ Մեծ չափերով ավելացվելու են եգիպ-
տացորենի և կերային մյուս կուլտուրաների ցանքատարածությունն ու բեր-
քատվությունը։ Լուրջ ուշադրություն է դարձվելու բնական մարգագետինների
մակերեսի բարելավման և բերքատվության բարձրացման վրա։ Այդ միջոցա-
ռումների շնորհիվ խոտի կուտակումը 1965 թվականին կհասնի 21.626,
ծղոտինը՝ 10.000, սիլոսինը՝ 23.592 տոննայի։ Կրկնապատկվելու են ցանովի
կերաբույսերի տարածությունները և բերքատվությունը։*

*Եգիպտացորենի ավելի քան 1500 հեկտար տարածության յուրաքանչյուր
հեկտարից ստացվելու է 400 ցենտներ կանաչ մասսա և 40 ցենտներ հատի-
կային բերք։ Վերը նշված քանակությամբ կերի արտադրությունը լի ու լի
կբավարարի անասնաբուծության պահանջները և հնարավորություն կտա
անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնել նախատեսված
չափերով։*

*Շրջանի կոլտնտեսությունների և սովետական տնտեսությունների էկոնո-
միկայի զարգացման համար կարևոր նշանակություն ունի այգեգործությունը,
որը հողագործության ամենաեկամտաբեր ճյուղերից մեկն է։ Յոթնամյա պլա-
նով նախատեսված է խաղողի և պտղատու այգիների տարածությունը 1958
թվականի 691 հեկտարից 1965 թվականին հասցնել 1600 հեկտարի։*

*Ագրոտեխնիկական անհրաժեշտ միջոցառումների կիրառման շնորհիվ*

*1965 թվականին խաղողի համախառն բերքը հասնելու է 26.057 ցենտների և արտադրվելու է 19.152 ցենտներ պտուղ։ Այգեգործության զարգացման պլանները հաջող կատարելու համար կոլտնտեսություններն ու սովետական տնտեսությունները այժմվանից նախապատրաստում են նոր այգիների համար առանձնացված հողերը, միջոցներ են ձեռք առնում այգեգործության աշխատատար պրոցեսները մեքենայացնելու և այլն։*

*Շրջանում ավելացվելու է նաև բանջարա-բոստանային կուլտուրաների արտադրությունը։ 1958 թվականին կոլտնտեսություններում և սովետական տնտեսություններում ստացված 5613 ցենտների փոխարեն 1965 թվականին ստացվելու է 14.221 ցենտներ բանջարա-բոստանային կուլտուրաների համախառն բերք։ Շրջկենտրոնի բնակչությունը ձմռան ու գարնան ընթացքում թարմ բանջարեղենով ապահովելու նպատակով մերձավանային կոլտնտեսություններում ստեղծվելու է ջերմոցային բանջարաբուծություն։ Ներկայումս այդ կոլտնտեսությունները նախապատրաստական աշխատանք են կատարում միջկոլտնտեսային խոշոր ջերմոցներ կազմակերպելու համար։*

*Այս թվերը ցույց են տալիս, որ մինչև 1965 թվականը զգալիորեն ավելացվելու է խաղողի, պտուղների և բանջարեղենի արտադրությունը, որոնց վերամշակման համար նախատեսվում է մոտ ապագայում Իջևանում կառուցել խաղողի վերամշակման և պահածոների գործարաններ։*

*Իջևանի շրջանում գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը բարձրացնելու, կերի կայուն բազա ստեղծելու գործում պակաս նշանակություն չունի նաև ցանքատարածությունների և մարգագետինների ոռոգման ցանցի ընդարձակումը, որովհետև պարբերաբար կրկնվող երաշտը և ամառային խիստ չոր կլիման մեծ վնաս են հասցնում ինչպես ցանքատարածություններին, այնպես էլ խոտհարքներին ու արոտավայրերին։*

*Յոթնամյա պլանով նախատեսված է ավարտել Խաշթառակի ջրանցքի շինարարությունը, որի գործարկումով ոռոգելի կդառնան ավելի քան 300 հեկտար ցանքատարածություններ և այգիներ։ Աչաջրի և Ուզունթալայի կոլտնտեսություններում կառուցվելու է 3 ջրհան կայան, որոնք ջրովի կդարձնեն 260 հեկտար տարածություններ։ Միջտնտեսային և կոլտնտեսային ոռոգման ցանցի ստեղծումով ոռոգելի կդառնան հարյուրավոր հեկտար նոր հողատարածություններ, որտեղ հիմնականում կզարգացվեն այգեգործությունը և ծխախոտագործությունը։*

*Իջևանի շրջանի պարտիական, սովետական, տնտեսական կազմակերպությունները և գյուղատնտեսական օրգանները՝ խորամուխ լինելով արդյունաբերական ձեռնարկությունների, կոլտնտեսությունների և սովետական տնտեսությունների էկոնոմիկայի մեջ, կմոբիլիզացնեն ողջ աշխատավորության ուժերը յոթնամյա պլանով շրջանի առջև դրված հոյակապ խնդիրների անթերի իրականացման համար։*

Ա. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

ՀԿՊ Իջևանի շրջկոմի քարտուղար

# ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԱՌԱՋԱՎՈՐ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

«Անհրաժեշտ է միջոցառումներ ձեռնարկել ետ մնացող կոլտնտեսությունները տնտեսապես ամրապնդելու և յուրաքանչյուր շրջանում այդպիսիներն առաջավոր կոլտնտեսություններին հասցնելու համար»:

ՀԿԳ XX ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԲԱՆԱՁԵՎԻՑ

## ՀԶՈՐ ՎԵՐԵԼՔԻ ՃԱՆԱՊԱՐՀԻՆ

*Ահա և Մոսեսգեղը, Տաուշի լեռնաշխարհի այդ գեղատեսիլ վայրը։ Նա թիկն է տվել սեպաձև ու հողմահարված լեռան ուղղաթեք լանջերին, սեղմված՝ սարերով ու քերծերով շրջապատված ձորի մեջ, ուր օրնիբուն խոխոջում է լեռնային գետակը։ Գեղեցիկ է գյուղը, մասնավորապես գարնանը, երբ ծաղկում են այգիները և կանաչ թավշի մեջ խորասուզվում նրա գողտրիկ առանձնատները։ Նա տիպիկ լեռնային գյուղ է։ Այստեղ գրեթե չկան հարթ, տափարակ տարածություններ, դաշտերն ու արոտները ընկած են լեռնալանջերում, սարահարթերի վրա։ Մոսեսցիները սիրում են հայրենի գյուղը, իրենց հանդն ու հողը։ Տարին բոլոր կռվի մտած բնության հետ, հաղթահարելով նրա կամակորությունները, հողի աշխատավորներն ավելացնում են հանրային բարիքները, շենացնում իրենց գյուղը։*

*Եկող տարի լրանում է Մոսեսգեղի «Ինտերնացիոնալ» կոլտնտեսության հիմնադրման 30 տարին, որն այժմ դարձել է խոշոր ու զարգացած միլիոնատեր տնտեսություն։ Առանձնապես ակնառու են կոլտնտեսության ձեռք բերած հաջողությունները 1953 թվականից, մասնավորապես, ՍՄԿՊ XX համագումարից հետո ընկած ժամանակամիջոցում, երբ պարտիան իր արմատական, հեղաշրջող միջոցառումներով օգնեց գյուղի աշխատավորներին՝ հաղթահարելու գյուղատնտեսության տևականորեն ետ մնալը, վճռականորեն բարձրացնելու պարենի ու հումքի արտադրությունը։ Մարդիկ այստեղ սկսեցին ավելի համարձակ նախաձեռնել, լրջորեն խորհել հանրային գործերի մասին, և զուգակցելով պետական ու կոլտնտեսային շահերը՝ ճիշտ պլանավորել արտադրությունը։*

*Գյուղատնտեսական արտելը բազմաճյուղ տնտեսություն է։ Այստեղ մշակում են հացահատիկային կուլտուրաներ, ծխախոտ, զբաղվում են անասնաբուծությամբ։ Հինգ տարի առաջ, համարյա ամբողջ վարելահողը գտնվում էր հացահատիկի ու ծխախոտի ցանքի տակ. ցածր էր բերքատվությունը, քիչ էին դրանցից ստացված եկամուտները։ Հաշվի առնելով հողա-կլիմայական պայմանները և եղած հնարավորությունները, զգալի փոփոխություն մտցվեց ցանքաշրջանառության մեջ։ Աստիճանաբար կրճատելով այդ երկու կուլտուրաների մշակության տակ եղած տարածությունները, ուշադրությունը կենտրոնացվեց դրանց բերքատվության բարձրացման վրա։ Ազատված հողերում գցվեցին պտղատու այգիներ, սկսեցին մշակել եգիպտացորեն, կարտոֆիլ, բանջարաբոստանային կուլտուրաներ։ Կոլտնտեսության աշխատանքների վրա բարերար*

ազդեց նաև մեքենատրակտորային կայանների վերակազմումը։ Պետությունից
գնվեց տեխնիկան. այժմ արտելն իր մեքենայական պարկում ունի վեց տրակ-
տոր, չորս կալսիչ, հացահատիկային կոմբայն, բուլդոզեր, բազմաթիվ գյու-
ղատնտեսական գործիքներ, մեքենաներ, ինչպես նաև տասներկու բեռնատար
ավտոմեքենա։ Հողի մշակությունը և մեքենաների օգտագործումը կազմա-
կերպվեց ավելի արդյունավետ։ Աճել են պրակտիկ-մասնագետների, արտա-
դրության կազմակերպիչների մեծ թվով կադրեր։ Նկատելի կերպով բարձրա-
ցել է կոլտնտեսականների աշխատանքային ակտիվությունը։ Ուրախալի երե-
վույթ է, երբ վերջին տարիներին արտադրության մեջ աշխատանքի են անց-
նում միջնակարգ կրթություն ստացած ավելի ու ավելի շատ խանդավառ երի-
տասարդներ. միայն երկու տարում դպրոցից անմիջապես արտադրություն են
եկել համարյա բոլոր շրջանավարտները։

Կոլտնտեսային արտադրության առաջատար ու կազմակերպող ուժը կո-
մունիստներն են։ Պարտիական կազմակերպությունը կազմակերպում և ուղ-
ղություն է տալիս տնտեսության աշխատանքին, կոլտնտեսականների ջան-
քերն ուղղելով գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման
նպատակին։ Տնտեսության լավ ղեկավարից շատ բան է կախված։ Այդպիսին
է կոլտնտեսության նախագահ Սեդրակ Պապյանը, որն արդեն երրորդ տարին
է, ինչ կանգնած է արտադրության ղեկի մոտ։ Նա մասնագետ է, եռանդուն
կազմակերպիչ, և ամեն կերպ ջանում է արդարացնել իր համագյուղացիների
վստահությունը։ Այդ վստահությունը նրան շատ բան է պարտավորեցնում։

Անկասկած, այս ամենը պայմանավորեցին հանրային արտադրության
անընդհատ վերելքը, նպաստեցին կոլտնտեսականների կյանքի ու կենցաղի
հետագա բարելավմանը։ Ահա մի քանի թվեր։ 1953 թվականին կոլտնտեսու-
թյան դրամական եկամուտները կազմել են 3,9 միլիոն ռուբլի, իսկ 1958 թվա-
կանին՝ դրանք հասել են 5,5 միլիոնի։ Այժմ կոլտնտեսությունը զգալիորեն
ավելի շատ մթերք ու հումք է արտադրում, քան հինգ տարի առաջ։ Այդ նույն
ժամանակամիջոցում 100 հեկտար հողատարածության հաշվով դրամական
եկամուտները մոտ 130 հազար ռուբլուց բարձրացել են 198 հազարի, իսկ ան-
բաժանելի ֆոնդը՝ 3,5 միլիոնից մինչև 7,7 միլիոն ռուբլու։ Մի՞թե կոլտնտե-
սության ուժեղացման մասին չի վկայում այն փաստը, որ միայն անցյալ տա-
րի կատարվել են 1,9 միլիոն ռուբլու կապիտալ ներդրումներ, այսինքն՝ 4,5
անգամ ավելի, քան ներդրվել է 1953 թվականին։

ՍՄԿԿ XXI համագումարի որոշումները մեծ ոգևորությամբ ընդունեցին
նաև Մոսեսգեղի աշխատավորները, նրանց կատարումը համարելով իրենց
սեփական գործը։ Հաշվի առնելով իրենց հնարավորություններն ու պայման-
ները, կշռադատելով արդեն ձեռք բերվածը, նրանք որոշեցին իրենց կոնկրետ
անելիքներն առաջիկա յոթնամյակում։ Կոլտնտեսության զարգացման հեռա-
նկարները մեծ են, հոյակապ։ Բավական է ասել, որ դրամական եկամուտնե-
րը 5,5 միլիոն ռուբլուց 1965 թվականին հասնելու են 9—9,2 միլիոնի։

## ՄԱՐԴԸ ՀԱՂԹԱՀԱՐՈՒՄ Է ՏԱՐԵՐՔԸ

Մոսեսգեղի կոլտնտեսականները հմուտ ու փորձված ծխախոտագործներ
են, ծխախոտի մշակության իսկական վարպետներ։ Ազնիվ ու քրտնաջան աշ-
խատանքով նրանք մեկ անգամ չէ, որ իրավունք են նվաճել մասնակցելու Հա-



մամիութենական Գյուղատնտեսական ցուցահանդեսին. անցած տարիներին
բարձր բերք աճեցնելու համար տասնյակ կոլտնտեսականներ պարգևատրվել
են կառավարական շքանշաններով ու մեդալներով, ռեսպուբլիկայի Գերագույն
Սովետի Պատվոգրերով։

Երբ ծանոթանում ես ծխախոտագործների աշխատանքին, լսում նրանց
պարզ ու հիմնավոր բացատրությունները, ուղղակի հրճվում ես, ամբողջ սրտով
ուրախանում։ Ինչպիսի՜ գիտակ ու ժրաջան, ազնիվ մարդիկ են աճել մեր գյու-
ղում։ Անջրդի հողերի վրա այստեղ ամեն տարի ստացվում է ծխախոտի բարձր
բերք։ Հողի աշխատավորներին չեն կարող վախեցնել ո՛չ երաշտը, ո՛չ էլ կար-
կուտն ու լեռնային հեղեղները։ Ծխախոտագործները փորձով ու գիտության
ուժով, իրենց զորեղ կամքով կարողանում են հաղթահարել տարերքը։
Ահա արտաքուստ աչքի չզարնող երեք սովորական կանայք՝ Ջավահիր Հովա-
կիմյանը, Աստղիկ Մերելյանը և Գեղեցիկ Մարգարյանը։ Որքա՜ն ուժ ու կորով
կա նրանց մկաններում, ինչպիսի՜ սիրտ է բաբախում նրանց կրծքի տակ։
Կամ մի՞թե բնությունը կարող է ծնկի բերել կոմունիստ Պետրոս Պապյանին,
ծխախոտագործության այդ անխոնջ վարպետին։ Իսկ այդպիսիները գյուղում
շատ և շատ են։

Այս կոլտնտեսության ծխախոտագործները սահման չճանաչող, «ագահ»
մարդիկ են։ Կար ժամանակ, որ նրանք պայքարում էին հեկտարից 15—18
ցենտներ հումք ստանալու համար։ Նրանք հասան դրան։ Բայց ձեռք բերվածը
նրանց չէր գոհացնում։ Եվ արդեն մի քանի տարի է, ինչ այդ արժեքավոր
կուլտուրայի պլանտացիաների յուրաքանչյուր հեկտարից կոլտնտեսականները
ստանում են 20 ցենտներից ոչ պակաս բերք։

1958 թվականի սկզբներին էր։ Ամփոփելով իրենց աշխատանքի նախորդ
տարվա արդյունքները, ծխախոտագործները պարտավորվեցին հեկտարից
ստանալ 24 ցենտներ։ Դյուրին չէր կատարել այդ պարտավորությունը, մա-
նավանդ, որ հենց տարվա սկզբից չկային մթնոլորտային տեղումներ, օդը և
հողը չոր էին։ Եվ վերստին պայքարի մեջ մտան մոսեսցիները։ Դեռևս անցյալ
աշնանը մեքենաներով կատարվել էր խոր ցրտահերկ՝ ծխախոտի մշակության
տակ դրված հողերում, պարարտացվել էին դաշտերը։ Անցյալ տարիների հա-
մեմատ, գարնանը ծխախոտագործներն ավելի խնամքով ձեռնամուխ եղան
հողի նախասածիլային մշակությանը, պարարտացման աշխատանքներին։
Նրանք ջերմոցներում աճեցրին առողջ ու փարթամ սածիլներ, սեղմ ժամ-
կետում ավարտեցին սածիլումը։ Սակայն չորությունից արմատի վրա թոր-
շոմում էին սածիլները, ջուր էր պետք։ Եվ մարդիկ առանց հոգնելու՝ ավտոմե-
քենաներով ու սայլերով ջուր էին տեղափոխում։ Հաջող կազմակերպելով
պլանտացիաների մշակությունը և տերևաքաղը, մինչև ցրտերն ընկնելը լրիվ
հավաքվեց ծխախոտի մինչև վերջին տերևը։ Փառքով պսակվեց կոլտնտեսական-
ների քրտնաջան աշխատանքը՝ 90 հեկտար պլանտացիայի յուրաքանչյուր հեկ-
տարից միջին հաշվով ստացվեց 29,24 ցենտներ ծխախոտի հումք։ Դա արդեն
իսկական ռեկորդ էր, հերոսական սխրանք։ Եվ այդ այն ժամանակ, երբ 1954
թվականին յուրաքանչյուր հեկտարից հավաքվել էր ընդամենը 20,2 ցենտներ
բերք։ Ավելացել է ամեն մի հեկտարից ստացվող հասույթը. եթե 1954 թվա-
կանին այն եղել է 21.200 ռուբլի, ապա 1958 թվականին կազմել է 40.330
ռուբլի։

Նախատեսվել է առաջիկա յոթնամյակում ծխախոտագործությունից ստաց-

վող եկամուտները հասցնել չորս միլիոն ռուբլու, 1958 թվականի 3,6 միլիոնի դիմաց։ Անհրաժեշտ է, որ կոլտնտեսության պարտիական կազմակերպությունը և վարչությունը ամրապնդեն նվաճածը, ավելի խելացիորեն օգտագործեն հանրային արտադրության ընդերքում եղած հնարավորություններն ու ներքին ռեզերվները, որոնք շատ են այստեղ։ Այսպես, օրինակ. բնա-կլիմայական ու հողային նույն պայմաններում անցյալ տարի Գ. Պապյանի ղեկավարած դաշտավարական բրիգադայի ծխախոտագործներն իրենց մշակած հողամասի յուրաքանչյուր հեկտարից ստացան 34 ցենտներ բերք, իսկ Ս. Խոջայանի բրիգադան՝ 22,1 ցենտներ։ Գյուղի կոմունիստների կարևորագույն խնդիրն է՝ դաստիարակչական ու կազմակերպական աշխատանքի միջոցով ետ մնացող օղակներն ու ծխախոտագործներին հասցնել առաջավորների մակարդակին։ Նման ռեզերվ է հանդիսանում նաև հանձնվող հումքի որակը։ 1958 թվականին, մոտավոր հաշիվներով, ֆերմենտացիոն գործարանին հանձնված ծխախոտի հումքի 0,3%-ը եղել է առաջին տեսակի, 10%-ը՝ երկրորդ տեսակի, 85%-ը՝ երրորդ տեսակի և 4,7%-ը՝ չորրորդ տեսակի, որոնց գնման գների միջև եղած տարբերությունը բավական մեծ է։ Արժե այդ թվերի վրա լուրջ ուշադրություն դարձնել։ Վնասը երկուստեք է. երկիրը չի ստացել ծխախոտի բարձրորակ հումք, իսկ կոլտնտեսությունը զրկվել է լրացուցիչ եկամուտներից։

## ԶԱՐԳԱՑՈՂ ՆՈՐ ՃՅՈՒՂԵՐ

Անցած տարիների ընթացքում զգալի առաջխաղացում կա նաև դաշտավարության մյուս ճյուղերում։ 1953 թվականի համեմատությամբ մշակվում է մոտ 200 հեկտարով պակաս հացահատիկ. կրճատելով ցանքատարածությունը, աշխատավորների ջանքերն ուղղվեցին՝ բերքատվության բարձրացման միջոցով հացահատիկի համախառն արտադրանքն ավելացնելու գործին։ Այսպես, 1957 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, արտադրվեց հազար ցենտներից ավելի հացահատիկ։ Առաջիկա յոթնամյակում ևս հացահատիկի արտադրությունը մնալու է տնտեսության ուշադրության կենտրոնում։ Նախատեսված է 1965 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, հացահատիկի մեկ հեկտարի բերքատվությունը 8-ից հասցնել 16 ցենտների։

Եգիպտացորենը այստեղ նոր կուլտուրա է։ Մի քանի տարի առաջ մարդիկ տարակուսում էին, թե իրենց պայմաններում, անջրդի հողերի վրա այն կարող է արդյո՞ք բարձր բերք տալ։ Կյանքը հերքեց թերահավատների կարծիքը։ Եթե առաջ մշակվում էր ընդամենը 0,9 հեկտար եգիպտացորեն, ապա անցյալ տարի մշակվել է 86,8 հեկտար եգիպտացորեն, որից 57,5 հեկտարը հատիկի համար։

— 1958 թվականին,— ասում է կոլտնտեսության նախագահը,— եգիպտացորենի մեկ հեկտարից միջին հաշվով ստացանք 27,1 ցենտներ հատիկ և 143 ցենտներ կանաչ մասսա։ Ճիշտ է, նախորդ տարիների համեմատ բերքատվությունը բարձրացել է, բայց այն դեռևս ցածր է։ Մեզ մոտ այդ կուլտուրան լավ է աճում, դիմանում է չորությանը։ Յոթնամյակի վերջում կրկնապատկվելու է եգիպտացորենի ցանքատարածությունը, և նախատեսվում է հեկտարից ստանալ 35 ցենտներ հատիկ և 300 ցենտներ կանաչ մասսա։

Բոլորովին նոր կուլտուրա է նաև կարտոֆիլը։ Անցյալ տարի մշակվել է մոտ 44 հեկտար՝ 1953 թվականի 1,8 հեկտարի դիմաց։ Տարեցտարի բարձրա-



նում է նրա բերքատվությունը. եթե 1954 թվականին հեկտարից հավաքվել է 56 ցենտներ կարտոֆիլի բերք, ապա անցած տնտեսական տարում այն հասավ 108,8 ցենտների։ Ճիշտ է, դա դեռ քիչ է, բայց այն տենդենց ունի աճելու։ Բավական է ասել, որ այդ նույն տարում Գ. Պապյանի և Մ. Զոփուրյանի ղեկավարած բրիգադները հեկտարից ստացան 131—135 ցենտներ կարտոֆիլի բերք։ Խնդիր է դրված առաջիկայում ավելի բարձրացնել այդ կուլտուրայի բերքատվությունը։

Ինչպես Շամշադինի շրջանի մյուս կոլտնտեսություններում, այնպես էլ այստեղ մեծ են այգեգործության զարգացման հեռանկարները։ Առաջիկա յոթնամյակում, ծխախոտի հետ մեկտեղ, այն դառնալու է տնտեսության առաջատար ու եկամտաբեր ճյուղը։ Վերջին 3—4 տարիներում գցվել են նոր այգիներ, շարունակվում է այդ գործը նաև այժմ։ 1953 թվականի համեմատ, մոտ 3,5 անգամ ավելացել են պտղատու այգիների և համարյա թե քառապատկվել խաղողի այգիների տարածությունները։ Այժմ կոլտնտեսությունն ունի 17 հեկտար պտղատու (որից բերքատու է յոթը) և 53 հեկտար խաղողի այգի (որից բերքատու է 16 հեկտար)։ Քաղցրահամ և բարձրորակ է խաղողը, լավ հումք է շամպայն գինու արտադրության համար։ Կրկնապատկվել է խաղողի բերքատվությունը. 1957—1958 թվականներին մեկ հեկտար այգուց ստացվել է 82—102 ցենտներ խաղող։

Այգեգործությունից ստացված ընդհանուր դրամական եկամուտն արդեն անցյալ տարի հասավ 612 հազար ռուբլու, այսինքն՝ 1953 թվականի համեմատությամբ այդ ճյուղերից ստացված եկամուտներն ավելացան 3,5 անգամ։

ՀԿՊ Շամշադինի շրջկոմի քարտուղար Ա. Փոլադյանը, շրջանում այգեգործության զարգացման այդ եռանդուն պրոպագանդիստն ու կազմակերպիչը, իր համագյուղացիների հետ ունեցած զրույցի ժամանակ համոզում էր նրանց այգեգործության զարգացման օգտավետության մեջ։

— Դուք շրջանում ամենաուշը ձեռնամուխ եղաք այդ գործին,— ասում է նա,— հարկավոր է վերականգնել կորցրած ժամանակը։ Պետք է ամեն կերպ ընդլայնել այգետնկումները, բարձրացնել բերքը, երիտասարդության մեջ սեր պատվաստել դեպի այգեգործությունը։ Իսկ դուք դեռ ետ եք մնում։ Ձեր հարևան կոլտնտեսություններն արդեն հեկտարից ստանում են 135—170 ցենտներ խաղող։

Նախատեսված է մինչև 1965 թվականը խաղողի այգիների տարածությունը հասցնել 120 հեկտարի, իսկ պտղատու այգիներինը՝ 30 հեկտարի։ Զգալիորեն աճելու է բերքատվությունը։ Ստեղծվում է սեփական տնկարանային տնտեսություն, կառուցվելու են նոր ջրամբարներ, ավարտվելու է ոռոգման ցանցը։ Պլանավորել են յոթնամյակի վերջում այգեգործությունից ստանալ մոտ չորս միլիոն ռուբլու եկամուտ, այսինքն՝ այնքան, որքան սպասում են ստանալ ծխախոտագործությունից 1965 թվականին։

## ԱՆԱՍՆԱԲՈՒԾՈՒԹՅՈՒՆԸ ԴԱՐՁՆԵԼ ԵԿԱՄՏԱԲԵՐ

Անցած հինգ տարիների ընթացքում, ճիշտ է շատ դանդաղ, բայց որոշ աճ է նկատվում անասնաբուծության մեջ։ Մեկ ֆուրաժային կովի կաթնատվությունը աստիճանաբար բարձրանալով, 1953 թվականի 610 լիտրից հասել է 845 լիտրի։ Անցյալ տարի մեկ ոչխարից խուզվել է 2,5 կիլոգրամ բուրդ,

մեկ ածան հավից ստացվել է 75 հատ ձու։ Առանձնապես ուշագրավ է տեղա-
շարժը ոչխարաբուծության բնագավառում. ավելացել է ոչխարների գլխաքա-
նակը, բարելավվել նրանց ցեղը. 1953 թվականի համեմատությամբ բրդի հա-
մախառն արտադրանքն ավելացել է մոտ 1,4 անգամ։ Զարգացման լայն հե-
ռանկարներ ունի խոզաբուծությունը. եթե 1955 թվականին 100 հեկտար վա-
րելահողի հաշվով արտադրվել է 4,2 ցենտներ խոզի միս, ապա անցյալ տա-
րի ստացվել է 19 ցենտներ։

Սակայն անասնաբուծությունը մնում է այս առաջավոր կոլտնտեսության
նեղ տեղը, և անասնապահական մթերքների արտադրանքով նա խիստ ետ է
մնում։ Ինչո՞ւմն է բանը։ Ինչո՞ւ գյուղի կոմունիստները, որ քիչ ջանքեր չեն
գործադրել տնտեսության մյուս ճյուղերը զարգացնելու, հողի եկամտաբերու-
թյունն անշեղորեն բարձրացնելու ուղղությամբ, չեն կարողացել արմատական
բեկում ստեղծել այդ բնագավառում ևս։

Ամենից առաջ կաթի համախառն արտադրանքը շատ քիչ է։ Դրա հիմնա-
կան պատճառն այն է, որ հանրային հոտում քիչ է կովերի գլխաքանակը՝ 100
հեկտար հողատարածության հաշվով այստեղ կա 11,2 գլուխ կով։ Կոլտնտե-
սությունը նախատեսել է առաջիկա յոթնամյակում 100 հեկտար հողատարա-
ծության դիմաց ունենալ 16 գլուխ կով, և այդ այն ժամանակ, երբ ռեսպուբ-
լիկայի գյուղատնտեսության առաջավորներն իրենց առջև խնդիր են դրել մինչև
1965 թվականը կովերի գլխաքանակը հասցնել ոչ պակաս, քան 20 գլխի։
Անասնաբուծությանը մեծ հարված է հասցնում ստերջությունը, անցյալ տարի
կովերի մոտ 25 տոկոսը ստերջ է մնացել։ Զնայած շատ միջոցներ ու աշխա-
տանք են ծախսվում կովերի պահպանման վրա, այնուամենայնիվ, նրանց
կաթնատվությունը ցածր է։ Դա հիմնականում բացատրվում է նրանով, որ
այստեղ դրեթե ոչինչ չի արված կովերի ցեղայնության բարելավման ուղղու-
թյամբ. տեղական «Ղազախ» կովի կաթնատվությունը ցածր է, նրանից ստաց-
ված եկամուտը՝ աննշան։ Կոլտնտեսությունը որոշել է այս տարի կազմակեր-
պել կովերի արհեստական սերմնավորման աշխատանքը, տարեցտարի հո-
տում ավելացնել ցեղական անասունների գլխաքանակը և, մասնավորապես,
բարելավել տեղական բարձրակիթ կովերի խնամքն ու կերակրումը։
Անասնաբուծության բնագավառում կան դեռևս մի շարք չլուծված հար-
ցեր, որոնք կոլտնտեսությունը որոշել է լուծել առաջիկա յոթնամյակում. դրան-
ցից առաջինը կերի հարցն է։ Հեռանկարային պլանով, որն արդեն գործողու-
թյան մեջ է, նախատեսվում է սեփական արտադրանքի միջոցով անասունները
լիուլի բավարարել կերով, մասնավորապես հյութալի ու հատիկային կերով։
Այդ նպատակով ընդարձակվելու են եգիպտացորենի, ցանովի խոտաբույսերի,
արմատապտուղների ցանքատարածությունները, մեծ չափով ավելանալու է
բերքատվությունը, անասունների կերի համար առանձնացվելու են մեծ քա-
նակությամբ գարի ու կարտոֆիլ։

1958 թվականին 100 կովից ստացվել է 65 հորթ և 100 մայր ոչխարից՝
86 գառ։ Դա շատ քիչ է։ Դեռևս մեծ են անասունների անկումները՝ անցյալ
տարի կորուստը կենդանի քաշով կազմել է 10,5 տոննա միս։ Վատ է կազմա-
կերպված անասունների բտումն ու գիրացումը։ Ամբողջությամբ վերցրած,
անասնաբուծությունը դեռևս չի դարձել եկամտաբեր։

Սրանք հարցեր են, որոնցով պետք է լրջորեն զբաղվեն գյուղի կոմու-
նիստները, բոլոր կոլտնտեսականները։ Այլևս հնարավոր չէ հանդուրժել նման



վիճակը։ Անասնաբուծության վիճակը չի կարելի բարելավել բազմաթիվ որո-
շումներով, նիստերով. պահանջվում են արմատական, գործնական միջոցա-
ռումներ։ Այդ միջոցառումներից մեկը թերևս կլինի անասնաբուծության մեջ
կադրերի ամրապնդման, նրանց պատասխանատվության բարձրացման հար-
ցը։ Մի՞թե նորմալ երևույթ է, երբ գյուղի 86 կոմունիստներից միայն հինգը
(ֆերմայի երկու վարիչներ, անասնաբույժ, թռչնապահ, ֆուրաժիր) և 140
կոմերիտականներից վեցն են աշխատում ֆերմաներում։

Կոլտնտեսության զարգացման յոթնամյա պլանում կարևոր տեղ է հատ-
կացված անասնաբուծությանը։ Զգալիորեն ավելանալու է անասունների մայ-
րական կազմը, բարելավվելու է նրանց ցեղայնությունը, բարձրանալու անաս-
նաբուծական մթերքների արտադրությունը։ Հողատարածության յուրաքանչյուր
100 հեկտարի դիմաց անցյալ տարվա 111 ցենտների փոխարեն արտադրվելու
է 230—240 ցենտներ կաթ, ինչպես նաև մոտ 50 ցենտներ միս՝ գերազանցա-
պես խոզի միս։ Առանձնապես զարկ է տրվելու ոչխարաբուծությանն ու խո-
զաբուծությանը։ Ոչխարների մայրական կազմը ներկայիս 1200 գլխից հասցը-
վելու է 2700—3000 գլխի, իսկ մեկ ոչխարի բրդատվությունը՝ 4,2 կիլոգրամի։

## ՔԻՉ ԾԱԽՍՈՒՄՆԵՐՈՎ ՇԱՏ ԱՐՏԱԴՐԱՆՔ

Աշխատանքի կազմակերպման, նորմավորման և վարձատրության ուղղու-
թյամբ այս կոլտնտեսությունն ունի դրական փորձ։ Վերջին երկու-երեք տա-
րիներին կոլտնտեսությունն աշխատանքի կազմակերպման խմբակային ձևից
աստիճանաբար անցավ անհատական գործավարձի սիստեմին։ Այժմ տնտե-
սության համարյա թե բոլոր ճյուղերում այն լայնորեն կիրառվում է։ Անհա-
տական գործավարձի սիստեմի առավելությունն իրոք որ մեծ է, դրանում
իրենց փորձով համոզվել են կոլտնտեսականները։

Վերցնենք անհատական գործավարձի կիրառումը ծխախոտագործության
մեջ։ Տարվա սկզբին ծխախոտի տակ դրված հողը ամրացվում է օղակներին,
իսկ օղակների ներսում հողակտորները բաժանվում են առանձին կոլտնտեսա-
կանների միջև։ Ծխախոտագործ կոլտնտեսականը դառնում է իրեն ամրացված
հողամասի միակ պատասխանատուն, նրա լիակատար տերն ու տնօրենը. նա
ինքն է նախապատրաստում հողը, սածիլում, մշակում պլանտացիան, կազ-
մակերպում տերևաքաղը և լրացուցիչ աշխատողների օգնությամբ շարում, չո-
րացնում։ Նման աշխատակարգը, անկասկած, մեծապես բարձրացնում է աշ-
խատանքի արտադրողականությունը և աշխատողի անձնական պատասխանա-
տվությունը հանձնարարված գործի նկատմամբ, պահպանվում է կոլտնտեսա-
կանի նյութական անձնական շահագրգռվածության սկզբունքը, խրախուսվում
է լավ աշխատանքը։ Եթե ծխախոտագործը գերակատարել է տրված առաջա-
դրանքը, ապա նա վաստակած աշխօրերից բացի ստանում է լրացուցիչ վար-
ձատրություն։ Այսպես է նաև կարտոֆիլի մշակության, այգեգործության մեջ։
Առաջադրանքի թերակատարման դեպքում սահմանված են տույժի համապա-
տասխան չափեր։ Աշխատանքի կազմակերպման և վարձատրության այդ պրո-
գրեսիվ եղանակը տվել է իր ցանկալի արդյունքը, դա հենց երևում է մթերք-
ների ու հումքի արտադրության աճման վերաբերյալ վերը բերված թվերից։
Բացի այդ, բոլորի համար պարզ է դառնում, թե տնտեսության մեջ ով է լավ

աշխատում, ով է եա մնում։ Նման պայմաններում մրցությունը խրոք որ գործարար բնույթ է ստանում։

Կոլտնտեսությունում աշխօրի բնամթերային վարձատրությունից աստիճանաբար անցնում են դրամական վարձատրության։ Արդեն անցյալ տարի եռամսյակը մեկ անգամ, վաստակած աշխօրերի դիմաց, կոլտնտեսականներն ավանսավորվել են դրամով։ Պայմաններ կան անցնելու ամենամսյա դրամական վարձատրության։

Կոլտնտեսության պարտիական կազմակերպության և վարչության ձեռնարկած աշխատանքի շնորհիվ զգալիորեն բարձրացել է աշխատանքային կարգապահությունը, կոլտնտեսականների գիտակից վերաբերմունքը դեպի հանրային գործը։ Բավական է ասել, որ եթե 1957 թվականին 943 աշխատունակ մարդուց 70-ը ոչ մի աշխօր չեն վաստակել, ապա անցյալ տարի 949 աշխատունակից ոչ մի աշխօր չեն վաստակել միայն 15-ը։ Պարտիական կազմակերպությունը (պարտբյուրոյի քարտուղար Գ. Այվազյան), աշխատավորների դաստիարակչական աշխատանքի ուժեղացման միջոցով պետք է հասնի այն բանին, որ գիտակցաբար բոլորը ակտիվորեն մասնակցեն հանրային աշխատանքներին։ Այդ կապակցությամբ պետք է զբաղվել մշտական մանկապարտեզի, մանկամսուրի բացման, կանանց տնային աշխատանքի հետագա թեթևացման հարցերով։

Լրջորեն պետք է մտածել ոչ արտադրողական ծախսերի հետագա կրճատման, արտադրանքի ինքնարժեքի իջեցման մասին, հասնել այն բանին, որ աշխատանքի ու միջոցների քիչ ծախսումով ստացվի ավելի շատ ու էժան արտադրանք։ Մեր կարծիքով, դեռևս շատ են վարչա-կառավարչական և սպասարկող անձնակազմի վրա կատարված ծախսերը։ Արտադրության առանձին օղակներում հնարավոր է աստիճանաբար վերացնել ավելորդ հաստիքները, որոշ աշխատանքներ կատարել հասարակական կարգով, զարկ տալ հասարակական միջոցառումներին։ Անցյալ տարի գոյություն ուներ դաշտավարական 10 բրիգադա, այս տարի դրանք ութն են. կրճատումը տեղին է։ Ներկայումս ամեն մի դաշտավարական բրիգադային ամրացված է 110—120 հեկտար մշակելի հող։ Դա քիչ է։ Պետք է մտածել առաջիկայում խոշորացնել բրիգադաները։

## ԱՅՆՊԵՍ, ԻՆՉՊԵՍ ՔԱՂԱՔՈՒՄ

Հանրային տնտեսության անշեղ աճման, նրա եկամուտների ավելացման հիման վրա բարձրանում է կոլտնտեսականների նյութական ու կուլտուրական մակարդակը։ Վերջին հինգ տարում մեծացել են աշխատավորների եկամուտները. բավական է նշել, որ մեկ աշխօրին տրված դրամական վարձատրությունն ավելացել է մոտ 1,5 անգամ։ Շատ ընտանիքների տարեկան ընդհանուր եկամուտների մեջ զգալի տեղ են գրավում այն լրացուցիչ մթերքներն ու դրամը, որ նրանք ստանում են առաջադրանքի գերակատարման դեպքում։

Մուսեսգեղի կոլտնտեսականների բարեկեցիկ կյանքի պերճախոս վկայությունն են՝ բնակչության բնական մեծ աճը, մահացության նվազումը, բնակարանային անընդհատ աճող շինարարությունը։ Եթե 1953 թվականին գյուղում կար 1832 բնակիչ, ապա 1959 թվականի սկզբում այնտեղ կար 2500 մարդ, որոնցից 1340-ը մինչև 12 տարեկան երեխաներն են։ Կոլտնտեսության մեջ միավորված 494 ընտանիքներում միայն 1957—1958 թվականներին ծնվել է 222 երեխա, եղել է ամուսնության 114 ակտ։ Գյուղում մարդիկ արդեն հագնվում են այնպես, ինչպես քաղաքում։



Այստեղ լայն ծավալ է ստացել բնակարանային շինարարությունը։ Անցյալում կառուցված տներն արդեն մարդկանց չեն բավարարում. աշխատավորներն իրենց միջոցներով կոլտնտեսության օգնությամբ կառուցում են երկհարկանի քարաշեն, ընդարձակ ու հարմարավետ քաղաքատիպ բնակարաններ՝ իրենց պատշգամբներով ու նկուղային հարմարություններով։ Այդ նպատակով արտելի վարչությունը կոլտնտեսականների տրամադրության տակ է դրել քարհանքը, տնտեսության ինքնաթափ ավտոմեքենաներ, շինարար վարպետներ և այլն։ Միայն վերջին երկու տարում գյուղում կառուցվել է 81 տուն։

Աշխատավորների բարեկեցությունն արտացոլվում է նաև ապրանքաշրջանառության աճի մեջ։ Երեք տարի առաջ շահագործման հանձնվեց գյուղկոոպի խանութի տիպային նոր շենքը։ Անցյալ տարի վերոհիշյալ խանութն իր ապրանքաշրջանառության պլանը գերակատարեց կես միլիոն ռուբլով, այն է՝ վաճառվեց 1,7 միլիոն ռուբլու պարենամթերք և արդյունաբերական ապրանք։ 1958 թվականի վերջերին կառուցվեց խանութի նույնատիպ մի շենք ևս, որը հոկտեմբեր-դեկտեմբեր ամիսներին վաճառեց ավելի քան 500 հազար ռուբլու ապրանք, երկու անգամ գերակատարելով ապրանքաշրջանառության պլանը։ Օրավուր ավելանում է բնակիչների պահանջը, լավանում նրանց ճաշակը, նրանք ցանկանում են գնել և՛ լավ կահույք, և՛ կենցաղային հարմարանքներ, և՛ բրդյա ու մետաքսյա թանկարժեք գործվածքներ։

Գյուղն էլեկտրիֆիկացված է, ունի իր սեփական փոքրիկ հիդրոկայանը, շուտով նա էներգիա կստանա Մինգեչաուրգէսից։ Գործում են 225 ռադիոընդունիչ և ռադիոտրանսլյացիոն 180 կետ։ Վերջին շրջանում կոլտնտեսությունը ձեռք է բերել հեռախոսային 110 համարանոց կոմուտատոր, հեռու չէ այն ժամանակը, երբ կոմուտատորը լրիվ կծանրաբեռնվի. արտադրական օբյեկտներում և շատ բնակարաններում կանցկացվեն հեռախոսներ։ Լեռնային գյուղի բնակիչները ստանում են հարյուրավոր թերթեր ու ամսագրեր, օգտվում են գրադարանից։ Գյուղն ունի իր միջնակարգ դպրոցը, որտեղ աշխատում են 27 ուսուցիչ, որոնց ճնշող մեծամասնությունը տեղացիներ են։ Ուսուցիչները և նրանց սաները ակտիվորեն մասնակցում են գյուղի հասարակական-քաղաքական կյանքին, հանրային աշխատանքներին։

Սկսվել է շինարարական մի տենդ։ Մեքենաներով բացում են կենտրոնական ընդարձակ փողոցը, որը մտադիր են ասֆալտապատել և ծառազարդել։ Քար են տաշում, ցեմենտ ու շինափայտ տեղափոխում, պատեր շարում, հարթում են ճանապարհները։ Իրավամբ շինարարական աշխատանքը դարձել է կոլտնտեսության աշխատանքի կարևոր բնագավառներից մեկը՝ մոտ յոթանասնյակ մարդ ընդգրկված է շինարարական բրիգադայում։ Աճել են շնորհալի որմնադիրներ, քարտաշներ, հյուսներ, ճանապարհաշինարարներ։

Հայաստանում Սովետական իշխանության հաստատման 38-րդ տարեդարձի օրը հանդիսավոր կերպով բացվեց կուլտուրայի տունը։ Այն կառուցվել է կոլտնտեսության միջոցներով և կոլտնտեսականների ձեռքով։ Մայրաքաղաքի բնակիչները կարող են նախանձել մոսեսցիներին։ Հարմարավետ է հինգ հարյուր տեղանոց դահլիճը՝ իր ամֆիթատրոնով, գեղեցիկ ջահերով, փափուկ աթոռներով, թավշյա վարագույրներով. ճաշակով են կառուցված ու կահավորված ճեմասրահները, ընդարձակ գրադարան-ընթերցարանը և այլն։

*Ահա և նորակառույց, այսպես կոչված, վարչական երկհարկանի շենքը։ Այստեղ են տեղավորված կոլտնտեսության վարչությունը և գյուղսովետի գործկոմը, երկու հարյուր տեղանոց ստացիոնար կինոթատրոնը, կապի բաժանմունքը, նիստերի փոքրիկ դահլիճը, կառուցվում է փոքրիկ հյուրանոցը։ Պետության և կոլտնտեսության համատեղ միջոցներով կառուցվում է դպրոցի երեքհարկանի շենքը. կառուցվում է սպորտ հրապարակ, վերասարքավորվում է բաղնիքը։ Այժմվանից մարդիկ, իսկական տիրոջ հոգատարությամբ, մտածում են, թե ինչպե՛ս օգտագործեն դպրոցի ներկայիս շենքը. կանայք առաջարկում են հին շենքից այստեղ փոխադրել բուժարանը, ծննդատունը, ինչպես նաև տեղավորել մշտական գործող մանկապարտեզն ու մանկամսուրը։*

*Արդեն ձեռք են բերված ջեռուցման կաթսան, խողովակները. մտադիր են ջեռուցում անցկացնել հասարակական շենքերում։ Գյուղն ապահոված է խմելու ջրով, կառուցվել են երեք աղբյուր-հուշարձաններ։ Աշխատավորների պահանջով մտադիր են կառուցել կենցաղային սպասարկման պավիլիոն՝ կարի և կոշիկի արհեստանոցներ, վարսավիրանոց, իսկ շենքի ներքին հարկում տեղավորվելու է կոլտնտեսության խանութը՝ սեփական արտադրանքը վաճառելու համար։ Կնոջ աշխատանքը թեթևացնելու նպատակով կառուցվելու է հացի փուռ. այլևս կինը ստիպված չի լինի իր տանը ամեն շաբաթ հաց թխել, խմորեղեն պատրաստել։*

*Վերջերս շահագործման հանձնվեց 5,2 կիլոմետր երկարությամբ լայն ու բարեկարգ ճանապարհը, որը ավտոգծով գյուղը միացնում է Բերդ—Թովուզ խճուղու հետ։ Ճանապարհի կառուցմանը մասնակցեցին համարյա բոլոր բնակիչները. նրանք ճեղքեցին ապառաժ ժայռերը, իսկ երեխաները ճանապարհի երկայնքով տնկեցին 2400 ծառ։ Կառուցվում է միջկոլտնտեսային ջրանցքը։ Ծրագրված է կառուցել արտադրական մի շարք շենքեր, ջրամբարներ, արհեստանոցներ. գովելի է, երբ ձմեռանոցներում անասնապահների բնակության համար արդեն կառուցվել ու կառուցվելու են հարմարավետ բնակարաններ։*

*Չի անցնի շատ ժամանակ, և Մոսեսգեղը ոչ մի բանով այլևս չի տարբերվի քաղաքից։*

Վ. ՍԱՐԳՍՅԱՆ

---

## ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

# ՄԵԾ ՊԱՅՔԱՐԻ ՈՒ ՈԳԵՇՈՒՆՉ ԳԱՂԱՓԱՐՆԵՐԻ ԳԻՐՔԸ*

*Սեղանի վրա է Ստեփան Շահումյանի երկերի երեքհատորյակի վերջին հատորը, որտեղ զետեղված են հեղինակի՝ 1917 թվականի նոյեմբերից մինչև 1918 թվականի սեպտեմբերը գրած աշխատությունները՝ հոդվածներ, ճառեր, զեկուցումներ, նամակներ, կոչեր և այլ նյութեր։*

***

*1917 թվականի նոյեմբերից 1918 թվականի սեպտեմբերը սովորական տասնմեկ ամիսներ չեն։ Այդ ժամանակամիջոցում Անդրկովկասում տիրող վիճակը կարող է համեմատվել մարդկային պատմության ամենաբարդ և ամենախճճված իրադարձությունների հետ։ Ստ. Շահումյանը իր բոլշևիկ զինակիցների հետ, այդ դժվարին և լարված պայմաններում գտնվում է ռևոլյուցիոն մարտերի առաջին գծում։ Նա կազմակերպում և գլխավորում է Անդրկովկասի աշխատավորների ազատագրական մեծ պայքարը, ելույթներ է ունենում ժողովներում, գրում է հոդվածներ, կոչեր, կարդում է զեկուցումներ։ Այդ շրջանում նա նա ստեղծել և զարգացնում է իր հայացքները, սահղծելով և ...*

*Ստ. Շահումյանի երկերի այս հատորում ամփոփված առաջին նյութը 1917 թվականի հոկտեմբերի 29-ին լույս տեսած կոչն է՝ ուղղված «Կովկասյան բանակի բոլոր ընկեր զինվորներին»։ Սոցիալիստական ռևոլյուցիայի լուրը դեռ նոր էր հասել Անդրկովկաս, դեռ բոլորի համար չէ, որ պարզ էր իրերի վիճակը։ Կոչում բացահայտվում է Պետրոգրադի Հոկտեմբերյան հեղաշրջման ժողովրդական բնույթը, ցույց է տրվում զինված մասսայի պատմական խնդիրը։*

*«Ընկե՛ր, զինվորներ։*

*Հնչե՛ց բանվորա-գյուղացիական ռևոլյուցիայի մեծ ժամը։*

*Ոտքի ելեք երկաթե պարսպով պաշտպանելու ձեր ռևոլյուցիան» (էջ 8—9)։*

*Ստ. Շահումյանը իր պայծառ տաղանդի ողջ ուժով աշխատավորներին պարզաբանում է ճշմարտությունը, ցույց տալով ազատության ուղին։ «Բոլորը, ովքեր ժողովրդի բարիքը և հյուծված ու տանջված երկրում ամենաարագ կերպով խաղաղություն ու կարգ հաստատել են ցանկանում, պետք է անհապաղ ու վճռականորեն անցնեն նոր կառավարության, Լենինի գլխավորած ժողովրդական Կոմիսարների կառավարության կողմը» (էջ 18)։*

*Նա մեծ ուշադրություն է դարձնում անդրկովկասյան պայմանների յուրօրինակություններին։ «Հողային հարցը և գյուղացիական ռևոլյուցիան Անդրկովկասում» հոդվածում հեղինակը նկատում է, որ Անդրկովկասում կալվածատիրական սարկությունը անհամեմատ ավելի սուր ձևով է արտահայտվում, քան Ռուսաստանի որևէ այլ մասում։ Անդրկովկասում «...կարելի է տեսնել ոչ միայն ճորտատիրական իրավունքի մնացուկներ, այլև հաճախ ճորտատիրական հարաբերություններ»։ Տեղական յուրօրինակություն է նաև նացիոնալիզմի ուժգին դրսևորումը։ Անդրկովկասի բուրժուա-նացիոնալիստական պարտիաներն անց են կացնում ըստ ազգությունների առանձնանալու, սոցիալիստական Ռուսաստանից անջատվելու կործանարար քաղաքականություն։ «Կովկասում ռևոլյուցիայի ամենաոխերիմ թշնամին,— եզրակացնում է Ստ. Շահումյանը,— միշտ եղել է և կմնա նացիոնալիզմը» (էջ 33)։ Ահա այս և մի շարք այլ հանգամանքներ իրավունք են տալիս նրան 1918 թվականի հունվարի 31-ին ի լուր Կովկասի բոլոր բանվորների և գյուղացիների հայտարարել. «Ռուսաստանում ոչ մի տեղ ռևոլյուցիայի գործն այնպիսի վտանգի մեջ չի գտնվում ներկայումս, ինչպես մեզ մոտ՝ Կովկասում»։ Այդ վտանգը աշխատավորների ազատության դեմ ուղղված ներքին կոնտրռևոլյուցիայի և արտաքին ինտերվենցիայի վտանգն է։ Հետևաբար՝ «Սովետական իշխանությունը Կովկասում պետք է ստեղծել անհապաղ» (էջ 66)։*

*Հատորում զետեղված աշխատություններում խոր ու բազմակողմանիորեն վերլուծվում են Անդրկովկասում սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի հնարավորությունները, ինչպես նաև բացահայտվում են Սովետական իշխանության հաստատման համար աշխատավորների մղած ռևոլյուցիոն պայքարի ժամանակավոր անհաջողությունների պատճառները։*

* Ստ. Շահումյան — Երկեր երեք հատորով, հատոր երրորդ, Հայպետհրատ, 1958 թ., 523 էջ։

Ազատագրական ռևոլյուցիոն շարժման մեջ աշխատավորների ինտերնացիոնալ եղբայրությունն ու նրանց անխախտ միասնությունը Ստ. Շահումյանը դիտում է որպես երկրամասում Սովետական իշխանության հաստատման և նրա գոյության հարատևության կարևորագույն պայման, մշտապես գործող ֆակտոր (տե՛ս «Նացիոնալիզմը Կովկասում և ռազմաճակատի մերկացումը», «Անդրկովկասի մուսուլմանական գավառների գյուղացիական բնակչությունը», «Գործերի դրությունը Կովկասում», «Բաքվի Ժողովրդական Կոմիսարների Սովետի դիմումը Անդրկովկասի բոլոր ազգություններին» և այլն): Դա կենսական պահանջ է Անդրկովկասի պրոլետարների համար: Աշխատավորների ինտերնացիոնալ միասնությունը ընդունակ է խորտակելու և՛ ներքին կոնտրռևոլյուցիայի, և՛ արտաքին ինտերվենտների բոլոր ուժերը:

«Եթե մենք միանանք,— ասում է Ստ. Շահումյանը Բաքվի կոմունայի ծանր օրերին,— առանց ազգի խտրության՝ մուսուլմանները, հայերը, վրացիները, ռուսները, եթե ստեղծենք մեր բանվորների ու գյուղացիների Սովետները, մենք կխեղդենք բեկերին, իշխաններին ու հայ հարուստներին: Մենք կքշենք մեր երկրից թուրքական փաշաներին ու գերմանական բռնադատիչներին» (էջ 344):

Կովկասում սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի համար, իսկ այնուհետև սոցիալիզմի կառուցման համար վճռական պայման է Ռուսաստանի պրոլետարիատի ու գյուղացիության և երկրամասի աշխատավորների համատեղ պայքարը: Ստ. Շահումյանը հռետորի, պրոպագանդիստի, ժուռնալիստի, տեսաբանի, քաղաքական ականավոր գործչի իր ողջ տաղանդով մերկացնում է կոնտրռևոլյուցիոներների անջատողական քաղաքականությունը, ցույց տալիս Սովետական Ռուսաստանի և ռուսական պրոլետարիատի հետ համատեղ պայքարի պատմական մեծ անհրաժեշտությունը Անդրկովկասի և ռուս ժողովրդի հետ իր բախտը կապած ամեն մի ժողովրդի ազատագրական պայքարի հաղթանակի համար:

Ստ. Շահումյանը սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի կարևորագույն պայման է համարում քաղաքի և գյուղի աշխատավորների անխախտ դաշինքը: Նա հիշատակում է բանվոր դասակարգի և գյուղացիության համատեղ հերոսական պայքարի բազմաթիվ օրինակներ, ոգևորությամբ է խոսում երկրամասի շատ գյուղացիական վայրերում բռնկված հուժկու ագրարային շարժումների մասին: Սակայն Ստ. Շահումյանը ընդգծում է, որ Անդրկովկասը աշխատավորական դասակարգերի քանակական և որակական կազմի և դրանց փոխհարաբերության տեսակետից տարբերիչ գծեր ունի Ռուսաստանի արդյունաբերական կենտրոնների համեմատ: Երկրամասում պրոլետարիատի նկատմամբ գյուղացիությունը անհամեմատ բազմաքանակ է: Բացի այդ, ինքը՝ պրոլետարիատն էլ երկրամասի տարբեր վայրերում միատեսակ քաղաքական կռվի դպրոց չի անցել, միևնույնը չէ նրանց կազմակերպվածությունը, դասակարգային ինքնագիտակցության մակարդակը և այլն: Իսկ գյուղացիության շատ խավերում, ընդհուպ մինչև Հոկտեմբերյան ռևոլյուցիայի նախապատրաստման և իրականացման ժամանակաշրջանը, դեռևս խիստ կերպով զգացվում է հայ հարուստների, վրաց իշխանների, խաների ու բեկերի խարերայական քաղաքականության ծանր հետևանքները: Գյուղացիության վրա ավելի ուժեղ է բուրժուական պարտիաների սրսկած նացիոնալիզմի ազդեցությունը: Իսկ նացիոնալիզմը բուրժուազիայի և կալվածատիրության ձեռքին միջոց է՝ պրոլետարիատին և գյուղացիությանը միմյանցից մեկուսացնելու, ռևոլյուցիոն մարտունակությունից զրկելու համար: Այստեղից էլ, բուրժուազիայի դեմ մղվող պայքարում, ինչպես նշում է Ստ. Շահումյանը, Անդրկովկասի բոլշևիկների գլխավոր խնդիրներից են՝ բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի անընդհատ ամրապնդումը, գյուղացիության շրջանում տարվող քաղաքական, կազմակերպական և դաստիարակչական աշխատանքի ուժեղացումը:

***

Քաղաքական և տեսական խոշոր արժեք են ներկայացնում հատորում զետեղված այն հոդվածներն ու ելույթները, որոնցում բնութագրվում են բուրժուական դասակարգերն ու պարտիաները: Ինչպես միշտ, այս հարցերի լուծման ժամանակ նույնպես, Ստ. Շահումյանը հանդես է գալիս պատմության մատերիալիստական ըմբռնման դիրքերից: Նա դիալեկտիկ մտածող է, ստեղծագործաբար է կիրառում թեորիան: Դասակարգերի ու պարտիաների քաղաքականությունն ու հայացքները կապված են պատմական կոնկրետ պայմանների հետ, հետևաբար, քարացած չեն: Այս միտքը նա բազմակողմանիորեն ապացուցում է, խորացնում և զարգացնում ռուսաստանյան և անդրկովկասյան կյանքի օրինակներով: Բացահայտելով Անդրկովկասի շահագործող դասակարգերի և պրոլետարիատի ու չքավոր գյուղացիության անտագոնիզմը, Ստ. Շահումյանը հատկապես նշում է բուրժուազիայի ու կալվածատերերի կեղծավորությունը աշխատավորների նկատմամբ: Բուրժուական պարտիաները փորձում են ամբողջ ազգը ներկայացնել որպես մի անդասակարգ ամբողջականություն: Ստ. Շահումյանը



ցույց է տալիս, որ դա խաբեություն է և ձեռնտու միայն բուրժուազիայի պարտիաներին՝ աշխատավորներին մոլորեցնելու և իշխանության նվաճելու համար: Նա մերկացնում է մենշևիկների, դաշնակցականների, մուսավաթականների, էսեռների և մյուս բուրժուական ու բուրժուա-նացիոնալիստական, համաձայնողական, պաշտպանողական պարտիաների ու հոսանքների դասակարգային սատառը, ցույց տալիս նրանց հակաժողովրդական քաղաքականության սոցիալական արմատները:

Հատորում զետեղված գործերում Շահումյանը խորապես վերլուծում է բուրժուական դասակարգերի ու նրանց պարտիաների քաղաքականությունը՝ ռևոլյուցիայի զարգացման տարբեր էտապներում, բացահայտում նրանց միջև եղած ներպարտիական հակասությունները, Անդրկովկասի բուրժուական լագերի տարբեր խմբավորումների միջև եղած հակամարտությունները և, վերջապես, այն հարցը, թե ինչպես երկրամասում առաջ եկան երեք ազգայնական մարիոնետային կառավարություններ, որոնք միջազգային ռեակցիայի սպասարկուներն էին և իրենց քաղաքականության մեջ հենվում էին օտարերկրյա կապիտալիստական ուժերի վրա:

1917—1918 թթ. իմպերիալիստական գիշատիչներն իրենց մագիլներն էին մեկնում դեպի երկրամասը: Անդրկովկասի աշխատավորների դեմ միջազգային ռեակցիայի այդ հարձակումները Ստ. Շահումյանը համարում է Սովետական Ռուսաստանի դեմ ուղղված նրա ընդհանուր պլանի բաղկացուցիչ մասը: Հաղթանակի ձգտող ազատատենչ մարտիկի համար նա խիստ կարևոր է համարում այն, թե ինչպիսին է հակառակորդի կռվող ուժերի մարտակարգը, ինչպիսին են տարբեր կողմերից գրոհակետի վրա մղվող թշնամու խմբավորումների փոխհարաբերությունները: Այս հարցին պատասխանելիս նա բացահայտում է թուրքա-գերմանական և անգլո-ֆրանսիական կոալիցիաների ներքին և փոխադարձ երկպառակությունները Անդրկովկասը նվաճելու նրանց ձգտման մեջ: Դրան զուգահեռ նա ցույց է տալիս այդ սև ուժերի դեմ Բաքվի պրոլետարիատի և ողջ Անդրկովկասի աշխատավորների հաղթանակի հնարավորությունները:

«Այսօր և հետագայում,— գրում է նա,— մենք բախվելու ենք ո՛չ միայն այդ բանդաների (ներքին կոնտրռևոլյուցիայի — Հ. Կ.) հետ: Նրանց հետ մեր դեմ են գործելու ոչ միայն Սեյմի կանոնավոր զորամասերը, այլ, որ կարևոր է, նաև գերմանական ու թուրքական զորքերը, կազմակերպված համաշխարհային իմպերիալիզմը...»:

Իսկ ի՞նչ կստացվի դրանից:

«Այդ կբարդացնի դրությունը, իհարկե, բնավ չպաշտպանելով թշնամիների հաղթանակը մեր դեմ» (էջ 203):

Բայց թշնամու պարտության ինչպիսի՞ շանսեր կան.

«Մի կողմից, իմպերիալիստական փոխադարձ մրցումը և անխուսափելի ընդհարումը Անգլիայի և Գերմանա-Թուրքիայի միջև Պարսկաստանում՝ նվազեցնում է թշնամիների դիմադրության ուժը և զգալի չափով հեշտացնում մեր դրությունը, ավելացնում է մեր հաղթանակի շանսերը: Մյուս կողմից, մեզ հետ է Ռուսաստանի ամբողջ պրոլետարիատը, ամբողջ ռևոլյուցիոն Հյուսիսային Կովկասը և ամբողջ անդրկովկասյան դեմոկրատիան...» (էջ 203—204):

***

Բաքվի դերը Անդրկովկասում բացառիկ է: Բաքվի կոմունան է, որը մի քանի ամիս շարունակ հերոսական կռիվ է մղում ներքին և արտաքին թշնամիների դեմ: Հատորում ամփոփված նյութերի զգալի մասը վերաբերում է հենց այդ կոմունայի պատմությանը:

1918 թվականի մարտի 15(2)-ին նա ասել է. «Բաքվի Սովետը պետք է դառնա քաղաքացիական պատերազմի գլխավոր հենարանը և կենտրոնը Անդրկովկասում...» (էջ 114), «Բաքվի մոտ վճռվում է Անդրկովկասի ճակատագիրը» (էջ 138): Բաքվի Սովետը կոչված է պայքարելու ամբողջ երկրամասում Սովետական իշխանության հաստատման համար: Սա նրա պատմական խնդիրն է:

Բաքվի կոմունայի վերաբերյալ իր հոդվածներում ու ելույթներում Ստ. Շահումյանը բանվոր դասակարգի կազմակերպման հետ մեկտեղ հսկայական ուշադրություն է դարձնում Բաքվի շրջանների և ողջ Անդրկովկասի գյուղացիության կազմակերպմանը: Իր ճառերից մեկում (28-ը մայիսի 1918 թ.) նա ասել է. «...այժմ մեր գլխավոր խնդիրն է՝ ոտքի հանել այդ գյուղացիներին, նրանց ներգրավել մեր ընդհանուր թշնամիների դեմ ուղղված պայքարին, ինչպես նաև նրանց ներգրավել այստեղ, Անդրկովկասում բանվորների և գյուղացիների միասնական կառավարություն ստեղծելու աշխատանքին» (էջ 208): Գյուղացիության հարցը, մանավանդ Անդրկովկասում, ռևոլյուցիայի համար կենսական հարց է: Բաքվի պրոլետարիատը՝ բոլշևիկների պարտիայի ղեկավարությամբ, պետք է իր մեծ կռվում միշտ հանդես գա գյուղացիության հետ սերտ դաշինք կազմած: Դա նրան անգնահատելի ուժ կտա, կամրապնդի նրա թիկունքը, կնպաստի նրա իշխանության տարածմանը՝ երկրամասով մեկ:

Ազատագրական կռիվը շահելու գործում օր-

յեկտիվ և սուբյեկտիվ գործոնների մասին խոսելիս Ստ. Շահումյանը հետևում է լենինյան ցուցումներին. «... պայքարի ելքը,—գրում է նա,— կախված է ոչ միայն այդ օբյեկտիվ հատկանիշներից և մեզնից չկախված հանգամանքներից։

Հաղթանակը շատ բանով կախված է այն բանից, թե մենք որքան ճիշտ կըմբռնենք ու կորոշենք մեր տակտիկան, մեր վարքագիծը» (էջ 204)։

Այդպիսի ճիշտ տակտիկայի ու վարքագծի փայլուն օրինակ է Բաքվի բոլշևիկների դիրքը քաղաքում Սովետական իշխանության ճակատագրական օրերին (1918 թ. հուլիս-օգոստոս)։ Վտանգը բոլոր կողմերից է սպառնում՝ թե՛ ներսից և թե՛ դրսից։ Դաշնակցականները, էսեռներն ու կոնտրռևոլյուցիայի մյուս ուժերը ուզում են քաղաքը հանձնել անգլիական իմպերիալիստներին։ Այդ տրամադրությունները թափանցում են նաև Սովետի մեջ։ Միայն բոլշևիկներն են մնում ռևոլյուցիայի հաղթանակի համար մինչև վերջ պայքարելու դիրքերում։ Նրանց անունից Ստ. Շահումյանը հայտարարում է.

«Մեր մեջ բավականին ռևոլյուցիոն զգացում ու գիտակցություն կգտնվի, որպեսզի ասենք. ո՛չ, մենք չենք կարող հանձնվել օտարերկրյա իմպերիալիստների ձեռքը, մենք կպայքարենք մեր անկախության համար ու կպաշտպանենք այն մեր ուժերով» (էջ 371)։

Ճիշտ է, հարձակվող թուրքական ուժերը շատ են, այդ չպետք է անտեսել։ Բայց դա չի կարող հուսահատություն առաջացնել ռևոլյուցիոներների մեջ. «...սկսված պայքարի այս կամ այն ելքը շատ բանով կախված է մեր վճռականությունից ու համարձակությունից։ Ռևոլյուցիայի մեծ ստրատեգի անմահ խոսքերը՝ համարձակություն, համարձակություն և դարձյալ համարձակություն — տվյալ պահին պետք է կազմեն մեր վարքագծի հիմքը» (էջ 204)։ Բայց Ստ. Շահումյանի համար գլխավորն ու հիմնականը մասսաների, ժողովրդական լայն զանգվածների կազմակերպված պայքարն է։

«Առանց բանվորական լայն մասսաների և բոլոր ռևոլյուցիոն տարրերի ակտիվ աջակցության Սովետական իշխանությունն անզոր կլիներ ու անհաջողության կդատապարտվեր, որքան էլ նա վճռականորեն գործեր» (էջ 204)։

Հատորում զետեղված աշխատությունների մեջ մեծ ուշադրության են արժանի նաև Ստ. Շահումյանի նամակները՝ ուղղված Սովետական Ռուսաստանի կենտրոնական կառավարությանը և մասնավորապես Վ. Ի. Լենինին։ Ինքնին հասկանալի է, որ այդ նամակները պետք է ուսումնասիրել նրանց պատասխանների, այսինքն՝ Ստ. Շահումյանի հասցեով Վ. Ի. Լենինի և Ժողկոմսովետի գրած նամակների հետ միասին։

1918 թվականի հուլիսի 13-ին, Բաքվի կոմունայի համար ծանր պահին, Ստ. Շահումյանը հեռագրում է Վ. Ի. Լենինին. «Դրությունը ռազմաճակատում վատանում է։ Միայն մեր ուժերը բավական չեն։ Անհրաժեշտ է լուրջ օգնություն Ռուսաստանից։ Ես հեռագրել եմ Աստրախան և Ցարիցին՝ Ստալինին։ Տնօրինեցեք Դուք... Սպասում եմ շտապ ռազմական օգնության և Ձեր ղեկավար ցուցումներին, անհապաղ ուղարկեցե՛ք» (էջ 351)։ Ստ. Շահումյանը Վ. Ի. Լենինին հաղորդում է իրենց հաջողությունների ու դժվարությունների մասին, անհամբերությամբ սպասում Վ. Ի. Լենինի ամեն մի նամակին, հեռագրին։ Դրանցից ամեն մեկը յուրատեսակ զեկուցագրեր են, որոնցում տրվում է համապատասխան իրադրության վերլուծությունը, գնահատականը։ Նրանցում մեծ տեղ է հատկացվում Բաքվում և նրա շրջաններում նորաստեղծ Սովետական իշխանության առաջնահերթ հարցերին։

⁂

Բազմակողմանիորեն հարուստ է Ստ. Շահումյանի երկերի տվյալ հատորում զետեղված նրա գրական ժառանգությունը։ «Ռևոլյուցիայի տարեդարձը», «Գործերի դրությունը Կովկասում», «Հին դպրոցի մասին», «Դասախոսություն Կոմունայի մասին», «Զեկուցում Բաքվի Սովետի արտակարգ նիստում» ելույթներում շոշափվում և քննարկվում են մարքս-լենինյան թեորիայի մի շարք կարևոր հարցեր, որոնք արժանանում են նրա օրիգինալ լուծմանը։ Դրանք հեղինակի այն երկերից են, որոնցում Ստ. Շահումյանն առավելապես հանդես է գալիս որպես պրոպագանդիստ, տեսաբան, զբաղվում սոցիոլոգիայի և փիլիսոփայության, մանկավարժության հարցերով։

Ստ. Շահումյանը խորապես ըմբռնեց իր դարը։ Նա հասկացավ և գնահատեց ոչ միայն ընթացիկ իրադարձությունները, այլև տեսավ, թե ինչ են խոստանում դրանք, կանխագուշակեց ապագան։

«Ես այն խոր համոզմունքն եմ հայտնում,— ասել է նա,— որ մենք արդեն մոտեցել ենք այն մոմենտին, որի մասին երազել են բոլոր ազնիվ ռևոլյուցիոներները բոլոր ժամանակներում,— մենք մոտեցել ենք սոցիալիզմի հաղթանակին» (էջ 111)։

«Կոմունայի մասին» դասախոսության մեջ Ստ. Շահումյանը զուգահեռ է անցկացնում նախնադարյան կոմունաների, Փարիզի կոմունայի և Սովետների միջև։ Նա համառոտակի կանգ է առնում ֆրանսիական կոմունայի թույլ կողմերի, նրա պարտության պատճառների վրա, ընդգծում այնպիսի հանգամանքներ, որոնք պրակտիկ նշանակություն ունեն Բաքվի կոմունայի հաղթանակի համար։ Փարիզի կոմունայի պարտության պատճառներից մեկը Ստ. Շահումյանը համարում է այն, որ «...Փարիզը պատշաճ կերպով իրեն չկապեց բոլոր գավառների հետ, որոնք ռևոլյուցիոն տեսակետից խիստ ետ էին մնացել նրանից» (էջ 248)։



Հիշյալ տասնմեկ ամիսների ընթացքում Ստ. Շահումյանի գրած հոդվածներն ու ելույթները արտացոլում են նաև հեղինակի ապրումներն ու զգացումները, նրա բնավորության գծերը։ Մենք գործ ունենք կյանքից առավել իր գործը սիրող մի մարդու հետ, որի հմայիչ անձնավորությունը տիրոջ աչքին չի երևում. «Մեզ գուցե և վիճակվի նույնիսկ ընկնել իբրև կոնտրռևոլյուցիայի զոհեր, բայց մենք պետք է կատարենք մեր պարտքը հանուն սոցիալիստական ռևոլյուցիայի»—հայտարարում է նա բուռն ծափահարությունների ներքո, Բաքվի Սովետի նիստերից մեկում։

Ստ. Շահումյանը ուրախանում է բանվորների հաղթանակներով։ Բայց նրան վշտացնում են բանվորների շարքերը թափանցած թշնամիների դավաճանությունը, աշխատավորների գործին կոնտրռևոլյուցիոներների հասցրած վնասները։ Այստեղից էլ համապատասխանաբար փոխվում է նրա հոդվածների ու ելույթների ոճը, օգտագործվում են մտքերը շարադրելու նոր, պատշաճ ձևեր, խոսքը դիպուկ արտահայտող աֆորիզմներ։ Դժվար է առանց հուզմունքի կարդալ սովետական զորքերի էվակուացիայի առթիվ Ստ. Շահումյանի և մյուսների ստորագրությամբ արձակված դեկլարացիան։

— Ցավը սրտներիս, նզովքը շրթունքներիս, մենք, որ այստեղ էինք եկել Բաքվի բանվորների հետ միասին կռվելու և մեռնելու Սովետական իշխանության համար, հարկադրված ենք հեռանալ Բաքվից։

Բայց որքան էլ ծանր է դրությունը, նրանք չեն կորցնում հույսը։ Ընդհակառակը, նրանք «հույս ունեն, որ բանվորա-գյուղացիական Ռուսաստանը դարձյալ կգա Բաքու, և Բաքվի պրոլետարիատը կրկին կկապվի հարազատ ռևոլյուցիոն Ռուսաստանի հետ և նորից կկանգնի Սովետական Սոցիալիստական Ռուսաստանի դրոշի ներքո» (էջ 412)։

Այո՛։ Այդպես էլ լինում է։ Միայն թե այդ հույսը ներշնչող մարդիկ չտեսան և չվայելեցին մեծ երջանկությունը։ Այդ դեկլարացիան հրապարակելուց քանիին օր հետո վրա հասավ մեծ եղեռը. գնդակահարվեցին Բաքվի քսանվեց կոմիսարները։ Նրանց մեջ էր և Ստեփան Շահումյանը...

Բոցաշունչ հեղանակի գրիչը վայր է ընկնում։

⁂

Երկերի այս հատորը իր հավելվածով հանդերձ, լրացնում է նախորդ երկու հատորները, ավելի ամբողջական է դարձնում Ստ. Շահումյանի գրական ժառանգության հրատարակությունը։ Ակնհայտ է նրա երկերի հատորները կազմողների՝ Խ. Բարսեղյանի և Բ. Օհանջանյանի դրական աշխատանքը։ Նրանք շնորհակալ գործ են կատարել՝ բազմաթիվ թերթերում, ամսագրերում և արխիվային ֆոնդերում որոնելով ու գտնելով Ստ. Շահումյանի թողած գրավոր փաստաթղթերը։ Ցանկալի է միայն, որ ավելի մեծ ուշադրություն հատկացվեր ծանոթագրությունները կազմելուն։ Մեր կարծիքով, այս հատորում հարկ չկար կրկնելու նախորդ հատորի մի շարք հանրահայտ մարդկանց վերաբերող ծանոթագրությունները։ Ծանոթագրություններում հիշատակված չեն որոշ գործիչների անունը, հայրանունը, ծննդյան ու մահվան տարեթվերը։ Առանձին ծանոթագրություններում ճիշտ չեն որոշ փաստեր. օրինակ, ժողովածուի 477 էջում ցույց է տրված, որ «Бакинский пролетарий» թերթը հիմնադրվել է 1906 թվականին, իսկ 492 էջում գրված է, թե լույս է տեսել 1907 թվականին։ Երկերի II հատորում նշված է, որ լույս է տեսել այդ թերթի ընդամենը յոթ համար, ներկա հատորում, չգիտենք ինչու, վերջին համարը դարձել է հինգերորդը և այլն։ Անհրաժեշտ էր ծանոթագրել նաև հատորում տեղ գտած մի շարք փաստեր, արտահայտություններ։

Ստ. Շահումյանի երկերի երրորդ հատորը ուշագրավ երևույթ է մեր իդեոլոգիական կյանքում։ Այն ներկայացնում է քաղաքական, գաղափարական դաստիարակության հիանալի միջոցներից մեկը մեր կադրերի, կոմունիզմ կառուցող բոլոր աշխատավորների համար։ Նա ընթերցողին համակում է այն գործի համար անխոնջ պայքարի ոգով, որին իր կյանքը նվիրեց պայծառ ռևոլյուցիոներ, ինտերնացիոնալիզմի մեծ ջահակիր Վ. Ի. Լենինի աշակերտ ու զինակից Ս. Գ. Շահումյանը։

Հ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

կություններ են հաղորդվում աշխարհի բնակչության, արդյունաբերության մեջ զբաղված բանվորների, կոմունիստական ու սոցիալ-դեմոկրատական պարտիաների անդամների թվի մասին։ Այդ հանգամանորեն խոսվում է կոմունիստական պարտիաների համագումարների ու միջազգային խորհրդակցությունների, արդի ռևիզիոնիզմի մասին, ցույց է տրվում պատերազմի կանխման մասին սոցիալ-դեմոկրատական պարտիաների դիրքը, մերկացվում «դասակարգային համագործակցության» վերաբերյալ ռեֆորմիստական քարոզչանքների անհեթեթությունը։

Տարեգրքում զետեղված է նաև Գ. Ն. Սկորովի՝ «Գաղութային սիստեմի քայքայումը և հակաիմպերիալիստական ազգային շարժումը» խորագրով հոդվածը։ Այնտեղ բերված են փաստական շատ արժեքավոր տվյալներ, որոնց հիման վրա պարզաբանված են ազգային-ազատագրական շարժման մի շարք արմատական հարցեր։ Մի այլ, Յա. Յա. Կոտովսկու և Ա. Ն. Պուչկովի «Համաշխարհային էկոնոմիկայի զարգացման երկու տենդենցը» հոդվածում հանգամանորեն պատմվում է սոցիալիզմի երկրների տնտեսական զարգացման հաջողությունների, ինչպես նաև կապիտալիստական երկրներում տնտեսական հակասությունների հետագա սրման մասին։

Ժողովածուի երկրորդ բաժնում ընթերցողը անհրաժեշտ տեղեկություններ կգտնի աշխարհի տարբեր պետությունների ու երկրների տնտեսության, պետական կառուցվածքի, ներքին քաղաքական դրության, նրանց միջազգային տնտեսական կապերի ու արտաքին քաղաքականության հարցերի վերաբերյալ։ Հետաքրքրական են սոցիալիստական երկրների տնտեսության զարգացման, ինչպես նաև կապիտալիստական հիմնական երկրների էկոնոմիկային վերաբերող վիճակագրական ընդարձակ ու ամփոփ տվյալները։ Այդ մանրամասն տեղեկություններ են տրված միջազգային քաղաքական, տնտեսական և հասարակական կազմակերպությունների, իմպերիալիստական ռազմական բլոկների մասին։ Տարեգրքի վերջում տրված է միջազգային կյանքում 1957 թվականին տեղի ունեցած կարևորագույն դեպքերի ժամանակագրությունը։

Հ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

Խմբագրության հասցեն՝
Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք
Հեռ. 2—03—18, 2—56—92, 2—04 66.
Адрес редакции: Ереван, здание
ЦК КП Армении, тел. 2—03—18,
2—56—92, 2—04—66.



ՎՖ 01529 Պատվեր 791 Տիրաժ 9450
Տպ. 8 մամուլ, մամուլում 68,840 նիշ։ Ստորագրված է տպագրության 23/IV 1959 թ.։
Խմբագրության հանձնված ձեռագրերը հեղինակներին չեն վերադարձվում։
ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության գլխհրատի № 6 տպարան, Երևան, Լենինի պող. № 51։